

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՕՂԻՈՎ

11·1980

...ողջունում եմ իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին:

Վ. Ի. ԼԵՆԻՆ

Սովետական Հայաստանի պատմական փորձը կրկին ու կրկին հաստատում է, որ ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ոչ թե ազգային պարփակման ու մեկուսացման ուղիներով, այլ սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների եղբայրական ընտանիքում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ զարգացման շնորհիվ:

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

11
ՆՈՅԵՄԲԵՐ, 1980
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.
Выходит один раз в месяц на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ✦ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1980** թվականի նոյեմբերի **21**-ին տեղի ունեցավ **ՍՄԿԿ** Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը լսեց **ՍՍՀՄ** Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, **ՍՍՀՄ** պետպլանի նախագահ ընկ. Ն. Կ. Բայբակովի զեկուցումը «**ՍՍՀՄ** տնտեսական ու սոցիալական զարգացման **1981** թվականի պետական պլանի մասին» և **ՍՍՀՄ** ֆինանսների մինիստր ընկ. Վ. Ֆ. Գարբուզովի զեկուցումը «**ՍՍՀՄ 1981** թվականի պետական բյուջեի մասին և **ՍՍՀՄ 1979** թվականի պետական բյուջեի կատարման մասին»:

Պլենումում մեծ ճառով հանդես եկավ **ՍՄԿԿ** Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը:

Մտքերի փոխանակությանը մասնակցեցին՝ Ղազախական **ՍՍՀ** Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Բ. Ա. Աշիմովը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, Վորոնեժի ռադիոդետալների գործարանի էլեկտրամոնտաժող փականագործների բրիգադավար ընկ. Ս. Ն. Սավինը, **ՍՄԿԿ** Կրասնոդարի երկրկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Ֆ. Մեդունովը, Կիրգիզիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Տ. Ու. Ուսուբալիևը, **ՍՄԿԿ** Նովոսիբիրսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Պ. Ֆիլատովը, **ՍՍՀՄ** նավթավերամշակման և նավթաքիմիական արդյունաբերության մինիստր ընկ. Վ. Ս. Ֆյոդորովը, **ՍՄԿԿ** Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Գրիշինը, **ՍՄԿԿ** Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Վ. Ռոմանովը, Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Շ. Ռ. Ռաշիդովը, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Շչերբիցկին:

**ՍՄԿԿ** Կենտկոմի պլենումը քննարկված հարցերի վերաբերյալ ընդունեց համապատասխան որոշում:

Կենտկոմի պլենումը **ՍՄԿԿ** Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովին **ՍՄԿԿ** Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուից փոխադրեց անդամ:

Կենտկոմի պլենումը **ՍՄԿԿ** Կենտկոմի անդամ, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Տ. Յա. Կիսելյովին ընտրեց **ՍՄԿԿ** Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու:

Դրանով **ՍՄԿԿ** Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

## ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի որոշումը

# ՍՍՀՄ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1981 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԻ ԵՎ ՍՍՀՄ 1981 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵԻ ՆԱԽԱԳԾԵՐԻ ՄԱՍԻՆ

1. Հիմնականում հավանություն տալ **ՍՍՀՄ** տնտեսական ու սոցիալական զարգացման 1981 թվականի պետական պլանի և **ՍՍՀՄ** 1981 թվականի պետական բյուջեի նախագծերին:

Առաջարկել **ՍՍՀՄ** Մինիստրների խորհրդին՝ հիշյալ նախագծերը ներկայացնելու **ՍՍՀՄ** Գերագույն սովետի հերթական նստաշրջանի քննարկմանը:

2. Ամբողջապես ու լիովին հավանություն տալ ներկա պլենումում **ՍՄԿԿ** Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառում շարադրված դրույթներին ու հետևություններին, դրանք դնել 1981 թվականի պլանը կատարելու և գերակատարելու, տնտեսական զարգացման ինտենսիվ գործոնները սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման օգտին ավելի լրիվ օգտագործելու ուղղությամբ բոլոր կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների գործունեության հիմքում:

3. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը հաստատ վստահություն է հայտնում, որ բանվորները, կոլտնտեսականները, մտավորականությունը, երկրի բոլոր աշխատավորները լենինյան կուսակցության XXVI համագումարը կդիմավորեն աշխատանքային նոր նվաճումներով, իրենց ուժերը, գիտելիքներն ու փորձը կգործադրեն 1981 թվականի՝ տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարվա պլանը հաջողությամբ կատարելու համար:

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

*Ընկերնե՛ր: Այսօր մենք պետք է քննարկենք 1981 թվականի՝ կուսակցության XXVI համագումարի տարվա, նոր, տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարվա պլանի և բյուջեի նախագծերը: Դա մեզ պարտավորեցնում է քննարկվող հարցերին մոտենալ կուսակցական լայն դիրքերից:*

*Պլանի նախագծի ելակետային բազան, բնականաբար, տասներորդ հնգամյակի արդյունքներն են: Անցած տարիները հաստատեցին կուսակցության XXIV և XXV համագումարներում մշակված տնտեսական ստրատեգիայի ճշտությունը: Զգալիորեն աճել է մեր երկրի տնտեսական ու պաշտպանական պոտենցիալը: Նոր խոշոր քայլ է արվել ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման, սոցիալական մեծ ու կարևոր խնդիրների լուծման գործում: Մի խոսքով, ներկա հնգամյակը արժանի տեղ կգրավի կոմունիզմի ճանապարհով վստահորեն ընթացող սովետական ժողովրդի հերոսական գործերի պատմության մեջ:* (Երկարատև ծափահարություններ):

*Ինչպես գիտեք, էկոնոմիկայի բնագավառում կատարվող գործնական աշխատանքի կենտրոնում կուսակցությունը դրել է ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը: Հինգ տարում ազգային եկամտից բարեկեցության հետ կապված նպատակների համար հատկացվել է 329 միլիարդ ռուբլով ավելի, քան իններորդ հնգամյակում: Աճել են բանվորների, ծառայողների, կոլտնտեսականների ռեալ եկամուտները:*

*Սպառման հանրային ֆոնդերից տրվող վճարումներն ու արտոնությունները ավելացել են 134 միլիարդ ռուբլով: Դա ընդլայնել է սովետական մարդկանց՝ անվճար կրթության, բժշկական օգնության, հանգստի, ծերության դեպքում նյութական ապահովության սահմանադրական իրավունքների իրականացման տնտեսական հիմքը:*

*Առաջնահերթ նշանակություն է նվիրվել բնակարանային շինարարությանը: Այդ նպատակին հատկացվել են 1,5 միլիարդ ռուբլով ավելի կապիտալ ներդրումներ, քան նախատեսվում էր: Հնգամյակի ընթացքում բնակչությունը կստանա մոտավորապես կես միլիարդ քառակուսի մետր բնակելի տարածություն: Քաղաքային բնակիչների արդեն մոտավորապես 80 տոկոսը ունեն առանձին բնակարաններ:*

*Այդ նվաճումների հիմքն են կազմում ընդհանուր տնտեսական վերելքը, երկրի արտադրական հզորության անշեղ, բոլոր ուղղություններով տեղի ունեցող աճը: Կարտադրվեն 717 միլիարդ ռուբլով ավելի արդյունաբերական արտադրանք, քան անցյալ հնգամյակում, 50 միլիարդ ռուբլով ավելի գյուղատնտեսական արտադրանք: Այդ ժամանակամիջոցում ազգային եկամուտը կավելանա 397 միլիարդ ռուբլով:*

*Ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել է 635 միլիարդ ռուբլի: Գործարկվել են ավելի քան հազար երկու հարյուր խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ: Դրանց թվում քիչ չեն ժողովրդական տնտեսության համար շատ կարևոր, ամենաբարձր պահանջներին համապատասխանող օբյեկտները: Հիանալի նվաճումների են հասել Արևմտյան Սիբիրի աշխատավորները: Հնգ-*

ամյակի ընթացքում նրանք ավելի քան երկու անգամ մեծացրին նավթի հանույթը, գրեթե չորս ու կես անգամ՝ բնական գազի հանույթը։

Խոշոր առաջընթաց քայլ արվեց գյուղատնտեսական արտադրության զարգացման ասպարեզում։ Ընթացիկ հնգամյակում առաջին անգամ հացահատիկի տարեկան միջին բերքն անցավ երկու հարյուր միլիոն տոննայից։ Հատկապես կկամենայի նշել Ղազախստանը, որը հնգամյակի ընթացքում չորրորդ անգամ պետությանը վաճառեց ավելի քան մեկ միլիարդ փութ հաց, գերակատարելով հնգամյա պլանը։ (Ծափահարություններ)։

Մեծ հաջողությունների հասան Կրասնոդարի երկրամասի, Օրենբուրգի և Կուստանայի մարզերի աշխատավորները, որոնք հնգամյակի ընթացքում հանձնեցին մեկական միլիարդ փութ և ավելի հացահատիկ։ Բամբակացան հանրապետությունները կատարեցին բամբակի հավաքման հնգամյա պլանը։

Յուրաքանչյուր հնգամյակ ծնում է իր հերոսները։ Բացառություն չի կազմում նաև այս հանգմյակը։ Շուտով մենք կամփոփենք նրա վերջնական արդյունքները։ Լավագույններից լավագույնները, անկասկած, կարժանանան հայրենիքի բարձր պարգևներին։ Բայց արդեն այսօր ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը բոլոր հիմքերն ունի երախտագիտության, սրտաբուխ շնորհակալության խոսքերով դիմելու բոլոր առաջավոր կոլեկտիվներին, քաղաքի և գյուղի բոլոր աշխատավորներին, որոնք այնքան շատ բան են արել մեր երկրի բարգավաճման համար։ (Երկարատև ծափահարություններ)։

Իհարկե, ժողովրդական տնտեսության զարգացման մեջ ամեն բան չէ, որ հարթ էր ընթանում։ Մենք հարկադրված էինք և հարկադրված ենք հաղթահարելու նաև ոչ քիչ դժվարություններ։ Դրանց մեծ մասը առնչված է այն բանի հետ, որ հինգ տարիներից միայն 1976 և 1978 թվականները կարելի է համարել գյուղատնտեսության համար համեմատաբար բարենպաստ տարիներ։

Մնացած երեք տարիները դյուրին չէին։ Իր բարդությունները հարուցեց օգտակար հանածոների բազմաթիվ հին, այդ թվում խոշոր հանքավայրերի սպառվելը, արդյունահանության հիմնական կենտրոնների տեղաշարժը դեպի արևելք և հյուսիս։

Աճի տեմպերը կասեցնող օբյեկտիվ պատճառներին ավելանում էին նաև աշխատանքում եղած թերությունները։ Պետք է անկեղծորեն խոստովանել. կառավարման ու պլանավորման մեխանիզմը, տնտեսավարման մեթոդները և կատարողական կարգապահությունը առայժմ չի հաջողվել բարձրացնել ժամանակակից պահանջների մակարդակին։ Դա դժվարացնում էր շրջադարձը դեպի արդյունավետություն, ժողովրդական տնտեսության փոխադրումը ինտենսիվ զարգացման ուղի։ Դա է նաև մի շարք բնագավառներում պլանների թերակատարման, ժողովրդական տնտեսության մեջ եղած թերությունների և նեղ տեղերի կարևոր պատճառներից մեկը։

Կուզենայի դրա հետ մեկտեղ շեշտել, որ մեր երկիրը 80-ական թվականներն է թևակոխում տնտեսական և գիտատեխնիկական հզոր պոտենցիալով, բարձրորակ կադրերով։ Մենք վստահությամբ ենք նայում ապագային։ (Երկարատև ծափահարություններ)։

Ինչպես երևում է ընկ. ընկ. Ն. Կ. Բայբակովի և Վ. Ֆ. Գարբուզովի զեկուցումներից, 1981 թվականի պլանը և բյուջեն ապահովում են ամբողջ երկրի յուրաքանչյուր միութենական հանրապետության էկոնոմիկայի հետագա աճը։ Խոշոր միջոցներ են հատկացվում վառելիքաէներգետիկ կոմպլեքսի, գյուղատնտեսության, մեքենաշինության, տրանսպորտի զարգացմանը։ Միջոցներ են նախատեսված ռեսուրսները կապիտալ շինարարության ասպարեզում կենտրոնացնելու համար։ Բարձրացվել են ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող արդյունաբերության ճյուղերի աճի տեմպերը։ Նախատեսվել են նոր սոցիալական միջոցառումներ։

Բնականաբար, այդ փաստաթղթերն արտացոլում են այն պրոբլեմներն ու նեղ տեղերը, որոնք առկա են ժողովրդական տնտեսության մեջ։ ՍՄԿԿ Կենտ-



կոմի քաղբյուրոն նշեց մասնավորապես մի շարք առաջադրանքների մեծ լարվածությունը, նյութատեխնիկական ռեսուրսների մի քանի տեսակների, բեռնափոխադրումների ասպարեզում պլանի անհաշվեկշռվածությունը։ Ուստի պլանի առաջադրանքները անհրաժեշտ է ամրապնդել կազմակերպչական հստակ գործունեությամբ, բարձր կարգապահությամբ, խիստ վերահսկողությամբ։

Գնահատելով պլանն ու բյուջեն ամբողջությամբ վերցրած, պետք է ասել, որ դրանք գտնվում են մեր ընդհանուր տնտեսական քաղաքականության հունի մեջ։ Դրանք շարունակում են ժողովրդի կենսամակարդակի հետագա վերելքի, նյութական արտադրության զարգացման և նրա արդյունավետության բարձրացման, մեր պետության պաշտպանունակության ապահովման, սոցիալիզմի եղբայրական երկրների հետ համագործակցության ամրապնդման՝ կուսակցության կուրսը։ Մի խոսքով, ժողովրդական տնտեսության զարգացման համար լավ հիմք է ստեղծվում։ (Ծափահարություններ)։

Այս ամենը քաղբյուրոյին թույլ տվեց հիմնականում հավանություն տալ 1981 թվականի պլանի և բյուջեի նախագծերին և դրանք ներկայացնել ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի քննարկմանը։

Այժմ կուզենայի անդրադառնալ մի քանի առավել ընդհանուր հարցերի, որոնք ուղղակի առնչություն ունեն ինչպես եկող տարվա տնտեսական գործունեության, այնպես էլ տասնմեկերորդ հնգամյակում էկոնոմիկայի զարգացման հետ։ Այդ հարցերը տեղին է արծարծել, մանավանդ որ ՍՍՀՄ 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղությունների նախապատրաստումը թևակոխել է ամենապատասխանատու փուլը։

Այդ հարցերի շուրջ խոսակցությունը ես կսկսեի ոչ թե մետաղից, ոչ թե տրանսպորտից և նույնիսկ ոչ թե վառելիքից ու էներգիայից, որքան էլ որ դրանք խոշոր նշանակություն ունեն, այլ այն հարցերից, որոնց լուծմամբ ավելի անմիջականորեն են պայմանավորված սովետական մարդկանց կենսապայմանները։ Կարծում եմ, որ հենց այն է բուն կուսակցական մոտեցումը, երբ անկյունաքար է դարձվում հոգատարությունը ժողովրդի բարօրության նկատմամբ։ Զուտ տնտեսական տեսակետից ևս ավելի ճիշտ է վերջնական նպատակից ընթանալ դեպի այն, ինչը պետք է ապահովի դրա իրականացումը։

Սովետական մարդկանց կենսամակարդակը պայմանավորող հարցերից առաջինը պարենային մատակարարման բարելավումն է։ Իրականացնելով ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումի գիծը, մենք դրեցինք հիմքերն այնպիսի ժամանակակից գյուղատնտեսության, որը ուզում ենք, կարող ենք և պետք է ունենանք՝ լիովին բավարարելու համար ժողովուրդի պահանջմունքները։ Հսկայական աշխատանք է կատարվել։ Երկրում զգալիորեն ավելի շատ հողագործական և անասնապահական մթերքներ են արտադրվում։ Աճում է բնակչության մեկ շնչին ընկնող սպառման մակարդակը։ Սակայն մենք դեռ դժվարությունների ենք հանդիպում քաղաքներն ու արդյունաբերական կենտրոնները այնպիսի սննդամթերքներով ապահովելու գործում, ինչպիսիք են միսը և կաթը։ Ուստի կարևոր է այսուհետ ևս գյուղատնտեսությանը հատկացնել խոշոր կապիտալ ներդրումներ և նյութական ռեսուրսներ։ Միաժամանակ մենք պետք է խիստ բարձրացնենք պահանջկոտությունն այն բանի նկատմամբ, որ հատկացվող միջոցները, հանքային պարարտանյութերը, տեխնիկան կոլտնտեսություններում և սովխոզներում օգտագործվեն խելացիորեն, տնտեսաբար, տան առավելագույն փոխհատուցում։

Երկրում հազարավոր կոլտնտեսություններ ու սովխոզներ տարեցտարի հասնում են լավ բերքի և անասնապահության բարձր մթերատվության։ Բայց կան նաև ոչ քիչ թվով տնտեսություններ, նույնիսկ ամբողջ մարզեր, որտեղ կապիտալ ներդրումները ավելացվում են, բայց մթերքների արտադրությունը տարիներ շարունակ, ըստ էության, նույն տեղում է կանգնած։ Միութենական

չհամեմատվող դերը ժողովրդական տնտեսության զարգացման, աշխատանքի արտադրողականության վերելքի գործում։

Մի շարք բնագավառներում մեր մեքենաշինարարները հասել են համաշխարհային լավագույն նվաճումներին համապատասխանող մակարդակի։ Բայց չի կարելի չտեսնել, որ մեքենաշինության որոշ ճյուղերում դրությունը դեռ հեռու է բավարար լինելուց։ Գանգատվում են տրանսպորտային, ճանապարհային և շինարարական մեքենաշինության շատ արտադրատեսակների, նավթի ու գազի համար և, հատկապես, թեթև ու սննդի արդյունաբերության համար նախատեսված մեքենաների ու սարքավորումների պակասից և որակից։

Շարունակում է ետ մնալ գյուղատնտեսական մեքենաշինությունը՝ այն ճյուղը, որը այժմ հատուկ նշանակություն է ստացել։ Ամենալուրջ կշտամբանքներն են հարուցում թողարկվող շատ մեքենաների ինչպես տեխնիկական մակարդակը, այնպես էլ որակը։ Այնուհետև ընկ. Լ. Ի. Բրեժնևը բերեց մի շարք օրինակներ և քննադատության ենթարկեց գյուղատնտեսական մեքենաշինության մինիստրության աշխատանքը։

Նոր հնգամյակում հարկավոր է, պարզապես անհրաժեշտ է, շեշտեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը, ստեղծել և սկսել թողարկել այնպիսի շարահերկ տրակտոր և այնպիսի հացահատիկային կոմբայն, որոնք իրենց բնութագրերով համապատասխանեն ժամանակակից ամենաբարձր պահանջներին։ Դա հնարավորություն կընձեռեր խոշոր առաջընթաց քայլ կատարելու գյուղատնտեսության արդյունավետության բարձրացման գործում։

Հսկայական նշանակություն տալով գյուղատնտեսական մեքենաշինությանը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն միջոցներ ձեռնարկեց ճյուղի ղեկավարությունն ամրապնդելու համար։ Կենտրոնական կոմիտեում կազմված է գյուղատնտեսական մեքենաշինության բաժին։

Մեքենաշինության վերելքին, ընկերնե՛ր, եկող հնգամյակում հատուկ ուշադրություն պետք է նվիրել։ Ըստ էության, մեր առջև ավելի ու ավելի սուր կերպով կծառանան ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերի նորացման և դրա տարբեր ոլորտների տեխնիկական վերազինման խնդիրները։

Այդ բանին պետք է նպատակամղել մեր ամենաուժեղ գիտական կոլեկտիվներին։ Գիտությունների ակադեմիայի հետ մեկտեղ ես նկատի ունեմ պաշտպանական ճյուղերում աշխատող գիտնականներին և կոնստրուկտորներին։ Կարծում եմ, որ երկրի ժողովրդական տնտեսության զարգացման գործում նրանց ավանդը կարող է ավելի լայն և բազմակողմանի լինել։ Հարկավոր է հանձնարարել Մինիստրների խորհրդին՝ մասնագետների հետ համատեղ որոշելու, թե պաշտպանական արդյունաբերության հատկապես ո՛ր գիտական ու կոնստրուկտորական կոլեկտիվները կկարողանային օգնել քաղաքացիական մեքենաշինության այս կամ այն տեսակին։ Օգնել մեքենաների բարձրարդյունավետ և որակյալ նմուշներ նախագծելուն, կոնկրետ ծրագրեր և առաջադրանքներ կազմելուն։

Հաջորդ հարցը։ Հազիվ թե հարկ կա ասելու, թե որքանով է ժողովրդական տնտեսության արդյունավետությունը պայմանավորված վառելիքի և էներգիայի անխափան մատակարարումով։

Ընկ. Լ. Ի. Բրեժնևը այնուհետև խոսեց վառելիքային արդյունաբերության ճյուղերի և տրանսպորտի առջև ծառացած մի քանի ընթացիկ խնդիրների մասին։

Լուծելով վերահաս ձմռան ժամանակաշրջանի հետ առնչված հարցերը, շարունակեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը, մենք միևնույն ժամանակ հենց այժմ, նախապատրաստելով հնգամյակը, պետք է լրջորեն մտածենք ապագայի մասին։ Մենք պետք է այսուհետև էլ զարգացնենք ատոմային էներգետիկան։ Չի կարելի թուլացնել ուշադրությունը էներգիայի այնպիսի հեռանկարային տեսակների ասպարեզում կատարվող աշխատանքների նկատմամբ, ինչպիսին է ջերմամիջուկային էներգիան։

Առանձնահատուկ դեր է ձեռք բերում բնական գազի հանույթի արագ ավելացումը։ Դրա պաշարները հսկայական են նախ և առաջ Արևմտյան Սիբիրում։ Այդ պաշարները հնարավորություն են ընձեռում թեթևացնելու վառելիքաէներգետիկ պրոբլեմի լուծումը, արագացնելու քիմիայի և մի շարք այլ ճյուղերի



զարգացումը։ Գազի մատակարարումների ընդլայնումը կարող էր օգնել սոցիալիստական ընկերակցության երկրների կարիքների ավելի լրիվ բավարարմանը։

Ելնելով այս նկատառումներից, առաջարկություն մտցվեց մշակել Արևմտյան Սիբիրի նավթագազային արդյունաբերության առավել արագ զարգացման խոշոր մասշտաբային ծրագիր։ Քաղբյուրոն պաշտպանեց այդ առաջարկությունը։ Պետպլանի խնդիրն է՝ այդ ծրագիրը դարձնել տասնմեկերորդ, ինչպես նաև տասներկուերորդ հնգամյակների կարևորագույն օղակը։

Դրա հետ մեկտեղ մեր պլանների մեջ պետք է արտացոլվի վառելիքի և էներգիայի լայն խնայողությունը։ Եվ ես նկատի ունեմ ինչպես այն խնայողությունը, որ կբերի անտնտեսվարության ու շռայլության դեմ մղվող վճռական պայքարը, այնպես էլ այն խնայողությունը, որը կապված է նպատակասլաց տեխնիկական քաղաքականության և կապիտալ ներդրումների քաղաքականության հետ։

Ժողովրդատնտեսական մեծ հարցերից ես կուզենայի ասել նաև քիմիայի մասին։ Այս բնագավառում շատ խոշոր տեղաշարժեր են կատարվել։ Եվ, այնուամենայնիվ, քիմիան ետ է մնում էկոնոմիկայի պահանջներից։ Հարկավոր է ուժեղացնել նրա դերը գյուղատնտեսության և «Բ» խմբի ճյուղերի զարգացման, մետաղների դեֆիցիտը վերացնելու, տեխնիկական առաջընթացն արագացնելու գործում։ Պլաններում անհրաժեշտ է նախատեսել պլաստմասսաների, սինթետիկ թելերի, ներկանյութերի, կենցաղային քիմիայի արտադրանքի զգալի ավելացում։

Հատուկ ուշադրություն է պահանջում քիմիական արդյունաբերության մեջ ներճյուղային անհամամասնությունների հաղթահարումը, ասաց այնուհետև ընկ. Լ. Ի. Բրեժնևը։ Նա նշեց, որ անհրաժեշտ է ավելացնել հումքի արտադրությունը՝ պարարտանյութերի արտադրության կարողություններն ավելի լրիվ օգտագործելու, գյուղատնտեսության համար դրանց մատակարարումներն ավելացնելու նպատակով։ Մեծ նշանակություն ունի նաև բույսերի պաշտպանության քիմիական միջոցների արտադրության ավելացումը։

Հիմնական ուղղություններում, շարունակեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը, հարկավոր է նախատեսել քիմիայի ետ մնալը հաղթահարելու հնարավորություն ընձեռող միջոցառումների կոմպլեքս։ Նա շեշտեց, որ խոսքը պետք է վերաբերի հենց միջոցառումների, այն էլ՝ վճռական միջոցառումների, կոմպլեքսին։ Առանց ժամանակակից մեծ քիմիայի այսօր չկա արդյունավետ էկոնոմիկա։

Կան տնտեսական գործունեության նաև մի քանի այլ ուղղություններ, որոնք ամենալուրջ ուշադրության են արժանի։ Դրանց թվում են, անկասկած, կապիտալ շինարարությունը, մետալուրգիան, տրանսպորտը, արտաքին տնտեսական կապերը։ Քանի որ այս ասպարեզներում ծառացած խնդիրներից շատերի մասին արդեն բազմիցս խոսվել է ՍՄԿԿ Կենտկոմի պլենումներում, այսօր ես դրանց չեմ անդրադառնա։ Բանն այն է, որ նոր հնգամյա պլանում այդ խնդիրների լուծման հուսալի ուղիներ գտնվեն՝ սկսած արդեն 1981 թվականի պլանից։

Կառավարման մեծ ու հրատապ թեմայից կանդրադառնամ միայն երկու հարցի։

Դրանցից մեկը վերաբերում է պլանավորմանը։ Դրանում անհրաժեշտ է լայնորեն օգտագործել նպատակային ծրագրերի մեթոդը։ Ամեն մի այդպիսի ծրագիր իրենից պետք է ներկայացնի այնպիսի միջոցառումների հիմնավորված, ճշգրիտ հաշվարկների վրա հենվող պլան, որոնք նպատակամղված են վերջնական արդյունքին, այս կամ այն պրոբլեմի սպառիչ լուծմանը։ Կարևոր է, որ ծրագրում սահմանվեն լուծվող խնդիրների փուլերն ու հերթականությունը։ Եվ, իհարկե, հարկավոր է ունենալ ծրագրի կառավարման այնպիսի սիստեմ, որը հստակորեն սահմանում է անձնական պատասխանատվություն աշխատանքի յուրաքանչյուր տեղամասի համար և տալիս անհրաժեշտ իրավունքներ։ Առանց այս ամենի՝ ծրագիրը ոչ թե ծրագիր է, այլ բարի ցանկությունների գումար։

Երկրորդ հարցը վերաբերում է ցենտրալիզմի և դեմոկրատական սկզբունքի ճիշտ հարաբերակցությանը։ ՍՍՀՄ սահմանադրության մեջ միանգամայն արդարացիորեն շեշտված է, որ երկրի էկոնոմիկան միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքս է։ Այն գործում է ըստ միջճյուղային և տերիտորիալ-արտադրական կապերի բարդ սխեմի։ Եվ, բնականաբար, միայն կենտրոնը կարող է արդյունավետ ղեկավարել այդ կոմպլեքսը՝ որպես միասնական ամբողջություն, հակազդել գերատեսչական և տեղայնական միտումներին։ Մյուս կողմից, որպեսզի էկոնոմիկան նորմալ գործի, հարկավոր է ըստ ամենայնի զարգացնել տեղերի, աշխատավորական կոլեկտիվների, տնտեսական ղեկավարների նախաձեռնությունը։ Անհրաժեշտ է, որ օպերատիվ հարցերի հիմնական զանգվածը լուծվի հենց այնտեղ, որտեղ դրանք կարելի է լուծել արագ, առանց ավելորդ քաշքշուկի և համաձայնեցումների։ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը առաջարկություններ է նախապատրաստում կառավարման կազմակերպական կառուցվածքը կատարելագործելու վերաբերյալ։ Հարկավոր է այդ աշխատանքը ավարտել մինչև համագումարը, որպեսզի նոր հնգամյակ քարշ չտրվեն հնացած ստրուկտուրաները։

Կառավարման ուրիշ շատ հարցերի վերաբերյալ համապատասխան որոշումներ արդեն ընդունվել են։ Դրանցից է տնտեսական մեխանիզմը կատարելագործելու մասին կարևոր որոշումը։ Այժմ բանն այն է, որ դրանք հետևողականորեն ու վճռականորեն կենսագործվեն։ Եվ, իհարկե, կան շատ հարցեր, որոնց առնչությամբ կարելի է և պետք է գործել, չսպասելով հատուկ որոշումների։

Ընկերնե՛ր։ Եզրափակելով, կուզենայի ասել. առջևում մենք մեծ աշխատանք ունենք։ Ութսունական թվականներին պետք է ավարտվի էկոնոմիկայի փոխադրումը ինտենսիվ զարգացման ռելսերի վրա, պետք է խիստ բարձրացվեն աշխատանքի արտադրողականությունն ու որակը։ Արտադրական հաջողությունների անհրաժեշտ պայմանն են մնում տնտեսական աշխատանքի մակարդակի բարձրացումը, կադրերի շրջանում գործարարության, պատասխանատվության և նախաձեռնության դաստիարակումը։

Շուտով համաժողովրդական քննարկման համար կհրապարակվի ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը՝ «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները»։ Այդ կարևոր կուսակցական փաստաթուղթը կդառնա մարզային և երկրամասային կոնֆերանսների, միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարների, բոլոր կուսակցական կազմակերպությունների ակտիվ քննարկման առարկան։ Հարկավոր է նպատակասլաց բնույթ հաղորդել այդ քննարկմանը, այնպես անել, որ դա նպաստի ամբողջ տնտեսական գործունեության վերելքին։

Այժմ երկրում ամենուրեք ծավալվում է սոցիալիստական մրցությունը՝ տասներորդ հնգամյակը հաջողությամբ եզրափակելու և կուսակցության XXVI համագումարը արժանավայել դիմավորելու համար։ Արդյունաբերության և գյուղատնտեսության, շինարարության և տրանսպորտի արտադրական կոլեկտիվները պարտավորություններ են ստանձնում բարձրացնելու որակը, ուժեղացնելու խնայողության ռեժիմը, ամրապնդելու աշխատանքային կարգապահությունը, լավ սկսելու տասնմեկերորդ հնգամյակը։

Լրիվ թափով ընթանում է հաշվետու-ընտրական կամպանիան կուսակցական կազմակերպություններում։ Դա միշտ էլ պատասխանատու շրջան է կուսակցության կյանքում, բայց դրա նշանակությունը առանձնապես մեծ է նախահամագումարյան ժամանակահատվածում։ Ժողովներում և կոնֆերանսներում գործարարությամբ, սուր կերպով և ինքնաքննադատաբար քննարկվում են կուսակցական կազմակերպությունների գործունեության բոլոր կողմերը, բացահայտվում են վրիպումներն ու թերությունները, պաշտպանվում է ամեն դրականը։

Մեծ արժեք են ներկայացնում կոմունիստների քննադատական դիտողություններն ու առաջարկությունները։ Եվ շատ ճիշտ են վարվում այն կուսակցական կոմիտեները, որոնք անհապաղ դրանց առթիվ կոնկրետ միջոցներ են



ձեռնարկում։ Դա լավ է, դա բարձրացնում է ժողովների ներգործունությունը, քննադատության ներգործունությունը։

Կոմունիստների առջև կուսակցական կոմիտեների հաշվետվությունները, ըստ էության, նաև նրանց հաշվետվություններն են աշխատավորների առջև, ամբողջ ժողովրդի առջև։ Հրապարակայնությունը, կուսակցության գործունեության վերաբերյալ մասսաներին իրազեկ պահելը մեզ համար անառարկելի օրենք են։ Այստեղից հետևում է, որ մասսայական ինֆորմացիայի միջոցները՝ մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը պետք է սիստեմատիկաբար պատմեն հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքի մասին, ավելի խոր բացահայտեն դրա բովանդակությունը։ Այս կապակցությամբ կուզենայի նշել, որ մասսայական ինֆորմացիայի միջոցները, պրոպագանդայի մարմինները բարելավել են աշխատանքը, բարձրացնում են մի շարք սուր հարցեր, որոնց առթիվ ընդունվում են կուսակցական լուրջ որոշումներ, և դա կարելի է միայն ողջունել։

Դրա հետ մեկտեղ հարկավոր է տեսնել, որ գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման լրիվ իրագործման համար դեռ շատ բան պետք է արվի։

Ընկերնե՛ր։ Կուսակցությունը դեպի իր համագումարն է ընթանում ժողովրդի հետ սերտ միասնությամբ, ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում գործողությունների հստակ ծրագրով։ Թույլ տվեք վստահություն հայտնել, որ կոմունիստները, ամբողջ սովետական ժողովուրդը հավանություն կտան այդ ծրագրին, հաստատ ու հետևողականորեն կկենսագործեն այն։ (Ծափահարություններ)։ Դա է հերթական խնդիրների հաջող լուծման երաշխիքը, կոմունիստական շինարարության ուղիով նոր առաջընթացի երաշխիքը։ (Երկարատև ծափահարություններ)։

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Նոյեմբերի 11-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը քննարկեց հետևյալ հարցը. «ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թվականի հոկտեմբերյան պլենումի արդյունքները և պլենումի որոշումներից, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթից բխող՝ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրները»:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը:**

Պլենումը լսեց Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, Հայկական ՍՍՀ պետպլանի նախագահ ընկ. **Հ. Ս. Սաղոյանի** զեկուցումը «Հայկական ՍՍՀ տնտեսական և սոցիալական զարգացման 1981 թվականի պետական պլանի մասին» և Հայկական ՍՍՀ ֆինանսների մինիստր ընկ. **Զ. Ա. Զանոյանի** զեկուցումը «Հայկական ՍՍՀ 1981 թվականի պետական բյուջեի մասին և Հայկական ՍՍՀ 1979 թվականի պետական բյուջեի կատարման մասին»:

Զեկուցումների շուրջ տեղի ունեցած մտքերի փոխանակությանը մասնակցեցին Հայաստանի կոմկուսի Երևանի քաղկոմի քարտուղար ընկ. **Ա. Հ. Դանիելյանը,** Հայաստանի կոմկուսի Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Դ. Ա. Հարությունյանը,** Կիրովականի տրիկոտաժի արտադրական միավորման բանվորուհի ընկ. **Գ. Ա. Ղազարյանը,** Հայկական ՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստր ընկ. **Է. Փ. Ավագյանը,** Հայաստանի կոմկուսի Ստեփանավանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Վ. Ռ. Բալյանը,** անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքի պետ ընկ. **Հ. Ա. Ղանդիլյանը,** Էջմիածնի շրջանի Ծաղկալանջ գյուղի կոլտնտեսուհի **Ն. Գ. Ավետիսյանը,** կոշիկի «Մասիս» արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր ընկ. **Հ. Խ. Հարությունյանը:**

Պլենումը լսեց նաև «ՍՄԿԿ XXVI համագումարն արժանավայել դիմավորելու ուղղությամբ Հայաստանի կոմկուսի Կիրովականի քաղկոմի կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մասին» հարցը: Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Հ. Ա. Օհանյանը:**

Զեկուցման շուրջ տեղի ունեցած մտքերի փոխանակությանը մասնակցեցին Հայաստանի կոմկուսի Դիլիջանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Գ. Մ. Մուղնեցյանը,** «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման Երևանի էլեկտրալամպերի գործարանի բանվորուհի ընկ. **Զ. Գ. Սարգսյանը,** Հայաստանի կոմկուսի Իջևանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Ռ. Ա. Սուխուդյանը,** ժողովրդական դեպուտատների Հրազդանի քաղսովետի գործկոմի նախագահ ընկ. **Տ. Ս. Պետիկյանը:**

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը քննարկված հարցերի առթիվ ընդունեց համապատասխան որոշումներ:

Եզրափակման խոսքով պլենումում հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը:**

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը ավարտեց աշխատանքը:

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱԾՆՆԴԻ ՊԱՆԾԱԼԻ ՀՈԲԵԼՅԱՆԸ

**Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար

*ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ԲՈՎՈՐՈՒՄ է 60 ՏԱՐԻՆ 1920 թվականի նոյեմբերի այն հիշարժան օրից, երբ Հայաստանի բանվորներն ու գյուղացիները, լենինյան կուսակցության ղեկավարությամբ, իրենց ձեռքը վերցրին պետական իշխանությունը և մեր հինավուրց հողի վրա բարձրացրին Հոկտեմբերի անպարտելի կարմիր դրոշը, մեծ բեկումների, աշխարհի հեղափոխական վերափոխման դրոշը:*

*Սովետական Հայաստանի աշխատավորները, մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների հետ մեկտեղ, մեծ ոգևորությամբ են նշում Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման փառապանծ 60-ամյակը:*

*Պայքարի ու կառուցման հերոսական ուղի է անցել հայ ժողովուրդը միասնական սովետական ընտանիքում, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, լենինյան հաղթական դրոշի ներքո: Այս օրերին մեր հանրապետությունում ամենուրեք տիրող համաժողովրդական խանդավառության, քաղաքական ու աշխատանքային վերելքի ու ոգևորության մթնոլորտը վառ կերպով արտահայտում է նոր կյանքի կառուցման ասպարեզում պատմական խոշոր հաղթանակ տարած ժողովրդի հայրենասիրական զգացմունքները: Հայ ժողովուրդն անսահման երջանիկ է, որ սովետական ժողովուրդների միասնական ընտանիքում անցած իր ուղին պսակված է կյանքի բոլոր ոլորտներում տարած փայլուն հաղթանակներով:*

*Սովետական Հայաստանի վաթսունամյա պատմությունը սոցիալիստական պետականության ստեղծման ու զարգացման, մեր ժողովրդի ազգային վերածննդի պատմությունն է, պայքարի ու կառուցման, համակողմանի անշեղ առաջընթացի պատմությունը, ռուս մեծ ժողովրդի, մեր անծայրածիր հայրենիքի բոլոր ժողովուրդների հետ անքակտելի եղբայրական բարեկամության հետագա ամրապնդման պատմությունը:*

*Հիացած մեր հինավուրց երկրի սքանչելի նորով, քաղաքների ու գյուղերի նորոգ տեսքով, կյանքի բուռն ռիթմով, ժողովրդի հանճարով ստեղծված նյութական ու հոգևոր վիթխարի հարստությամբ, մեզ համար այսօր նույնիսկ դժվար է պատկերացնել, որ ընդամենը վաթսուն տարի առաջ Հայաստանը անհավոր աղքատության, տառապանքի ու սովի երկիր էր: Ասես, հակառակ մարդկային լինելության տրամաբանությանը, ժողովրդի վշտի ակոսներում կանգ էին առել պատմության ժամացույցի սլաքները: Բայց, չնայած բոլոր փորձությունների, իր կենսունակության շնորհիվ հայ ժողովուրդը տոկաց: Նրա, ինչպես և մեր երկրի բոլոր ժողովուրդների ճակատագրում, կտրուկ շրջադարձ կատարվեց, և կատարվեց հենց այն պատճառով, որ կար ու գործում էր աշխարհի հեղափոխական նորացման մեծ ուժը, որ հանուն աշխատանքի մարդկանց երջանկության ապրում, ստեղծագործում և պայքարում էր մի տիտան, որ տեղի ունեցավ մարդկության լուսավոր ապագայի ուղին հարթող մեծագույն իրադարձությունը:*

Այդ մեծ ուժը եղել և մնում է գիտական կոմունիզմը, որը բացահայտեց
մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքները և ցույց տվեց
հին աշխարհի կործանման ու սոցիալիզմի հաստատման անխուսափելիությու-
նը: Դա մարքսիզմ-լենինիզմն է, որը հսկայական ազդեցություն գործեց միլիո-
նավոր մարդկանց մտքի, գիտակցության, աշխարհհայացքի վրա և դարձավ աշ-
խարհի հեղափոխական վերափոխման զորեղ գործոնը:

Այդ տիտանը անմահ Լենինն էր՝ կոմունիստների փառապանծ կուսակցու-
թյան հանճարեղ ստեղծողը, այն կուսակցության, որը բանվոր դասակարգին,
ամբողջ աշխատավոր ժողովրդին գրոհի տարավ շահագործման և իրավազըր-
կության հին աշխարհի վրա: Վլադիմիր Իլյիչ Լենինը մեր դարաշրջանի մարդ-
կանցից մեծագույնն էր, որի անվան և ուսմունքի հետ են կապված մեր դարի
բոլոր ակնառու հեղափոխական իրադարձությունները. իսկական ժողովրդական
առաջնորդն ու բոցաշունչ հեղափոխականը, որն իր վիթխարի աշխատանքն
իրագործում էր մասսաների խորքում, որն իրեն անմնացորդ նվիրաբերեց նրանց
ազատության ու երջանկության պայքարին:

Այդ իրադարձությունը՝ XX դարի գլխավոր իրադարձությունը, Լենինի,
բոլշևիկների կուսակցության նախապատրաստած ու գլխավորած՝ պատմու-
թյան մեջ առաջին հաղթական սոցիալիստական հեղափոխությունն էր, որն
աշխարհի հեղափոխական նորացման դարաշրջանի սկիզբը դրեց, որն իրա-
վամբ, Լենինի խոսքերով ասած, ճնշվածների ու շահագործվողների տոնը դար-
ձավ, հեղափոխություն, որն իրականացրեց աշխատավոր մասսաների դարա-
վոր իղձերն ու հույսերը, նրանց դարձնելով նոր կյանքի ակտիվ կերտողներ,
հեղափոխություն, որը հուշակեց ու իրականացրեց սոցիալիզմի, խաղաղության,
ժողովուրդների բարեկամության ու հավասարության գաղափարները:

«Ցարական ինքնակալության դեմ ռուսաստանյան պրոլետարիատի պայ-
քարի պատմական փորձը,— ինչպես նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— Հայաստա-
նի աշխատավորներին ցույց տվեց ազատության, սոցիալական առաջընթացի
միակ ճիշտ ուղին՝ հեղափոխական պայքարի ուղին, սոցիալիստական վերափո-
խումների ուղին»:

Եվ սոցիալական ու ազգային ազատագրության համար Հայաստանի աշ-
խատավորության պայքարը դարձավ հանուն սոցիալիստական հեղափոխու-
թյան մղված համառուսաստանյան պայքարի օրգանական անքակտելի մասը:

Հոկտեմբերից դեռևս շատ առաջ մեր ժողովրդի լավագույն զավակ-
ները, տարածելով գիտական սոցիալիզմի գաղափարները, լենինյան կու-
սակցության գաղափարները, ակտիվ սատարում էին հեղափոխական զար-
թոնքին, մասսաների դասակարգային ու ազգային ինքնագիտակցության բարձ-
րացմանը, նախապատրաստում նրանց համառ պայքարի ընդդեմ ցարական
ինքնակալության, շահագործողների իշխանության:

Մեր ժողովուրդը հպարտանում է, որ իր ծոցից դուրս է եկել ականա-
վոր հեղափոխականների մի պայծառ համաստեղություն. նրանք իրենց հերոսա-
կան կյանքն անմնացորդ նվիրել են աշխատավոր ժողովրդի ազատագրության
գործին: Կոփվելով հեղափոխական պայքարի բովում, նրանցից շատերը եղել
են Վ. Ի. Լենինի մերձավոր զինակիցներն ու աշակերտները, մեծ ավանդ ներ-
դրել մարքս-լենինյան գիտության մեջ, ընթացել հին աշխարհի դեմ գրոհող
ռուսաստանյան պրոլետարիատի մարտական առաջին շարքերում: Անմեռ են
և մեր սրտերում հավերժ կապրեն հեղափոխության ապետներ Ստեփան Շա-
հումյանի, Իսահակ Լալայանցի, Բոգդան Կնունյանցի, Սուրեն Սպանդարյանի,
Ալեքսանդր Մյասնիկյանի, Կամոյի (Սիմոն Տեր-Պետրոսյանի), սովետների
իշխանության համար մարտնչած հազարավոր խիզախ բոլշևիկ-լենինյանների
անզուգական, անսահման թանկ անունները:

Ոգեշնչված Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակով՝ Հայաստանի
աշխատավոր մասսաները վճռական պայքարի ելան հանուն սովետական իշ-
խանության հաստատման: Աշխատավորների՝ 1920 թվականի մայիսին բռնկած
զինված ապստամբությունը ուժգին հարված հասցրեց բուրժուական-ազգայնա-
կան հակահեղափոխությանը, դաշնակների իշխանությանը, որոնց հակաժողո-



վըրդական, արկածախնդիր քաղաքականությունը Հայաստանը հասցրել
էր ազգային աղետի եզրին:

Ապստամբությունը դրսևորեց աշխատավոր մասսաների բուռն ձգտումը
սովետական իշխանության, մեծ Հոկտեմբերի գաղափարների նկատմամբ: Այդ
ձգտումն անհնար էր կասեցնել վայրագ ճնշումների, զանգվածային տեռորի
միջոցով, որոնց զոհ դարձան Մայիսյան ապստամբության պանծալի ղեկա-
վարներ Ս. Ալավերդյանը, Ս. Մուսայելյանը, Բ. Ղարիբջանյանը, Ղ. Ղուկաս-
յանը, Ե. Սևյանը, Ա. Փանյանը, Ա. Մելքոնյանը, Հ. Սարուխանյանը, Բ. Բատիկ-
յանը, Ե. Մկրտումյանը, Վ. Ալեքսեևը, Ե. Շամախյանը, Բ. Հարությունյանը և
շատ այլ բոցաշունչ հեղափոխականներ:

Մայիսյան ապստամբությունը վիթխարի դեր խաղաց մասսաների դասա-
կարգային միասնության ամրապնդման և հետագա քաղաքական ակտիվու-
թյան, սովետական իշխանության համար մղած հետևողական պայքարի գոր-
ծում: Մայիսյան ապստամբությունը դարձավ հաղթական Նոյեմբերի նախա-
բանը:

Աշխատավորների հերոսական պայքարը ղեկավարում էր Հայաստանի կո-
մունիստական կուսակցությունը, որի ձևավորումը, գաղափարական, կազմա-
կերպական ու տակտիկական լենինյան սկզբունքների հիման վրա, ա-
վարտվեց 1920 թվականի ամռանը: Լինելով ՌԿ(բ)Կ մարտական ջոկատներից,
անքակտելի բաղկացուցիչ մասերից մեկը, Հայաստանի կոմունիստական կու-
սակցությունը բոլշևիկյան անձնուրացությամբ էր պայքարում Հոկտեմբերի գա-
ղափարների համար, անշեղորեն ընթանում էր աշխատավոր ժողովրդի ավան-
գարդում, նախապատրաստում ու գլխավորում էր նոր զինված ապստամբու-
թյունը:

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի
կողմից ստեղծված հեղկոմը, անդրկովկասյան բանվորական շարժման ականա-
վոր գործիչ Սարգիս Կասյանի գլխավորությամբ, 1920 թվականի նոյեմբերի
29-ին կոմունիստական կուսակցության և աշխատավորության անունից հայ-
տարարեց դաշնակցական կառավարության տապալման մասին և հռչակեց սո-
վետական իշխանության հաստատումը Հայաստանում: Հայաստանի հեղկոմի
խնդրանքով բանվորագյուղացիական հանրապետությանը օգնության հասան
փառապանծ 11-րդ կարմիր բանակի զորամասերը՝ Ս. Մ. Կիրովի, Գ. Կ. Օրջոնի-
կիձեի, Ա. Ի. Միկոյանի գլխավորությամբ:

Մեծ Լենինը ջերմորեն ողջունեց իմպերիալիզմի ճնշումից ազատագրված
աշխատավորական Սովետական Հայաստանին: Վլադիմիր Իլյիչի ղեկավարած
սովետական կառավարությունն անհապաղ վճռական միջոցներ ձեռնարկեց սո-
ցիալիստական նոր հանրապետությունը պաշտպանելու և նրան համակողմանի
օգնություն ցույց տալու նպատակով, արեց հնարավոր ամեն բան, որպեսզի
Հայաստանում ամրապնդվի սովետական իշխանությունը, և բաղձալի ազա-
տություն ձեռք բերած ժողովուրդն ընթանա սոցիալիզմի կառուցման մեծ ճա-
նապարհով:

1921 թվականի ապրիլի 14-ին Վ. Ի. Լենինը Ադրբեջանի, Վրաստանի, Հա-
յաստանի, Դաղստանի, Լեռնականների Հանրապետության կոմունիստներին դի-
մեց նամակով՝ այն հանձնելով Ա. Ֆ. Մյասնիկյանին, որին կուսակցության
Կենտկոմը ղեկավար աշխատանքի էր ուղարկում նորաստեղծ սոցիալիստական
հանրապետություն: Մեծ առաջնորդը նշում էր երկրամասի արագ վերածնու-
թյան կոնկրետ ուղիները: Սոցիալիստական հեղափոխության ամենակարևոր ու
բարդ խնդրի՝ ստեղծագործ աշխատանքի իրականացումն սկզբնավորող պատ-
մական ծրագիր էր այդ:

Նոր կյանքի կառուցումը դյուրին չէր: Երիտասարդ սովետական իշխանու-
թյունը բախվեց «առաջադրված և սկսված խնդիրների համաշխարհային պատ-
մական մեծության և նյութական ու կուլտուրական աղքատության միջև եղած
խզման» անդունդի անողոք փաստին: Հարկավոր էր շատ կարճ ժամկետում
«լցնել այդ անդունդը» (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 45, էջ 410—414):

Մենք ժառանգել էինք ավերված երկիր, խիստ վատթար վիճակում

գտնվող արտադրաուժեր։ Աշխատավոր ժողովրդի մեծ մասն անգրագետ էր։ Եվ Հայաստանի աշխատավորները հարկադրված էին այդ ստեղծարար ծրագրի իրականացումն սկսել բրիչով, բահով, արորով և այբբենարանով։

Նոր կյանքի առաջին տարիներն իսկ անառարկելիորեն ապացուցեցին, որ միայն սոցիալիստական պետականությունը, միայն աշխատավորների իշխանությունն են ունակ ստեղծելու սոցիալական արդարության աշխարհ։ Մեր ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հաղթահարելով անասելի դժվարություններ, գործեց աշխատանքային սխրանքի ու խիզախության իրական հրաշքներ, անմոռաց նվաճումներով նշանավորելով հանրապետության կազմավորման ու զարգացման տարեգրության փառավոր էջերը։ Տոկունությամբ ու անձնվիրությամբ, անցյալի փլատակների վրա, շատ բաներում ուղղակի ոչնչից, բոլորովին նոր հիմքի վրա նա ստեղծում էր սոցիալիստական ժողովրդական տնտեսությունը, կառուցում նոր քաղաքներ ու ավաններ, գործարաններ ու ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ, ամայի տարածություններում հիմնում պտղատու և խաղողի այգիներ, ստեղծում նոր, սոցիալիստական գյուղատնտեսական ձեռնարկություններ, անցկացնում ճանապարհներ ու ջրանցքներ, բացում դպրոցներ, ինստիտուտներ, թատրոններ, թանգարաններ։

Նախապատերազմյան քսան տարիների ընթացքում հանրապետությունում ստեղծվեցին ավելի քան երկու հարյուր արդյունաբերական ձեռնարկություններ, որը հնարավորություն ընձեռեց նախահեղափոխական ժամանակաշրջանի համեմատությամբ 32 անգամ ավելացնել արդյունաբերական արտադրանքի ծավալը։ Լիովին իրականացվեց գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը, 2,5 անգամ գերազանցվեց հողագործության արտադրանքի 1913 թվականի մակարդակը, կենսագործվեց կուլտուրական հեղափոխության լենինյան պլանը, վերացվեց անգրագիտությունը։

Այսպիսով, պատմական շատ կարճ ժամանակում մեր հանրապետությունում, ինչպես որ ամբողջ երկրում, լցվեց առաջադրված և սկսված խնդիրների համաշխարհային պատմական մեծության և նյութական ու կուլտուրական աղքատության միջև եղած այն անդունդը, որի մասին խոսում էր Լենինը։ Ամուր հիմք ստեղծվեց ժողովրդի նյութական և հոգևոր ուժերի հետագա, որակապես նոր, բուռն ծաղկման համար։

Երբեք չի մոռացվի բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության, ժողովրդական մտավորականության այն սերունդների սխրանքները, որոնց աշխատանքով, եռանդով, կամքով ու մտքով դրվեցին Սովետական Հայաստանի սոցիալիստական էկոնոմիկայի ու կուլտուրայի հիմքերը։ Նրանց ձեռքով կառուցվեցին ժողովրդական զանգվածների հեղափոխական աշխատանքային հերոսության խորհրդանիշը դարձած Շիր-կանալը, Ձորագէսն ու Քանաքեռգէսը, Լենինականի տեքստիլ կոմբինատը, Արարատի ցեմենտի գործարանը, քիմիական կոմբինատները Երևանում և Կիրովականում, օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնի վեհանիստ շենքը, Լենինի հոյակապ հրապարակը՝ կառավարական տնով և անմահ առաջնորդի բարձրարվեստ հուշարձանով։

Երբեք չի մոռացվի Հայաստանի կոմունիստական կուսակցության, նրա կոմիտեների ու սկզբնական կազմակերպությունների, հազարավոր բոլշևիկների ծավալած քաղաքական վիթխարի աշխատանքը մասսաների լայն շրջաններում՝ ինդուստրացման, կոլեկտիվացման, կուլտուրական հեղափոխության իրականացման նպատակով։ Երախտագետ սերունդներն ակնածանքով են հիշում Ա. Մյասնիկյանի, Ս. Կասյանի, Ս. Լուկաշինի, Ս. Տեր-Գաբրիելյանի, Հ. Բժշկյանի, Գ. Աթարբեկյանի, Ա. Մռավյանի, Ա. Խանջյանի և մեր հանրապետության կուսակցական ու պետական այլ ականավոր գործիչների անունները, որոնք իրենց ուժերն ու գիտելիքները, կազմակերպչական տաղանդը նվիրեցին Հայաստանում սոցիալիստական հասարակության կառուցմանը։

Նոր կյանքի կառուցման բոլոր նվաճումները Սովետական Հայաստանի ժողովուրդը ձեռք է բերել ռուս մեծ ժողովրդի, երկրի բոլոր ժողովուրդների ակտիվ աջակցությամբ և մշտական անշահախնդիր օգնությամբ։ Մեր ուժերն ու հնարավորությունները բազմապատիկ ավելացման, երբ Հայկական ՍՍՀ-ն,



մյուս սովետական հանրապետությունների հետ, մտավ ՍՍՀՄ-ի՝ ազատագրված ժողովուրդների միասնական սոցիալիստական միութենական պետության կազմի մեջ։

Սովետական ժողովուրդների անխախտ դաշինքը և եղբայրական միասնությունը դարձան բոլոր հանրապետությունների առաջընթացի հզոր արագացուցիչը, մեր բազմազգ սոցիալիստական պետության հզորության անսասան հիմքը։ Պատմությանը հայտնի չէր և չէր էլ կարող հայտնի լինել ժողովուրդների նման կայուն դաշինք ու միասնություն։

Սովետական ժողովուրդների անխախտ դաշինքի, նրանց բարոյաքաղաքական միասնության և համախմբվածության մեծագույն փորձությունն էր Հայրենական մեծ պատերազմը։ Սովետների երկիրը, նրա հերոսական ժողովուրդը, հասարակական-պետական կարգը դիմացան այդ ծանրագույն փորձությանը և հաղթեցին։ Ֆաշիստները, որ հույս ունեին պառակտել մեր ժողովուրդներին, չարաչար սխալվեցին։ Սովետական ժողովուրդները, ողջ աշխարհին ցուցադրելով իրենց անկոտրում հավատարմությունը Հոկտեմբերի իդեալներին, Լենինի անմահ գաղափարներին, հարազատ կուսակցության կոչով, մեկ մարդու պես ոտքի ելան՝ կրծքով պաշտպանելու սիրելի հայրենիքը, նրա ազատությունն ու անկախությունը։

Հայաստանի հարյուր հազարավոր որդիներ ու դուստրեր սովետական մյուս ժողովուրդների զավակների հետ ուս-ուսի անձնվիրաբար կռվում էին ռազմաճակատներում, մասնակցում պարտիզանական շարժմանը։ Ավելի քան 70 հազար հայ ռազմիկներ մարտերում ցուցաբերած քաջության ու խիզախության համար պարգևատրվեցին մարտական շքանշաններով ու մեդալներով, 105-ը արժանացան Սովետական Միության հերոսի կոչման, իսկ ավելի քան 60-ը դարձան մարշալներ, գեներալներ, ծովակալներ։

Հայրենական մեծ պատերազմի դյուցազնական տարեգրության մեջ հավերժ կմնան պանծալի մարշալ, Սովետական Միության կրկնակի հերոս Հ. Ք. Բաղրամյանի, Սովետական Միության հերոսներ, Սովետական Միության նավատորմի ծովակալ Հ. Ս. Իսակովի և զրահատանկային զորքերի գլխավոր մարշալ Հ. Խ. Բաբաջանյանի, ավիացիայի մարշալ Ս. Ա. Խուդյակովի (Խամփերյանցի) և հայ ժողովրդի շատ այլ ականավոր զավակների անունները։ Մեծ հայրենականի ռազմաճակատներում մարտնչում էին հայկական հինգ դիվիզիաներ։ Անթառամ փառքով են պսակել իրենց 89-րդ Թամանյան դիվիզիայի մարտիկները, որոնք հերոսական ճանապարհ անցան Կովկասյան նախալեռներից մինչև Բեռլին։

Երբեք չի մոռացվի և թիկունքի աշխատավորների սխրանքը։ Ռազմաճակատի գիծը չանցավ Հայաստանով, այստեղ ռումբեր չպայթեցին, բայց այդ ծանրագույն տարիներին մեր հանրապետությունը, ինչպես և ողջ երկիրը, ապրում էր ռազմաճակատի հոգսերով ու կարիքներով։ Այն դարձել էր նրա զինանոցներից մեկը, մարտնչող սովետական բանակին անընդմեջ մատակարարելով մոտ 300 տեսակ զենք ու զինամթերք։ Փորձության այդ դաժան տարիներին լիովին դրսևորվեցին մեր հիանալի կանանց ու երիտասարդության լավագույն հատկանիշները։ Փոխարինելով ռազմաճակատ մեկնած ամուսիններին, հայրերին, եղբայրներին, ցույց տալով հայրենասիրության ու անձնվիրության վսեմ օրինակներ, նրանք աշխատում էին գիշեր ու զոր, անում բառացիորեն ամեն ինչ՝ ռազմաճակատի ու հաղթանակի համար։ Այդ ահեղ օրերին ողջ հայ ժողովուրդը պայքարի էր ելել մարդկության ամենադաժան թշնամու՝ գերմանական ֆաշիզմի դեմ։ Մեր ժողովրդի բազմաթիվ զավակներ ակտիվ մասնակցել են դիմադրության շարժմանը։ Արտասահմանի հայկական գաղթօջախներում միջոցներ ժողովվեցին մարտնչող սովետական հերոս ժողովրդին օգնելու համար։

Այս տարի մեր երկիրը հանդիսավորությամբ նշեց պատմական հաղթանակի 35-ամյակը։ Ահա արդեն 35 տարի է մենք ապրում, աշխատում, ստեղծագործում ենք խաղաղ պայմաններում։ Մեր սրտերում հավերժական կրակի պես անմար է հայրենիքի խաղաղ երկնքի համար զոհվածների հիշատակը։

Աշխատանքային հրաշագործություններով, համատեղ հերոսական ջան-

քերով մեր ժողովուրդները արագ ապաքինեցին պատերազմի հասցրած վերքերը, կարողացան հետպատերազմյան անցած տասնամյակների ընթացքում բազմապատկել երկրի տնտեսական պոտենցիալը, ապահովել արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի արագ աճ, սոցիալ-տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում հասնել աննախընթաց վերելքի:

Սովետական ժողովրդի պատմական ստեղծագործության գլխավոր արդյունքը զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումն է: Հասարակարգ, ուր ստեղծված են հզոր արտադրողական ուժեր, առաջավոր գիտություն ու կուլտուրա, ուր աճում է ժողովրդի բարեկեցությունը, ստեղծվում են բարենպաստ պայմաններ անհատի համակողմանի զարգացման համար, լիակատար դեմոկրատիայի հասարակարգ, որի քաղաքական սիստեմն ապահովում է հասարակական բոլոր գործերի արդյունավետ կառավարումը, պետական կյանքին աշխատավորների առավել ակտիվ մասնակցությունը, մարդու ռեալ իրավունքների ու ազատությունների հետ քաղաքացիական պարտքի ու պատասխանատվության զուգակցումը: Պատմական այդ արդյունքը օրենսդրորեն վավերագրված է ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ սահմանադրություններում:

Հարյուրամյակների են հավասար անցած վեց տասնամյակներն իրենց բովանդակությամբ և հեղափոխական-վերակերտիչ պրակտիկայի դինամիզմով, ձեռք բերված իրական արդյունքներով: Հանրապետության համար դրանք եղել են սոցիալ-տնտեսական, հասարակական-քաղաքական, պետական իրավական և մշակութային հարաճուն զարգացման տարիներ: Սովետական Հայաստանի հաջողություններում արտացոլված են մեր մեծ երկրում ամենուրեք ձեռք բերված նվաճումները:

Հայաստանի այսօրվա ինդուստրիայի դեմքը բնորոշում են տեխնիկական բարձր զինվածություն, արտադրության տեխնոլոգիայի կազմակերպման, կառավարման և կուլտուրայի արդիական մակարդակ ունեցող հարյուրավոր միավորումներն ու արդյունաբերական ձեռնարկությունները, որոնք թողարկում են հազարավոր անուն բարդ ու բարձրորակ արտադրատեսակներ: Բազմաճյուղ արդյունաբերություն է այն՝ շարունակ կատարելագործվող կառուցվածքով, արդյունաբերություն, ուր արագ տեմպերով զարգանում է մեքենաշինությունը, այդ թվում՝ էլեկտրատեխնիկան, ռադիոտեխնիկան, էլեկտրոնիկան, սարքաշինությունը, հաստոցաշինությունը, գիտատեխնիկական պրոգրեսը բնորոշող բնագավառների նոր ուղղություններ: Ժողովրդական սպառման ապրանքների լայն տեսականու արտադրությունն ապահովող, երկրի ժողովրդատնտեսական միասնական համալիրում կոոպերացված լայն կապերի արդյունաբերություն է այն:

Քսանական թվականների սկզբներին մենք երկչոտորեն բախում էինք հիդրոէլեկտրականության դռները, իսկ այսօր հաստատորեն ոտք ենք դրել ատոմային էներգետիկայի դարը: Հայաստանն այժմ տարեկան արտադրում է ավելի քան 12 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա:

Լայնորեն մասնակցելով աշխատանքի համամիութենական սոցիալիստական բաժանմանը, Հայաստանն այժմ երկրի ժողովրդատնտեսական միասնական համալիրին տալիս է էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, փոփոխական հոսանքի գեներատորներ, էլեկտրաշարժիչներ, տրանսֆորմատորներ, կաբել և հաղորդալարեր, ռակցող սարքեր, պոմպեր, կոմպրեսորներ, մետաղամշակման հաստոցներ, ամենատարբեր սարքեր, ավտոմոբիլներ, ինքնաբարձիչներ, դողեր, շինանյութեր, քիմիական, թեթև և սննդի արդյունաբերության արտադրանք: Միաժամանակ միութենական մյուս հանրապետություններից Հայաստանն ստանում է մեծ քանակությամբ անհրաժեշտ տարբեր տեսակի արտադրանք և հումք: Հանրապետության արդյունաբերությունն սկսել է առավել գործուն մասնակցել երկրի էքսպորտային առաքումներին: Այժմ աշխարհի 80, այդ թվում և զարգացած կապիտալիստական երկրներ են առաքվում ժամանակակից հզոր էլեկտրական մեքենաներ, տրանսֆորմատորներ, հաշվիչ-չափիչ տեխնիկա, մետաղահատ հաստոցներ, զանազան սարքեր, ռադիոէլեկտրոնային ապարատներ և արդյունաբերական արտադրանքի շատ այլ տեսակներ:

Խոշոր, սկզբունքային փոփոխություններ են տեղի ունեցել վերջին տարիներս հանրապետության էկոնոմիկայի ոլորտում: ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մի-



նիստրների խորհրդի՝ «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» պատմական որոշումը և ամենքին հայտնի մյուս որոշումները, որոնք ընդունվեցին անձամբ ընկեր Լ. Ի. Բրեժնևի նախաձեռնությամբ, նշանավորեցին հանրապետության արտադրաուժերի զարգացման նոր փուլ:

Այդ որոշումները ժողովրդական տնտեսության, հատկապես արդյունաբերության էական կառուցվածքային կատարելագործման հիմք և հստակ ծրագիր դարձան: Արդեն ընթացիկ տասներորդ հնգամյակում սկսվեցին արտադրության այն ճյուղերի գերակշիռ զարգացման կոմպլեքսային աշխատանքները, որոնք համապատասխանում են հանրապետության հումքային, էներգետիկ և աշխատանքային ռեսուրսներին, նրա այսօրվա գիտական պոտենցիալին, հաշվի են առնում բնության և շրջակա միջավայրի շահերը, նպաստում արտադրողական ուժերի պրոգրեսիվ զարգացմանը, միտում են դրական սոցիալական հետևանքների:

Հատուկ ուշադրություն է նվիրվում արտադրողական ուժերի ռացիոնալ տեղաբաշխմանը: Արդեն տասներորդ հնգամյակի վերջին միջին և փոքր քաղաքներում ու բնակավայրերում թողարկվող արտադրանքի տեսակարար կշիռը կկազմի արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի ավելի քան 35 տոկոսը, ընդ որում, խոշոր քաղաքների համեմատությամբ, դրանցում արդյունաբերական արտադրանքի աճի տեմպերը գերազանցում են 2,4 անգամ:

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի և հանրապետության կառավարության՝ կանխագծված կուրսի իրականացման նպատակով մշակած կոնկրետ ծրագիրն առավել կընդարձակվի մոտակա հեռանկարում: Սովետական Հայաստանն այսօր հիրավի ժամանակակից բարձր զարգացած արդյունաբերության հանրապետություն է:

Գյուղում նոր կյանքի հաստատումը մենք սկսեցինք պապենական արորով: Սակավահող, քարքարոտ Հայաստանն ուղղակի տոչորվում էր ծարավից: Իսկ այսօր հանրապետությունում գործում է ոռոգման 11 հազար կիլոմետրանոց ցանցը, ոռոգվում է մոտ 280 հազար հեկտար տարածություն: Գյուղատնտեսությունն ունի հզոր մեքենայական պարկ, մոտ 13 հազար տրակտորներ, 2,2 հազար հացահատիկահավաք և սիլոսահավաք կոմբայններ, 15 հազար բեռնատար ավտոմեքենաներ:

Հանրապետության, ինչպես և ողջ երկրի գյուղատնտեսության համար սկզբունքային նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումը, որը մշակեց արդի փուլում կուսակցության ագրարային քաղաքականության հիմունքները: Աննախընթաց թափ ստացավ գյուղում արտադրողական ուժերի զարգացումը, հետևողականորեն իրականացվում է գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացումը, նրա փոխադրումը արդյունաբերական ռելսերի վրա: Մարտյան պլենումից հետո հանրապետության գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները գերազանցում են սովետական իշխանության անցած տարիներին այս բնագավառում արված կապիտալ ներդրումների ծավալը: 1965 թվականի համեմատությամբ, 1979 թվականին գյուղատնտեսական հողահանդակների 100 հեկտարի հաշվով մսի արտադրությունն ավելացավ 87, կաթինը՝ 43 տոկոսով, ձվինը՝ մոտ 3 անգամ: Նույն տարիներին հացահատիկի բերքն ավելացել է 84 տոկոսով, ծխախոտինը՝ 34, բանջարեղենինը՝ 48, խաղողինը՝ 47 տոկոսով:

Հայաստանի գյուղատնտեսությունն այսօր ներկայացնում են տնտեսապես ամուր, նյութատեխնիկական հզոր բազայով զինված, բարձր ագրիկուլտուրա ունեցող բազում կոլտնտեսություններն ու սովխոզները: Դրանք հողագործական ու անասնապահական մթերքներ արտադրող մասնագիտացված արդի կոմպլեքսներ են, դա մի արտադրություն է, ուր հետևողականորեն զարգանում են միջտնտեսային կոոպերատիվ կապերն ու ագրոարդյունաբերական ինտեգրացիան, ուր գործադրվում է ժամանակակից առաջավոր տեխնոլոգիան, հետևողականորեն ծավալվում են մեքենայացման, քիմիացման ու մելիորացման աշխատանքներ:

Հայաստանի սոցիալիստական գյուղն այսօր բնութագրվում է իր տնտե-

նական, սոցիալական, կուլտուրական հարատև զարգացմամբ ու վերափոխմամբ։

Հայաստանի գյուղատնտեսության վերելքի, նրա որակական նոր մակարդակի ապահովման համար պատմական մեծ նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Հայկական ՍՍՀ ոռոգելի հողագործության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին», «Սևանա լճի բնական ռեսուրսները պահպանելու և ռացիոնալ օգտագործելու միջոցառումների մասին» որոշումների իրագործումը։ Մոտ մեկ միլիարդ խորանարդ մետր ջրի կուտակմամբ տասնվեց խոշոր ջրամբարների կառուցումը հնարավորություն կընձեռի շահագործման հանձնել նոր ոռոգելի հողատարածություններ, ավելացնելու ջրապահովվածությունը, կնպաստի դաշտերի բերքատվության շեշտակի բարձրացմանը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության կառավարության առանձնահատուկ հոգատարության առարկան է շրջակա միջավայրի պահպանությունը։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում կան բոլոր նախադրյալները օպտիմալ հարաբերակցություն սահմանելու հասարակական արտադրության, մարդու համակողմանի զարգացման և նրա համար բարենպաստ էկոլոգիական միջավայր ստեղծելու միջև։ Արտադրության, մարդու և միջավայրի սերտ դաշինքն է խնդրի լրիվ լուծման բանալին։ Հանրապետությունում արդեն դադարեցվել են մի շարք արտադրություններ, որոնք խիստ աղտոտում էին մթնոլորտը։ Բոլորովին վերջերս, արդեն արվածից բացի, դադարեցվեց կալցիում-կարբիդի արտադրությունը Երևանում։ Նախատեսվում է մոտակա տարիներին իրականացնել մի շարք միջոցառումներ Լոռվա կիրճի ջրային ու օդային ավազանի բարվոքման, Երևանի, Կիրովականի և այլ բնակավայրերի որոշ ձեռնարկություններում վնասակար արտանետումների դադարեցման հետ կապված տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման նպատակով։

Շրջակա միջավայրի պահպանության աշխատանքների համակարգում բացառիկ տեղ է գրավում Արփա—Սևան համաժողովրդական կառույցը, որը կարևոր նշանակություն ունի Հայաստանի ողջ էկոնոմիկայի համար։ Շահագործման է հանձնվում 48 կիլոմետրանոց եզակի թունելը։ Արփայի ջրերը վիթխարի լեռնաշղթայի տակով օգնության են հասնում Սևանին։ Աշխարհում նմանը չունեցող այս կառույցը իրոք հանրապետության, մեր ողջ երկրի ինժեներական մտքի և կառուցողական արվեստի ակնառու նվաճումն է։

Արփա—Սևան հիդրոտեխնիկական համալիրի կառուցումը Հայաստանի աշխատավորության նկատմամբ կոմունիստական կուսակցության և սովետական պետության հայրական հոգածության վառ վկայություններից է։ Այս ինտերնացիոնալ կառույցի իրականացումը հնարավոր դարձավ բոլոր եղբայրական հանրապետությունների անգնահատելի օգնության շնորհիվ։ Մեր հայրենիքի ժողովուրդների լենինյան մեծ բարեկամության հավերժական հուշարձան է Արփա—Սևանը։

Հայ ժողովուրդն իր բազմադարյան պատմության ընթացքում ստեղծել է գիտության, մշակույթի և հասարակական մտքի բազմաթիվ հիանալի ստեղծագործություններ, նրա ծոցից դուրս են եկել շատ գիտնականներ, փիլիսոփաներ, բանաստեղծներ ու նկարիչներ։ Սակայն, պատմական պայմանների հետևանքով, XX դար մուտք գործելիս իր մեծամասնությամբ նա անգրագետ էր։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունն ստեղծեցին բոլոր պայմանները Հայաստանի ո՛չ միայն սոցիալ-տնտեսական, այլև հոգևոր վերքերի շուտափույթ ապաքինման համար։ Երիտասարդ հանրապետության առաջին քայլերից մեկը եղավ Երևանի համալսարանի բացումը։ Նոր սոցիալիստական հայրենիքի մշակույթի զարգացման գործին ակտիվորեն ներգրավվեցին մեր պոեզիայի նահապետ Հ. Թումանյանը, ճարտարապետ Ա. Թամանյանը, նկարիչ Մ. Սարյանը, բանաստեղծ Ա. Իսահակյանը, կոմպոզիտոր Ա. Սպենդիարյանը, գիտնականներ Հ. Աճառյանը, Մ. Աբեղյանը, Հ. Մանանդյանը, դերասաններ Վ. Փափազյանը, Հ. Ներսիսյանը և մշակույթի այլ գործիչներ, գիտատեխնիկական մտքի ներկայացուցիչներ։



Կուսակցության կուլտուրական ծրագրի հաջող իրագործման շնորհիվ Հայաստանում, ինչպես և ողջ երկրում, բուռն կերպով զարգացավ նոր սոցիալիստական կուլտուրան, ծաղկեց ժողովրդի հոգևոր կյանքը, տեղի ունեցավ աշխատանքի ու կուլտուրայի պատմական հանդիպումը։ Կուլտուրան թափանցեց աշխատավորների հոծ զանգվածների խորքը՝ գտնելով իր իսկական կիրառողին և միաժամանակ՝ ստեղծողին։

Եթե նախահեղափոխական Հայաստանում կար ընդամենը յոթ միջնակարգ և վեց ոչ լրիվ միջնակարգ դպրոց, ապա այսօր մեր հանրապետությունում գործում են 1520 հանրակրթական դպրոց և 98 պրոֆտեխուսումնարան, որոնց սովորողների թիվը գրեթե հավասար է հանրապետության 1920 թվականի բնակչության թվին։ Եթե այն ժամանակ ոչ մի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություն չկար, ապա այժմ 13 բուհերում և 65 տեխնիկումներում սովորում է ավելի քան 112 հազար մարդ, ըստ էության՝ ժողովրդական տնտեսության ու մշակույթի բոլոր ճյուղերի ապագա մասնագետներ։ Եթե նախկինում մեր քաղաքներում բարձրագույն կրթություն ունեցողներին, ինչպես ասում են, կարելի էր մատների վրա հաշվել, ապա այժմ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված յուրաքանչյուր հազար մարդուց 136-ը բարձրագույն կրթություն ունի։ Եթե նախկինում մեզ մոտ չկար ոչ մի գիտական հաստատություն, ապա այժմ գործում են 110-ից ավելի գիտահետազոտական ինստիտուտներ ու հաստատություններ, որտեղ աշխատում են ավելի քան 18 հազար գիտաշխատողներ։

Սովետական Հայաստանն իրավամբ անվանում են մեծ գիտության հանրապետություն։ Մեր գիտությունների ակադեմիայի տասհազարանոց կոլեկտիվը, որը գլխավորում է ականավոր գիտնական, սոցիալիստական աշխատանքի կրկնակի հերոս, ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը, ժամանակակից գիտական մտքի շատ ուղղությունների զարգացման գործում հիանալի հաջողությունների է հասել։ Հանրապետության գիտության զարգացման ասպարեզում խոշոր ավանդ են ներդրել ու ներդնում բուհերում և ճյուղային գիտահետազոտական հիմնարկություններում աշխատող գիտնականները։ Հայ անվանի գիտնականների աշխատությունները, հայտնագործություններն ու հետազոտությունները կարևոր դեր են խաղացել գիտատեխնիկական առաջընթացի բարդ խնդիրները լուծելիս։

Մեր վերածնված ժողովրդի ստեղծագործ մտքի վսեմ դրսևորումները վառ կերպով արտահայտվեցին նրա նոր, բովանդակությամբ սոցիալիստական, ոգով ինտերնացիոնալիստական, ձևով ազգային, կուսակցականությամբ ու ժողովրդայնությամբ տոգորված կուլտուրայի աննախադեպ ծաղկմամբ։

Հեղափոխական վեհ գաղափարների և մարդասիրական իդեալների լենինյան դարաշրջանը պետք է առաջ քաշեր և առաջ քաշեց մի շարք խոշոր արվեստագետների, որոնց ստեղծագործությունը հայ ժողովրդի գեղարվեստական զարգացման պրոցեսում դարձավ որակական նոր առաջընթաց քայլ։ Ե. Չարենցը, Մ. Սարյանը, Ա. Թամանյանը, Ա. Սպենդիարյանը, Ա. Խաչատրյանը իրենց հիանալի ստեղծագործություններով հավաստեցին վերածնված հայրենիքի կյանքը, արևային նորը։

Ժողովրդի ծոցից ելած տաղանդավոր գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, ճարտարապետների, թատրոնի և կինոյի գործիչների մի մեծ ջոկատ այսօր իր ստեղծագործություններով հաջողությամբ զարգացնում ու հարստացնում է մեր նոր արվեստը՝ սոցիալիստական ռեալիզմի արվեստը։

Սոցիալիստական ազգերի ու ազգությունների ծաղկման ու մերձեցման օրինաչափ պրոցեսում կարևորագույն նշանակություն ունի սովետական ժողովուրդների հոգևոր մշակույթների փոխհարստացումը։ Մեր արդի կյանքի բնորոշ հատկանիշներն են դարձել տարբեր ժողովուրդների մշակույթի օրերի կազմակերպումը, հյուրախաղերի և համերգային ծրագրերի, ցուցահանդեսների փոխանակումը, ազգային մշակույթների ականավոր գործիչների հոբելյանների նշումը համամիութենական մասշտաբով։ «Սասունցի Դավիթ» էպոսի, Սայաթ-Նովայի, Հ. Թումանյանի, Կոմիտասի, Ա. Իսահակյանի, Գ. Սունդուկյանի, Ե.

Չարենցի, Դ. Դեմիրճյանի, Մ. Նալբանդյանի, Մ. Սարյանի, Դավիթ Անհաղթի և մյուսների հոբելյանների բարձր մակարդակով կազմակերպումն ընդարձակեց սովետական մարդկանց իմացության շրջանակները, նրանց սեփականությունը դարձրեց հայ ժողովրդի զավակների հոյակերտ ստեղծագործությունները։ Նույն սիրով Հայաստանում անցկացվեցին Պուշկինի, Տոլստոյի, Բրյուսովի, Շոլոխովի, Ռուսթավելու և Ճավճավաձեի, Տիչինայի, Ախունդովի և Վուրղունի, Աբայի, Նավոյիի, Իբն-Սինայի և Սովետական Միության ժողովուրդների կուլտուրաների շատ այլ նշանավոր գործիչների հոբելյանները։

Մեր մեծ նվաճումն է նաև այն, որ հանրապետությունն այսօր ծածկված է թատրոնների, համերգասրահների, կինոթատրոնների, գրադարանների, թանգարանների, երաժշտական, նկարչական, պարարվեստի դպրոցների և ուսումնարանների խիտ ցանցով, ստեղծված են բոլոր պայմանները աճող սերնդի գեղագիտական ու ֆիզիկական դաստիարակության համար. ամենուրեք լայնորեն զարգացած է մասսաների գեղարվեստական ինքնագործունեությունը։

Հանրապետության հոգևոր կյանքի ծաղկումը բնորոշվում է նաև գրատպության, մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության բուռն զարգացմամբ։ Մեր հրատարակչությունները յուրաքանչյուր տարի լույս են ընծայում շուրջ 1100 անուն գիրք՝ գրեթե 10,5 միլիոն օրինակ ընդհանուր տպաքանակով։ Այժմ մեզ մոտ հրատարակվում են 83 թերթ և 89 ամսագիր։ Հանրապետության գրեթե ողջ բնակչությունը հնարավորություն ունի այսօր դիտելու հանրապետական ու կենտրոնական հեռուստահաղորդումները։

Սոցիալ-տնտեսական զարգացման և կուլտուրական շինարարության լենինյան գաղափարների մարմնավորման, ժողովրդի կացութաձևում խորագույն վերափոխումների, նրա ճակատագրի պատմական արմատական շրջադարձի պսակը եղավ նոր անհատի ծնունդը, նոր տիպի մարդու, նոր հասարակության՝ գաղափարապես համոզված կերտողի ծնունդը, որին ներհատուկ են աշխատանքային և սոցիալ-քաղաքական ակտիվության բարձր մակարդակը, նվիրվածությունը կոմունիստական իդեալներին, ընկերասիրության, կոլեկտիվիզմի, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի, սոցիալիստական հայրենիքի նկատմամբ ջերմ սիրո զգացմունքները։

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հայոց հողի վրա հեղափոխական վերափոխումների ողջ վաթսունամյա պատմությունը նաև նոր անհատի կազմավորման, սովետական բնավորության ձևավորման պատմությունն է։

Մարդկության պատմության մեջ առաջին անգամ հենց սոցիալիզմն էր, որ արտադրության բարձրագույն նպատակը հռչակեց մարդկանց պահանջմունքների առավել լրիվ բավարարումը։ Մեր հանրապետությունում, ինչպես և ողջ երկրում, մշտապես բարելավվում են մարդկանց կյանքի, աշխատանքի, կենցաղի պայմանները։ Միայն վերջին տասնամյակի ընթացքում բնակչության ռեալ եկամուտներն աճել են գրեթե 1,4 անգամ։ Հանրապետության բնակչությունը նույն ժամանակամիջոցում սպառման հանրային ֆոնդերից ստացել է հսկայական գումարի հասնող՝ ավելի քան 8 միլիարդ ռուբլու վճարումներ ու արտոնություններ։ 1,8 անգամ ավելացել է մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը։

Աննախադեպ թափով ծավալվում է բնակարանների, կոմունալ-կենցաղային օբյեկտների, հիվանդանոցների, պոլիկլինիկաների, առողջարանների և այլ բուժհիմնարկությունների շինարարությունը։ Բնակարան ստանալու քաղաքացիների իրավունքը մեզ մոտ բարձրացված է սահմանադրական աստիճանի։ Միայն վերջին տասը տարվա ընթացքում շահագործման են հանձնվել բնակելի տներ՝ 12 միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով։

Բնակչության կուլտուր-կենցաղային բարձր մակարդակի վկայությունն է և այն, որ այժմ հանրապետությունում 100 ընտանիքին ընկնում է ավելի քան 80 հեռուստացույց, 100 սառնարան և կենցաղային այլ սարքեր ու մեքենաներ։ Նյութական բարեկեցության անշեղ վերելքը, բնակկենցաղային պայմանների և առողջապահության ողջ գործի բարելավումը նպաստեցին բնակչության արագ



աճին, կյանքի միջին տևողության ավելացմանը։ 1920 թվականին հանրապետության բնակչությունը կազմում էր 720 հազար մարդ, իսկ այժմ 3 միլիոնից ավելի է։

Հանրապետության հարաճուն մասշտաբներով իրականացվող կապիտալ շինարարության նպատակն է սոցիալական ինֆրաստրուկտուրայի մշտական զարգացումն ու կատարելագործումը։ Հանրապետությունն այժմ պատած է երկաթուղիների և ավտոճանապարհների, կապի և էլեկտրահաղորդագծերի խիտ ցանցով։ Բնակչության համար ստեղծված են ժամանակակից կոմունալ հարմարություններ, մշտապես ամրապնդվում է ծառայության ոլորտի նյութատեխնիկական բազան։ Օրերս գործարկվեցին Մեղրի—Քաջարան ճանապարհը, Երևանի օդանավակայանի առաջին հերթը և շատ այլ օբյեկտներ։ Շուտով շահագործման կհանձնվի Երևանի մետրոպոլիտենը։

Սովետական սոցիալիստական Հայաստանը փարոս է դարձել ճակատագրի կամքով աշխարհով մեկ սփռված հայության համար։ Արտասահմանյան շատ երկրներից նորոգ հայրենիք եկան աշխատավոր հայերի լայն զանգվածներ։ Այդ պրոցեսն սկսվեց հանրապետությունում սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերից։ Անցած տասնամյակներում ավելի քան 200 հազար մարդ վերադարձավ նախնյաց հայրենիքը։ Լինելով հիանալի աշխատավորներ, նրանք ակտիվորեն ներգրավվեցին սոցիալիստական և կոմունիստական շինարարության մեջ։ Նրանցից շատ ու շատ առաջավոր բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության ներկայացուցիչների անունները լայնորեն հայտնի են հանրապետությունում և նրա սահմաններից դուրս։

Տարեցտարի ընդլայնվում են մեր մշակութային կապերը սփյուռքահայության հետ։ Հարյուր հազարավոր սփյուռքահայ իսկական հայրենասերների համար միասնական բազմազգ սոցիալիստական պետության՝ Սովետական Միության մեջ ապրող ու ծաղկող Սովետական Հայաստանը, ռուս մեծ ժողովրդի, սովետական երկրի բոլոր ժողովուրդների հետ հայ ժողովրդի բարեկամությունը մեր ժողովրդի իրողություն դարձած երազանքն է իր սուվերեն պետականության, ազգային վերածննդի և սոցիալական ազատագրության մասին, ժողովուրդների հետ իսկական բարեկամության մասին։

Ամփոփելով վաթսուն տարում ժողովրդական մասսաների կատարած մեծ ստեղծարար աշխատանքի արդյունքները, անկարելի է չհիանալ փառապանծ բանվոր դասակարգի սխրագործությամբ, որը նոր կյանքի կառուցման բոլոր էտապներում հանդես է գալիս որպես վերածնության և նորացման առաջատար ուժ։ Լինելով հանրապետության ինդուստրիալ հզորության, նրա հիմնական նյութական հարստությունների ստեղծողը, նա այսօր էլ գտնվում է կուսակցության հոյակապ կանխագծումների կենսագործման պայքարի առաջին շարքերում, ստեղծագործական նախաձեռնության, աշխատանքային արիության և կազմակերպվածության օրինակ ցույց տալով նորի, առաջավորի հաստատման գործում։ Այսօր հանրապետության բանվոր դասակարգը ներկայացնում են քաղաքականապես հասուն, կրթված, տեխնիկապես գրագետ, բարձր որակավորում ունեցող, հասարակականորեն ակտիվ հարյուր հազարավոր մարդիկ։ Նրա խանդավառությունը, եռանդը, քաղաքական ակտիվությունը, հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման գործում, լավագույն արդյունքների հասնելու ձգտումը նյութականանում են կոմունիստական շինարարության նոր նվաճումների մեջ։

Չի կարելի չհպարտանալ մեր հիանալի կոլտնտեսային գյուղացիության, պետական տնտեսությունների բանվորների, գյուղի բոլոր աշխատավորների մեծագործություններով։ Նրանց համառ աշխատանքի շնորհիվ է, որ նախկին աղուտներում, ամայի քարքարուտներում ծաղկել են պտղատու և խաղողի այգիները, նրանց հայրենանվեր աշխատանքով է ստացվում առատ բերք, աճում անասնապահության մթերատվությունը, ապահովվում գյուղի անշեղ վերելքն ու սոցիալական առաջընթացը։

Մեր մտավորականությունը բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության հետ միասին պայքարել է առաջընթացի յուրաքանչյուր քայլի, սոցիալիստական ու կոմունիստական շինարարության ամեն մի հաջողության

համար: Նա այժմ էլ անսահման նվիրումով է կատարում իր ամենօրյա մեծ ու ազնիվ գործը՝ իր նշանակալի ավանդն է մուծում երիտասարդության ուսուցման ու դաստիարակման, առողջապահության, գիտության ու տեխնիկայի զարգացման գործում, ստեղծում գրականության և արվեստի արժեքավոր երկեր:

Մեր կանայք նոր հասարակության կառուցման բոլոր փուլերում եղել են կոմունիզմի համար մղվող պայքարի ակտիվ մասնակիցներ, նյութական ու հոգևոր արժեքների խանդավառ ստեղծողներ: Աճում է ավագ սերնդի արժանավոր փոխարինողը՝ մեր երիտասարդությունը: Շարունակելով հայրերի գործը, նա այսօր համառորեն տիրապետում է գիտելիքներին, յուրացնում կուտակված հարուստ փորձը, հանուն սիրելի հայրենիքի՝ անձնուրաց աշխատում կոմունիզմի կառուցման բոլոր բնագավառներում:

Մեր ժողովուրդը խորապես գիտակցում է, որ մենակ, առանց եղբայր ժողովուրդների և, ամենից առաջ՝ ռուս ժողովրդի մեծ ու բազմակողմանի օգնության երբեք չէր կարողանա իր հողում այդքան արագ և այդպիսի հաջողությամբ իրականացնել սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումներ, հասնել տնտեսական ու կուլտուրական շինարարության բարձունքների: «Սովետական Հայաստանի պատմական փորձը,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— կրկին ու կրկին համոզում է, որ ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ոչ թե ազգային պարփակման ու մեկուսացման ուղիներով, այլ սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների եղբայրական ընտանիքում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ զարգացման շնորհիվ»:

Անսահման են ռուս մեծ ժողովրդի նկատմամբ հայ ժողովրդի, մեր երկրի բոլոր ժողովուրդների ու ազգությունների տածած ջերմ սերը և երախտագիտության զգացմունքները: Սովետական ժողովուրդների անխախտ եղբայրական բարեկամությունը, նրանց տնտեսական ու կուլտուրական սերտ կապերը, համակողմանի համագործակցությունն ու փոխօգնությունը նոր ուժով են դրսևորվում զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ ինտեգրացման պրոցեսը տեղի է ունենում նյութական ու հոգևոր կյանքի բոլոր ոլորտներում: Երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսը միլիոնավոր թելերով միասնական օրգանիզմի մեջ է շաղկապում բոլոր հանրապետությունների արտադրամասերը: Այդ բանի խոր գիտակցմամբ աշխատավորական Հայաստանը ջանում է օրըստօրե բազմապատկել իր ավանդը երկրի տնտեսական և ինտելեկտուալ կարողությունն ամրապնդելու գործում, իր լուման մուծել սոցիալիստական ու կոմունիստական հասարակության կառուցման պատմական փորձի մշակման խնդրում:

Ոգևորված ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումներով՝ Սովետական Հայաստանի աշխատավորները, ինչպես և բոլոր սովետական մարդիկ, անձնուրաց պայքարել են կոմունիստական ստեղծարար աշխատանքում ամենաբարձր արդյունքների համար: Հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման հնգամյա պլանի կատարման վերաբերյալ նախնական տվյալները վկայում են, որ Սովետական Հայաստանը հաջողությամբ նվաճել է կուսակցության XXV համագումարի կանխանշած էկոնոմիկայի զարգացման, ինչպես նաև գիտության, կուլտուրայի հետագա վերելքի, աշխատավորների բարեկեցության բարձրացման սահմանագծերը:

Հանրապետության ազգային եկամուտը՝ պլանով նախատեսված 38 տոկոսի դիմաց կաճի ավելի քան 41 տոկոսով, ժողովրդական սպառման արդյունաբերական արտադրանքի թողարկումը՝ պլանով նախատեսված 46 տոկոսի դիմաց ավելի քան 52 տոկոսով: Արդյունաբերական արտադրանքի ամբողջ ծավալի աճը կապահովվի հնգամյա առաջադրանքի վերին սահմանագծի մակարդակով: Պետական որականիշով արտադրանքի արտադրության ծավալը հնգամյակի տարիներին մեծացավ ավելի քան 4 անգամ: Գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալի աճը կկազմի 24 տոկոս: Պետական կապիտալ ներդրումների իրացումը 9-րդ հնգամյակի համեմատությամբ կավելանա 17,4 իսկ հիմնական ֆոնդերի գործարկումը՝ 40 տոկոսով:

Իրականացված է աշխատավորների բնակկենցաղային պայմանների, ա-



ռողջության պահպանման գործի բարելավման և բարեկեցության բարձրացման ընդարձակ ծրագիրը:

Արտադրաուժերի արագ զարգացման խնդիրները լուծելիս Հայաստանի կոմկուսը հենվել և հենվում է սոցիալիստական էկոնոմիկայի կառավարման ՍՄԿԿ-ի մշակած սկզբունքների և, ամենից առաջ՝ քաղաքական ու տնտեսական ղեկավարման միասնության սկզբունքի վրա: Ժողովրդական տնտեսության վերելքի նախատեսված միջոցառումների կոմպլեքսն իրականացնելով՝ նա միաժամանակ չթուլացող ուշադրություն է նվիրել մասսաների հետ տարվող քաղաքական, գաղափարախոսական ու դաստիարակչական աշխատանքի բարելավմանը: Հետևողական պայքար ծավալվեց պետական, պլանային և աշխատանքային կարգապահության ըստ ամենայնի ամրապնդման համար, պայքար մեր կյանքում եղած ամեն կարգի բացասական դրսևորումների դեմ:

Տնտեսության ղեկավարման մակարդակի հետագա բարձրացման և քաղդաստիարակչական աշխատանքի բարելավման նպատակով հանրապետության կուսակցական կազմակերպության հետևողական գործունեությունը վառ կերպով արտացոլվեց համամիութենական սոցիալիստական մրցությունում աշխատավորական Հայաստանի տարած խոշոր հաղթանակում: Մրցության արդյունքներով տասներորդ հնգամյակի անցած բոլոր չորս տարիներին Սովետական Հայաստանը հաղթող ճանաչվեց և արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին: Ձեռք բերած հաջողությունների առթիվ հանրապետության գյուղատնտեսության աշխատավորներին, ատոմային էլեկտրակայանի մեր պանծալի շինարարներին երկու անգամ շնորհավորեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևը:

Հայաստանի կուսակցական կազմակերպությունը իր խնդիրն է համարում այսուհետ ևս անշեղորեն իրականացնել կուսակցության տնտեսական քաղաքականությունը, ապահովել ժողովրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի բոլոր ճյուղերի հետագա դինամիկ զարգացումը, հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, կառավարման մակարդակի վերելքը, տնտեսական մեխանիզմի բարելավումը, ամրապնդել կարգապահությունը, կազմակերպվածությունն ու կարգուկանոնը մեր կենսագործունեության բոլոր ոլորտներում, հետևողականորեն վերացնել մեր աշխատանքում դեռևս եղած թերությունները:

Ըստ ամենայնի կատարելագործելով գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական գործունեությունը ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշման լույսի ներքո, մեր կուսակցական կազմակերպությունն այսուհետ ևս կբարելավի մասսաների հետ տարվող աշխատանքի ձևերն ու մեթոդները, կբարձրացնի բնակչության բոլոր խավերին կոմունիստական բարձր գաղափարայնության, սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով, մեր տնտեսական և հոգևոր առաջադիմությանը խանգարող ամեն ինչի նկատմամբ անհաշտության ոգով դաստիարակելու արդյունավետությունը:

Այսօր մեր առաջնային նպատակն է ամբողջովին կատարել հնգամյակի ավարտական տարվա սոցիալիստական բարձր պարտավորությունները, ամուր հիմք ստեղծել տասնմեկերորդ հնգամյակի հաջող մեկնարկի համար, լայն թափ հաղորդել ՍՄԿԿ XXVI համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությանը:

Այդ խնդիրների իրականացմանն են մեզ նպատակամղում ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թվականի հոկտեմբերյան պլենումի որոշումները, պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի վառ, ծրագրային ճառը, որտեղ, մարքս-լենինյան խոր վերլուծության հիման վրա, ընդհանրացված է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների և 10-րդ հնգամյակի առաջադրանքների կատարման ուղղությամբ կուսակցության և սովետական ժողովրդի բազմակողմանի գործունեությունը, տրված է ձեռք բերված արդյունքների քաղաքական գնահատականը, առաջ են քաշված

երկրի հետագա տնտեսական զարգացման և սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման մի շարք խոշոր պրոբլեմներ, նշված են դրանց լուծման կոնկրետ միջոցները և մեր աշխատանքի գլխավոր ուղղությունները:

Փառապանծ գործեր են սպասում հանրապետության աշխատավորներին առաջիկա հնգամյակում: ՍՄԿԿ առաջիկա XXVI համագումարը մեր կուսակցության ու ժողովրդի առջև կբացի նոր հորիզոններ, կորոշի կոմունիստական շինարարության առաջիկա փուլում մեր պայքարի ստրատեգիան ու տակտիկան: Է՛լ ավելի կաճեն մեր ստեղծագործ աշխատանքի մասշտաբները ժողովրդական տնտեսության մեջ, կշարունակեն զարգանալ գիտությունն ու մշակույթը, ավելի կգեղեցկանան մեր քաղաքներն ու գյուղերը, կբարձրանա ժողովրդի բարեկեցությունը:

Սովետական Հայաստանի անցած փառապանծ 60-ամյա ուղին դառնում է պատմության սեփականությունը, տարեգրության մեջ մտնում որպես նոր, երջանիկ կյանքի ոգեկոչված ժողովրդի պայքարի և ստեղծագործ աշխատանքի հերոսական դարաշրջան, ժողովուրդ, որի մեծագործություններն ու խիզախումը հանուն սոցիալիզմի ու կոմունիզմի պսակված են հանրապետության դրոշի վրա շողշողացող հայրենիքի բարձր պարգևներով՝ Լենինի երեք շքանշանով, Հոկտեմբերյան հեղափոխության և Ժողովուրդների բարեկամության շքանշաններով:

Կուսակցության XXIV և XXV համագումարների մշակած լենինյան արտաքին քաղաքական կուրսի իրականացման, Սովետական Միության, սոցիալիստական համագործակցության երկրների բազմակողմանի գործունեության շնորհիվ 70-ական թվականներին բարելավվեց միջազգային իրադրությունը: Սակայն վերջին ժամանակներս իմպերիալիզմի ագրեսիվ ուժերը այս դրական պրոցեսին հակադրեցին մի քաղաքականություն, որը թելադրված է ժամանակակից աշխարհի ռեալ իրադրության՝ սոցիալիզմի դիրքերի ամրապնդման, ազգային-ազատագրական շարժման հաջողությունների, ազատասեր դեմոկրատական ուժերի աճի հետ հաշվի չնստելու անհիմն ցանկությամբ: Նրանք տենդագին փորձեր են ձեռնարկում տորպեդահարելու լարվածության թուլացումը, աշխարհի նորացման օբյեկտիվ պրոցեսը:

Ստեղծված բարդ միջազգային իրադրությունում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, սովետական պետությունը ցուցաբերում են հիրավի լենինյան հաստատակամություն և սկզբունքայնություն՝ պաշտպանելով ու անշեղորեն կենսագործելով խաղաղության ամրապնդման քաղաքականությունը:

Կուսակցությունը երկիրն առաջնորդում է կառուցման ու խաղաղության լենինյան հաստատուն կուրսով: Հանրապետության աշխատավորները, ինչպես և բոլոր սովետական մարդիկ, սերտորեն համախմբված հարազատ լենինյան կուսակցության շուրջը, միահամուռ հավանություն են տալիս ՍՄԿԿ և սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականությանը, այն արդյունավետ ու նպատակամղված գործունեությանը, որ ծավալել են ՍՄԿԿ Կենտկոմը, նրա քաղբյուրոն՝ մեծ Լենինի գործի հավատարիմ շարունակող, արդիականության ականավոր քաղաքական ու պետական գործիչ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի գլխավորությամբ:

Սովետական ժողովուրդը լի է լավատեսությամբ և վստահ է, որ կոմունիզմի իդեալների վերջնական հաղթանակի համար մղվող հերոսական պայքարը կպսակվի հաջողությամբ: Վստահ է, որովհետև նրան դեպի այդ բաղձալի նպատակն է առաջնորդում լենինյան կուսակցությունը՝ մեր դարաշրջանի միտքը, պատիվը և խիղճը: Պատմությունը գործում է հօգուտ կոմունիզմի:

Սովետական Հայաստանի աշխատավորները երջանիկ են ու հպարտ, որ իրենց աշխատանքով արժանի ավանդ են ներդնում մեր բազմազգ սոցիալիստական պետության ամրապնդման գործում, որ պայքարի ու կառուցման այդ ուղին անցնում են սովետական ժողովուրդների հետ ուս-ուսի՝ լենինյան մեծ կուսակցության առաջնորդությամբ, Հոկտեմբերի ամենահաղթ դրոշի ներքո:

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԸ՝ ԹՎԵՐՈՒՄ

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը ՍՄԿԿ-ի մարտական ջոկատներից է, որի պատմությունն անխզելիորեն կապված է ՍՄԿԿ-ի հերոսական պատմության հետ: ՀԿԿ-ն կազմավորվել է 1920 թ. հունվարին: Նրա անմիջական ղեկավարությամբ Հայաստանում 60 տարի առաջ հաստատվեցին սովետական կարգեր:

Հայաստանի կոմկուսն իր կազմավորման ժամանակից ի վեր, անցած 60 տարիների ընթացքում քանակապես աճել և որակապես ամրապնդվել է: Նա իր I համագումարի ժամանակ ուներ ընդամենը 6012 անդամ, իսկ ներկայումս միավորում է ավելի քան 164 հազար կոմունիստների, որոնց երկու երրորդից ավելին աշխատում է նյութական բարիքների արտադրության բնագավառում:

60 տարում Հայաստանի կոմկուսի քանակական աճն ունի հետևյալ պատկերը (յուրաքանչյուր տասներորդ տարվա հունվարի 1-ի դրությամբ).

| | ՍՄԿԿ անդամներ | ՍՄԿԿ անդամության թեկնածուներ | Ընդամենը կոմունիստներ |
|---|---|---|---|
| 1921 | 2191 | 3141 | 5332 |
| 1930 | 7969 | 4310 | 12279 |
| 1940 | 22437 | 10343 | 32780 |
| 1950 | 54413 | 5926 | 60339 |
| 1960 | 76835 | 3515 | 80350 |
| 1970 | 122184 | 5136 | 127320 |
| 1980 | 154004 | 6433 | 160437 |
| Առ 1-ը հոկտեմբերի 1980 | 156991 | 6994 | 163985 |

Այսպիսով, Հայաստանի կոմկուսի շարքերը 60 տարիների ընթացքում 5332 մարդուց աճել և հասել է 163985 մարդու, այսինքն՝ ավելի քան 30 անգամ: Հանրապետության կոմկուսի շարքերի աճը վառ կերպով արտահայտում է կոմունիստական կուսակցության հեղինակության աննախադեպ բարձրացումը, նրա նկատմամբ մասսաների անսահման վստահությունը:

## ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹՅՈՒՆ ՍՄԿԿ ՇԱՐՔԵՐԸ

ՍՄԿԿ-ի անդամության հարցը կուսակցական շինարարության արմատական հարցերից է, քանի որ կուսակցության բարձր մարտունակությունը, ամրությունը ամենից առաջ որոշվում են նրա անդամների որակական կազմով:

Որպեսզի կուսակցության շարքերն ընդունվեն ավելի արժանավոր մարդիկ և ապահովվի կուսշարքերի անաղարտությունը, բացառվի կուսակցությանը խորթ և պատահական մարդկանց մուտքը, դեռևս 1917 թ. մարտին սահմանվեց միասնական կարգ, որով կուսակցության մեջ ընդունվողից պահանջվում էր ներկայացնել ՍՄԿԿ-ի երկու անդամի երաշխավորություն: Իսկ 1919 թվականից սահմանվեց թեկնածուական ստաժը:

Հետագա տարիներին կուսակցությունն իր շարքերի համալրումը կարգավորեց բանվորների, գյուղացիների, ծառայողների համար տարբեր պայմաններ սահմանելու միջոցով: ՍՄԿԿ շարքերն ընդունվող տարբեր կատեգորիայի մարդկանց համար սահմանվեցին տարբեր ժամկետի թեկնածուական ստաժ, տարբեր քանակի երաշխավորագրեր և այլն: ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակով վերացվեց այդպիսի տարբերության անհրաժեշտությունը, և 1939 թ. ՍՄԿԿ XVIII համագումարը սահմանեց բոլոր խավերի համար կուսակցության շարքերն ընդունվելու միասնական պայմաններ: Ընդ որում, ՍՄԿԿ շարքերն ընդունվելու գլխավոր սկզբունքը եղել և մնում է անհատական ընտրությունը:

Հայաստանի կուսակցական կազմակերպու-թյունը միշտ հատուկ ուշադրություն է նվիրել իր շարքերի համալրման գործին:

Վերջին տարիներին ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների սոցիալական կազմը բնութագրվում է հետևյալ տվյալներով (տոկոսային արտահայտությամբ).

| | Բանվորներ | Գյուղացիներ (կոլտնտեսականներ) | Ծառայողներ և սովորողներ |
|---|---|---|---|
| 1956—1958 | 31,4 | 27,5 | 40,1 |
| 1959—1961 | 32,5 | 23,5 | 44,0 |
| 1962—1965 | 35,8 | 15,4 | 48,8 |
| 1966—1970 | 46,3 | 11,1 | 42,6 |
| 1971—1975 | 57,7 | 8,2 | 34,1 |
| 1976—1979 | 61,4 | 7,5 | 31,1 |

Ինչպես տեսնում ենք աղյուսակից, բանվորների տեսակարար կշիռը ՍՄԿԿ անդամության թեկնածուների կազմում անշեղորեն աճում է: ՀԿԿ XXVI համագումարից հետո բանվորների ընդունելությունը շարունակում է ավելանալ: 1980 թվականի ինը ամիսների ընթացքում ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու է ընդունվել 4736 մարդ, որից բանվորներ են 3055-ը, կամ 64,5 տոկոսը:

ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների կազմում կոլտնտեսականների տեսակարար կշռի որոշ նվազումը բացատրվում է կոլտնտեսությունների մի մասի՝ սովխոզների վերածմամբ:

Գյուղատնտեսության տեխնիկական զինվածության շնորհիվ կուսակցության շարքերը ընդունվածների մեջ տարեցտարի աճում է տրակտորիստների, կոմբայնավարների և այլ մեխանիզատորների, ինչպես նաև գյուղատնտեսության մեջ աշխատող մասնագետների, իսկ ծառայողների կազմում՝ ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում աշխատող ինժեներատեխնիկական մտավորականության թիվը: Կոմունիստ ծառայողների ընդհանուր թվում մասնագետները տոկոսային արտահայտությամբ կազմել են.

| | | |
|---|---|---|
| 1956—1958 . . . | 66,5 | տոկոսը |
| 1959—1961 . . . | 68,8 | » |
| 1962—1965 . . . | 72,2 | » |
| 1966—1970 . . . | 74,7 | » |
| 1971—1975 . . . | 79,7 | » |
| 1976—1979 . . . | 88,2 | » |

Լենինյան կոմերիտմիությունը կուսակցության հավատարիմ օգնականն ու ռեզերվն է: Կուսակցության շարքերն անընդհատ համալրվում են լավագույն կոմերիտականների հաշվին:

ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների մեջ կոմերիտականների տեսակարար կշիռը համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում ունի հետևյալ պատկերը՝ տոկոսային հարաբերությամբ.

| | | | |
|---|---|---|---|
| 1962—1965 | թվականին | — 37,1 | տոկոս |
| 1966—1970 | » | — 36,9 | » |
| 1971—1975 | » | — 63,9 | » |
| 1976—1979 | » | — 74,2 | » |

## ՀԿԿ ԿԱԶՄԸ ԸՍՏ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԴՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԶԲԱՂՄՈՒՆՔԻ

Կոմունիստական շինարարության ընթացքում սովետական հասարակության սոցիալական կառուցվածքում տեղի են ունեցել արմատական փոփոխություններ: Ներկայումս մեր հասարակությունը բնութագրվում է դասակարգերի և աշխատավորական խավերի համերաշխությամբ, նրանց տնտեսական, սոցիալ-քաղաքական և գաղափարական շահերի միասնությամբ, կոմունիզմի կառուցման գործում նրանց ընդհանուր շահագրգռությամբ: Այդ իրողությունն իր արտահայտությունն է գտնում նաև կուսակցության սոցիալական կազմում:

Կուսակցության սոցիալական կազմի փոփոխությունները վերջին տարիների ընթացքում բնութագրում են հետևյալ տվյալները (տոկոսներով).



| | Առ 1-ը հունվարի 1950 թ. | Առ 1-ը հունվարի 1980 թ. |
|---|---|---|
| Ընդամենը կոմունիստներ | 100 | 100 |
| Այդ թվում՝ | | |
| բանվորներ | 24,3 | 39,6 |
| գյուղացիներ (կոլտնտեսականներ) | 32,8 | 18,4 |
| ծառայողներ և բոլոր մյուս խավերը | 42,9 | 42 |

Վերջին 30 տարիների ընթացքում բանվորների թիվը ՀԿԿ կազմում ավելացել է 48959 մարդով, իսկ նրանց տեսակարար կշիռը 24,3 տոկոսից հասել է 39,6 տոկոսի: Այդ ժամանակաշրջանում գյուղացիների տեսակարար կշիռը որոշ չափով նվազել է: Այդուհանդերձ ՀԿԿ կազմում նրանց բացարձակ թիվն ավելացել է 9682 մարդով:

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՆԵՐԻ ԿԱԶՄԸ ԸՍՏ ԿՐԹՈՒԹՅԱՆ

Սովետական իշխանության տարիներին հանրապետությունն աննախադեպ նվաճումներ է ձեռք բերել գիտության, ժողովրդական կրթության և կուլտուրայի զարգացման բնագավառում: Բնակչության հանրակրթական մակարդակի բարձրացմանը զուգընթաց, բնականաբար, զգալիորեն կատարելագործվել է նաև կոմունիստների մասնագիտական և հանրակրթական պատրաստականությունը: ՀԿԿ շարքերը համալրվել են բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցող մարդկանցով:

Բարձրագույն, թերի բարձրագույն և միջնակարգ կրթությամբ կոմունիստների տեսակարար կշիռը 1940 թ. 23,9 տոկոսից աճել և ներկայումս կազմում է 75,9 տոկոս, իսկ տարրական կրթություն ունեցողների թիվը 31,5 տոկոսից իջել է 7,8 տոկոսի:

Ներկայումս Հայաստանում կոմունիստների կեսն ունի մասնագիտական կրթություն: Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ կոմունիստների թիվը տարեցտարի աճում է: Այն բնութագրվում է հետևյալ կերպ.

| Առ 1-ը հունվարի | Ընդամենը կուսակցականներ՝ մասնագետ. կրթությամբ | Տոկոսներով՝ ընդհանուր թվի նկատմամբ |
|---|---|---|
| 1940 | 5805 | 17,7 |
| 1950 | 13576 | 22,5 |
| 1960 | 24449 | 30,4 |
| 1970 | 46000 | 36,1 |
| 1980 | 82200 | 51,2 |

Վերջին քառասուն տարիների ընթացքում ժողովրդական տնտեսության մասնագետ կոմունիստների թիվն աճել է 76395 մարդով կամ 14 անգամ: Ներկայումս յուրաքանչյուր չորրորդ ինժեները, տեխնիկը, գյուղատնտեսը, մանկավարժը, վեցերորդ բժիշկը կուսակցության անդամ է:

Կուսշարքերում մշտապես ավելանում է նաև գիտական աշխատողների թիվը: 1980 թ. հունվարի 1-ի տվյալներով 564 կոմունիստներ ունեն գիտության դոկտորի և 3168-ը՝ գիտության թեկնածուի կոչում:

## ԿԱՆԱՅՔ ՀԿԿ ԿԱԶՄՈՒՄ

Սովետական կանայք կոմունիզմի ակտիվ կառուցողներ են: Նրանք բեղմնավոր գործունեություն են ծավալում երկրի քաղաքական, տնտեսական ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում: Կանանց թիվը ՀԿԿ կազմում տարեցտարի աճում է, այդ են վկայում ստորև բերված տվյալները:

Կոմունիստ կանանց թիվը համապատասխան տարվա հունվարի 1-ի դրությամբ.

| Տարեթիվ | Քանակը թվով | Տոկոսներով՝ ընդհանուր թվի նկատմամբ |
|---|---|---|
| 1924 | 103 | 2,6 |
| 1930 | 615 | 5,0 |
| 1940 | 3125 | 9,5 |
| 1950 | 12378 | 20,5 |
| 1960 | 15956 | 19,9 |
| 1970 | 23473 | 18,4 |
| 1980 | 35.040 | 21,8 |

Վերջին քառասուն տարիների ընթացքում կանանց թիվը ՀԿԿ կազմում աճել է 31.915 մարդով կամ 12,3 տոկոսով, այսինքն՝ 1940 թ. 9,5 տոկոսից 1980 թ. հասել է 21,8 տոկոսի: Իսկ առանձին քաղաքային, շրջանային կուսկազմակերպություններում նրանց տեսակարար կշիռը կուսակցականների ընդհանուր թվում ավելին է, քան հանրապետական միջին մակարդակը: Այսպես, առ 1-ը հունվարի 1980 թ. Լենինականում կանայք կազմել են 27,4 տոկոսը, Սպանդարյանի շրջանում՝ 29,5, Սովետական շրջանում՝ 26,5, 26 կոմիսարների

անվան շրջանում՝ 25,1, Դիլիջան քաղաքում՝ 24,5, Մեղրու շրջանում՝ 24,3 տոկոս և այլն:

Կանայք ակտիվ մասնակցություն են ունենում նաև ընտրովի մարմիններում: Այսպես, ՀԿԿ XXVI համագումարի պատգամավոր էր ընտրվել 230 կին կամ 28,3 տոկոսը: Անընդհատ աճում է կանանց թիվը քաղկոմ-շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոների և կուսկոմիտեների կազմում:

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՆԵՐԻ ԿԱԶՄԸ ԸՍՏ ՍՏԱԺԻ, ՏԱՐԻՔԻ ԵՎ ԱԶԳՈՒԹՅԱՆ

ՀԿԿ շարքերում մեծ փոփոխություններ են կատարվել ըստ կուսակցական ստաժի: 1980 թ. հունվարի 1-ի դրությամբ կոմունիստներից 22597-ը կամ 14,7 տոկոսն ուներ մինչև 5 տարվա, 22352-ը կամ 14,5 տոկոսը՝ 5—10, 46829-ը կամ 30,4 տոկոսը՝ 10—20, 23339-ը կամ 15,2 տոկոսը՝ 20—30 տարվա, 38887-ը կամ 25,2 տոկոսը՝ 30 տարուց ավելի ստաժ:

1980 թ. հունվարի 1-ի դրությամբ ՀԿԿ կազմում հաշվվում էին՝

| | | | | |
|---|---|---|---|---|
| մինչև 1917 թ. ՍՄԿԿ-ի անդամ | | | 1 | մարդ |
| 1917—1920 թթ. | » | » | 125 | » |
| 1921—1929 թթ. | » | » | 1567 | » |
| 1930—1940 թթ. | » | » | 8814 | » |
| 1941—1945 թթ. | » | » | 17516 | » |
| 1946—1949 թթ. | » | » | 10905 | » |
| 1950—1959 թթ. | » | » | 23339 | » |
| 1960—1969 թթ. | » | » | 46829 | » |
| 1970—1979 թթ. | » | » | 44949 | » |

Այսպիսով, կոմունիստների մոտ 30 տոկոսն ընդունվել է ՍՄԿԿ շարքերը վերջին տասնամյակում:

Հետաքրքրական է նաև ՀԿԿ կազմն ըստ տարիքի, որը երևում է հետևյալ տվյալներից

| Կոմունիստների տարիքը | 1980 թ. հունվարի 1-ի դրությամբ | Տոկոսներով |
|---|---|---|
| Մինչև 21 տարեկան | 1088 | 0,7 |
| 21—25 » | 11008 | 6,9 |
| 25—30 » | 16795 | 10,5 |
| 31—40 » | 30599 | 19,1 |
| 41—50 » | 38979 | 24,3 |
| 51—60 » | 34878 | 21,7 |
| 60-ից բարձր | 27090 | 16,9 |

Կուսակցության մեջ երիտասարդության հոսքի աճի շնորհիվ վերջին տասնամյակի ընթացքում մինչև 30 տարեկան հասակ ունեցող կոմունիստների թիվն ավելացել է 15.086 մարդով և ներկայումս 160437 կոմունիստներից 28891-ը կամ 18,1 տոկոսն ունեն մինչև 30 տարեկան հասակ:

ՀԿԿ կազմում ըստ ազգության տեղի ունեցող փոփոխությունները բխում են ՍՄԿԿ վարած սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության և եղբայրության քաղաքականությունից: Հանրապետության կուսկազմակերպությունները, մեծ ուշադրություն նվիրելով հիմնական ազգության ներկայացուցիչների հաշվին իրենց շարքերի համալրմանը, դրա հետ մեկտեղ հոգում են, որպեսզի ՀԿԿ կազմում պատշաճ կերպով ներկայացված լինեն մյուս ազգությունների ներկայացուցիչները, որոնք հայերի հետ միասին աշխատում են հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում: Ներկայումս Հայաստանի կոմկուսն իր կազմում ընդգրկում է 43 ազգության ներկայացուցիչների, որոնցից հայեր են 149505 մարդ, ադրբեջանցիներ՝ 5765, ռուսներ՝ 2844, քրդեր՝ 552, ուկրաինացիներ՝ 457, հույներ՝ 349, ասորիներ՝ 256, հրեաներ՝ 147, բելոռուսներ՝ 71, վրացիներ՝ 66 և այլ ազգությունների՝ 425 մարդ:

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՆԵՐԻ ՏԵՂԱԲԱՇԽՈՒՄԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Կոմունիստական շինարարության ծրագրի իրականացումը, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը կուսկազմակերպություններից պահանջում են, որպեսզի նրանք կոմունիստների հիմնական ուժերը տեղաբաշխեն նյութական արտադրության ոլորտում և բարելավեն այդ գործը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում: Ներկայումս կուսակցության գլխավոր ուժերը կենտրոնացված են հասարակական կյանքի այդ վճռական տեղամասում: Թե ինչպես է իրականացվում կուսակցության այդ ցուցումը մեր հանրապետությունում, ցույց են տալիս ստորև նշված տվյալները.



| | Առ 1/1-66 թ. | Առ 1/1-71 թ. | Առ 1/1-80 թ. |
|---|---|---|---|
| Ժողովրդական տնտեսության մեջ զբաղված կոմունիստների ընդհանուր թիվը | 100358 | 118653 | 141799 |
| այդ թվում աշխատում են նյութական արտադրության ոլորտում | 67125 | 79223 | 93885 |
| | | | 66,2 տոկոս |
| որից՝ | | | |
| Արդյունաբերության և շինարարության մեջ | 29133 | 38482 | 51149 |
| Տրանսպորտում և կապում | 6306 | 6846 | 8511 |
| Գյուղատնտեսության մեջ | 25203 | 26796 | 27123 |
| Մթերումների, նյութատեխնիկական մատակարարման, առևտրի և հասարակական սննդի օբյեկտներում | 5094 | 5767 | 6212 |
| Արտադրության մյուս ճյուղերում | 1389 | 1332 | 1090 |
| Ոչ արտադրական ճյուղերում | 33233 | 39430 | 47914 |
| | | | 33,8 տոկոս |
| որից՝ | | | |
| Կուլտուրայի, առողջապահության, գիտության բնագավառներում | 20630 | 24649 | 30283 |
| Պետական մարմիններում, վարչատնտեսական ապարատում, կուսակցական և հասարակական կազմակերպություններում | 10315 | 11559 | 13654 |
| Այլ ճյուղերում աշխատողներ | 2288 | 3222 | 3977 |

Այսպիսով, վերոհիշյալ թվերը վկայում են, որ կուսակցականների մեծ մասը՝ 66 տոկոսը, զբաղված է նյութական արտադրության ոլորտում: Արդյունաբերության, տրանսպորտի, կապի և շինարարության բուռն զարգացման շնորհիվ զգալիորեն աճել է այդ բնագավառներում աշխատող կոմունիստների թիվը:

## ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Սկզբնական կուսակցական կազմակերպությունները կուսակցության հիմքն են: Չկա տնտեսական, քաղաքական մի խնդիր, որի լուծման գործում կուսակցությունը չհենվի իր սկզբնական կազմակերպությունների վրա:

Սկզբնական կուսկազմակերպությունների, նրանց արտադրամասային կազմակերպությունների և կուսխմբերի քանակական աճը երևում է ստորև բերված տվյալներից (համապատասխան տարվա հունվարի 1-ի դրությամբ).

| Տարեթվերը | Սկզբնական կուսկազմ. քանակը | Արտադրամասային կուսկազմ. քանակը | | Կուսխմբերի քանակը |
|---|---|---|---|---|
| | | ընդամենը | որից սկզբնականի իրավունքով | |
| 1923 | 474 | — | — | — |
| 1930 | 584 | — | — | — |
| 1940 | 1889 | — | — | — |
| 1950 | 3106 | — | — | — |
| 1955 | 3324 | 470 | 141 | 1207 |
| 1960 | 3464 | 873 | 198 | 1350 |
| 1965 | 2766 | 1265 | 540 | 2061 |
| 1970 | 4509 | 1780 | 760 | 2684 |
| 1975 | 4929 | 2250 | 1031 | 4305 |
| 1980 | 5336 | 2828 | 1297 | 5742 |

Աճել է այն կուսկազմակերպությունների թիվը, որոնք ունեն կուսկոմիտեներ: Եթե առ 1-ը հունվարի 1960 թ. ընդամենը կար 14 կուսկոմիտե, ապա ներկայումս դրանց քանակը հասել է 151-ի, որոնցից երեքին (Երևանի «Նաիրիտ», «Հայէլեկտրամեքենա» և «Հայ-

էլեկտրալույս» արտադրամիավորումներին) տրված է շրջկոմի իրավունքը:

Սկզբնական կուսկազմակերպությունների փոփոխությունները ըստ բնույթի ունի հետևյալ պատկերը (համապատասխան տարվա հունվարի 1-ի տվյալներով).

| | 1961 | 1971 | 1980 |
|---|---|---|---|
| Ընդամենը սկզբնական կուսկազմակերպություններ | 3531 | 4613 | 5336 |
| Որից՝ | | | |
| Արդյունաբերական ձեռնարկություններ | 445 | 588 | 677 |
| Կապի և տրանսպորտի | 215 | 246 | 279 |
| Շինարարական | 103 | 285 | 372 |
| Սովխոզներ | 90 | 293 | 451 |
| Կոլտնտեսություններ | 757 | 476 | 310 |
| Ուսումնական հաստատություններ | 551 | 922 | 1180 |
| Կուլտուր-լուսավորական | 92 | 105 | 118 |
| Բուժհիմնարկներ | 138 | 165 | 206 |
| Առևտրի և հասարակական սննդի | 193 | 209 | 215 |

Վերջին 20 տարիների ընթացքում սկզբնական կուսկազմակերպությունների քանակն աճել է 1805-ով, արտադրամասային կուսկազմակերպություններինը՝ 1938-ով, կուսխմբերինը՝ 4278-ով: Այս ամենը հնարավորություն է ընձեռել ուժեղացնել կուսակցական ազդեցությունը տնտեսական, կուլտուրական շինարարության և այլ տեղամասերի վրա:

Սկզբնական կուսկազմակերպությունները ըստ կոմունիստների թվի ունեն հետևյալ պատկերը (համապատասխան տարվա հունվարի 1-ի դրությամբ).

| | 1961 | | 1980 | |
|---|---|---|---|---|
| | բացարձակ թվերով | տոկոսներով | բացարձակ թվերով | տոկոսներով |
| Ընդամենը սկզբնական կուսկազմակերպություններ | 3531 | 100 | 5336 | 100 |
| Որից՝ | | | | |
| մինչև 15 կոմունիստ ունեցողներ | 1605 | 45,5 | 2500 | 46,8 |
| 15— 49 » » | 1640 | 46,4 | 2165 | 40,6 |
| 50— 100 » » | 210 | 6,0 | 470 | 8,8 |
| 101— 300 » » | 67 | 1,9 | 169 | 3,2 |
| 301—1000 » » | 9 | 0,2 | 28 | 0,6 |
| 1000-ից ավելի » » | — | — | 4 | — |

Հրապարակված տվյալները վկայում են, որ սակավաթիվ կուսկազմակերպությունների քանակը նվազում, իսկ նրանցում կոմունիստների թիվն ավելանում է:

Հայաստանի կոմկուսը, հանրագումարի բերելով սոցիալիզմի հաղթանակի և կոմունիզմի կառուցման համար մղած իր 60-ամյա պայքարի փառավոր արդյունքները, մոբիլիզացնում է կոմունիստների, հանրապետության աշխատավորների ողջ ուժերը՝ ձեռք բերած նվաճումները բազմապատկելու, տասներորդ հնգամյակը հաջողությամբ եզրափակելու, ՍՄԿԿ XXVI համագումարը և իր XXVII համագումարը արժանավայել գործերով դիմավորելու համար: Նա լենինյան կոմունիստական կուսակցության մեծ համաժողովին ընդառաջ է գնում իր շարքերի միասնությամբ ու համախմբվածությամբ, մեկ անգամ ևս հաստատում նրա մարտական ջոկատը լինելու իրավունքը:

Ա. Գ. ՋԱԼԻՆՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի կուսակցական միասնական տոմսերի և վիճակագրության սեկտորի վարիչ



# ԳՈՐԾԱՐԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ

Պ. Գ. ՍԱՖՅԱՆ
ՀԿԿ Սովետական շրջկոմի առաջին քարտուղար

ԸՆԹԱՑԻԿ ՏԱՐՎԱ ՀՈՒՆԻՍԻՆ Ջրվեժի «Արդկապ» գործարանը, ժամկետից կես տարի շուտ, կատարեց հնգամյակի պլանային առաջադրանքները: Դա ձեռնարկության կոլեկտիվի արտադրական ակնառու հաջողությունն էր նրա գոյության 20 տարվա ընթացքում: Անցած տարիներին, կուսկազմակերպության և դիրեկցիայի ծավալած հետևողական աշխատանքի շնորհիվ, այստեղ դաստիարակվել ու ձևավորվել է մի կուռ, միասնական կամքով ու նպատակներով համախմբված կոլեկտիվ, որն ունակ է լուծելու իր առջև ծառացած բոլոր արտադրական խնդիրները:

Թերթենք մայրաքաղաքի այդ արդյունաբերական ձեռնարկության տարեգրության էջերը, և մեր առջև կհառնեն նրա կոլեկտիվի հայրենանվեր լավ գործերը: Գործարանը հիմնադրվել է 1959 թ. Ջրվեժ գյուղի հյուսիս-արևելյան տարածքում գտնվող նախկին մեքենատրակտորային կայանի արհեստանոցի շենքում: Հաջորդ տարվա սկզբներին այստեղ աշխատում էր ընդամենը 15 երիտասարդ բանվոր, որոնք զբաղված էին միայն առանձին հեռախոսային ապարատների նորոգումներով:

Երբեմնի փոքրիկ գործարանը տարիների ընթացքում աստիճանաբար մեծացավ, հզորացավ և այսօր դարձել է արդյունաբերական ժամանակակից խոշոր ձեռնարկություն, որի արտադրած կոմուտատորները, սարքերը, ռադիոռելեային ուժեղացուցիչները, կապի այլ միջոցները լայն պահանջարկ ունեն ոչ միայն Սովետական Միությունում, այլև արտասահմանյան շատ երկրներում: Չեխոսլովակիա, Վիետնամ, Կուբա, Ֆրանսիա. ահա ոչ լրիվ ցանկը, արտասահմանյան այն երկրների, ուր արտահանվում է ձեռնարկության արտադրանքը:

Ի դեպ, այստեղ չէր պլանավորվում կառուցել խոշոր գործարան, այլ նախատեսվում էր նախկին մեքենատրակտորային կայանի անգործության մատնված շենքերը հարմարեցնել հեռախոսային ապարատների նորոգման համար և դրանով էլ սահմանափակվել: Բայց կյանքը, ժամանակի պահանջները, ինչպես հաճախ է պատահում, ստիպեցին պլանավորող մարմիններին՝ վերանայել իրենց տեսակետը: Եվ ձեռնարկությունը տարիների հետ ընդլայնվեց, հասակ առավ. աստիճանաբար կառուցվեցին նոր մասնաշենքեր, գործարկվեցին նոր արտադրամասեր, ստվարացավ, որակական փոփոխություն կրեց կոլեկտիվը: Բանվորական հասունություն ձեռք բերեցին կոլեկտիվի անդամ համարվող դառնեցիները, գողթեցիները, հացավանցիները, ողջաբերդցիներն ու ձորաղբյուրցիները: Արմատական բեկում կատարվեց կոլեկտիվի հոգեբանության, աշխատանքի նկատմամբ նրա վերաբերմունքի մեջ, նրա անդամների միջև հաստատվեցին նոր սերտ հարաբերություններ, ձևավորվեցին բարոյական նոր նորմեր: Ձեռնարկության 1200 մարդուց բաղկացած կոլեկտիվն արդեն տարեկան թողարկում է ութ միլիոն ռուբլու կապի արդյունաբերական միջոցներ:

Համամիութենական և միջազգային ճանաչման արժանացած ձեռնարկության տարեգրության հիշարժան էջերից է 1976 թվականը, երբ որոշվեց արտադրությունից հանել արդի պահանջները չբավարարող արտադրատեսակները

և դրանց փոխարեն թողարկել նորագույն սարքեր: Փորձառու կոլեկտիվը, լայնորեն օգտագործելով ժամանակակից գիտատեխնիկական նվաճումները, հաջողությամբ քննություն բռնեց դրանք արտադրությունում ներդնելու և արմատավորելու գործում: Ձեռնարկության արտադրած արդիական շատ սարքեր իրենց տեխնիկական ու որակական ցուցանիշներով և հուսալիությամբ լավ ընդունելության արժանացան պատվիրատուների և սպառող կազմակերպությունների կողմից: Ուշագրավ է, որ «Օլիմպիադա—80»-ի մարզական արդյունքները լուսաբանող ժամանակակից մի շարք սարքերի պատվերները տրվեցին «Հայարդկապ» արտադրամիավորման Ջրվեժի գլխամասային ձեռնարկությանը: Եվ այդ նպատակի համար արտադրված բոլոր սարքերն ընդունվեցին «գերազանց» գնահատականներով:

Այսօր գործարանի մակնիշը կրող արտադրանքի ընդհանուր ծավալի 45 տոկոսը թողարկվում է պետական որականիշով: Ձեռնարկության ղեկավարությունը և կուսկազմակերպությունը, արտադրության ծավալի մեծացմանը զուգընթաց, մեծ ուշադրություն են նվիրում թողարկվող արտադրանքի որակական ցուցանիշների բարելավմանը: Այդ ասպարեզի առաջընթացը տասներորդ հնգամյակում կոլեկտիվի ձեռք բերած գլխավոր նվաճումներից է: Հատկանշական է, որ մինչև 1977 թ. առաջին կիսամյակը գործարանը չուներ հնգանիստ նշանով թողարկվող ոչ մի արտադրատեսակ: Անցել էր հնգամյակի երկու տարին, սակայն տակավին լուրջ տեղաշարժեր չկային. չէր կատարվում կուսակցության XXV համագումարի պահանջը՝ տասներորդ հնգամյակը դարձնել արդյունավետության ու որակի հնգամյակ: Այս հանգամանքը, բնականաբար, անհանգստացնում էր ձեռնարկության ղեկավարությանը, կուսկազմակերպությանը, կոլեկտիվի բոլոր անդամներին: Եվ ահա 1977 թ. մայիսին հրավիրվեց կուսբյուրոյի ընդլայնված նիստ, որին մասնակցում էին բոլոր արտադրամասերի պետերը, ինժեներատեխնիկական, կոնստրուկտորական բաժնի աշխատողները, արտադրության փորձառու վարպետները: Օրակարգում դրված էր արտադրանքի որակը արմատապես բարելավելու և պետական որականիշով արտադրանքի թողարկումը կազմակերպելու հարցը: Տեղի ունեցավ մտքերի աշխույժ փոխանակություն, նշվեցին հետագա անելիքները: Հարցը քննարկվեց նաև կուսկազմակերպության ժողովում: Արժեքավոր առաջարկություններ արեցին արտադրության առաջավոր վարպետ Հ. Հարությունյանը, կոնստրուկտոր Մ. Գրիգորյանը, փորձնական արտադրամասի պետ Վ. Բաղդասարյանը և ուրիշներ: Կուսակցական կազմակերպության որոշմամբ ստեղծվեց որակի հանձնաժողով, որի նախագահ նշանակվեց գործարանի դիրեկտոր Հայրիկո Միրզոյանը: Հանձնաժողովի կազմում ներգրավվեցին նաև կուսբյուրոյի քարտուղար Վշտունի Հայկյանը, գլխավոր ինժեներ Ստեփան Մատինյանը, գլխավոր կոնստրուկտոր Միքայել Գրիգորյանը, արտադրության առաջավորներ Նատալյա Ղալումյանը, Սլգուշ Եղիազարյանը և ուրիշներ:

Հանձնաժողովը մշակեց որակի կառավարման կոմպլեքսային համակարգը և արագորեն ձեռնամուխ եղավ դրա ներդրմանը: Տարիների կուտակած հարուստ փորձը կուսկազմակերպության և վարչական ղեկավարության նպատակային աշխատանքը, ինժեներատեխնիկական անձնակազմի և ողջ կոլեկտիվի ջանքերը տվեցին ցանկալի արդյունքներ:

Ձեռնարկության կոլեկտիվի առջև, որպես կարևոր խնդիր, ծառացած էր նաև արտադրանքի ծավալի ավելացման հարցը, որը պետք է լուծվեր առանց լրացուցիչ կապիտալ ներդրումների և նոր արտադրամասերի կառուցման: Դրա համար հարկավոր էր ուսումնասիրել, բացահայտել և գործողության մեջ դնել ներքին, նոր ռեզերվներ: Իսկ ռեզերվներ կային: Մի խումբ աշխատողներ առաջարկեցին վերակառուցել փայտամշակման արտադրամասը և այն վերածել նոր, հավաքման արտադրամասի: Հարցը ուսումնասիրվեց և արժանացավ դիրեկցիայի ու կուսկազմակերպության հավանությանը: Այժմ այդ արտադրամասի տեղում հավաքողների կոլեկտիվը մեկ ամսում ավելի շատ արտադրանք է թողարկում, քան փայտամշակման նախկին արտադրամասը՝ ամբողջ հինգ տարում:



Գործարանի բանվոր-ծառայողներին հայտնի դարձավ, որ փորձնական արտադրամասի ֆրեզերագործ բանվոր, ՍՄԿԿ անդամ Հարություն Նազարյանի բրիգադը ժամկետից շուտ կատարել է հնգամյա պլանը: Դա 1978 թ. հոկտեմբերին էր: Շուտով կուսկազմակերպությունը հատուկ քննության առարկա դարձրեց Հարություն Նազարյանի աշխատանքային զեկույցը: Ժողովն ընդունեց բոլոր կոմունիստների կամքն արտահայտող որոշում. հավանություն տալ Հարություն Նազարյանի աշխատանքային գործունեությանը և տասներորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու վերաբերյալ նրա զեկույցը ի պահ հանձնել Հայկական ՍՍՀ հեղափոխության թանգարանին: Միաժամանակ որոշվեց ուսումնասիրել կոլեկտիվի կողմից հնգամյա պլանների կատարման ընթացքը և հնգամյակը ժամկետից շուտ ավարտելու համար ստանձնել նոր, լրացուցիչ պարտավորություններ: Հանգամանորեն ուսումնասիրվեցին ողջ կոլեկտիվի, արտադրամասերի, բրիգադների յուրաքանչյուր անդամի աշխատանքային պայմանները, արտադրանքի ծավալը մեծացնելու նրանց ռեալ հնարավորությունները:

Ուսումնասիրության արդյունքների հիման վրա, 1978 թ. դեկտեմբերի 25-ին, գումարվեց ձեռնարկության կուսկազմակերպության ժողովը, որը քննարկեց հնգամյակի պլանային առաջադրանքները չորսուկես տարում կատարելու վերաբերյալ հարցը: Զեկուցումով հանդես եկավ ձեռնարկության դիրեկտոր Հ. Միրզոյանը: Իրենց ելույթներում հնգամյակի առաջադրանքները չորսուկես տարում կատարելու առաջարկությունը պաշտպանեցին առաջավոր բանվորներ Ժորա Խաչատրյանը, Կարինե Հարությունյանը, Անահիտ Մարտիրոսյանը, գործարհկոմի նախագահ Լեոնիդ Լազիկյանը, կոմերիտական կազմակերպության քարտուղար Ալվարդ Մելքումյանը և ուրիշներ: Ժողովը միաձայն որոշեց. «Գործարանի կոլեկտիվը, ուսումնասիրելով իր հնարավորությունները, հաշվի առնելով չօգտագործված ռեզերվները և կոլեկտիվի պատրաստակամությունը, պարտավորվում է հնգամյա պլանը կատարել չորսուկես տարում և կոչ է անում շրջանի բոլոր ձեռնարկություններին՝ հետևելու իր օրինակին»:

Որակի համար կոլեկտիվի ծավալած պայքարը ևս հնգամյակի վերջին տարում պսակվեց նոր հաջողությամբ: Մայիս, հունիս ամիսներին հնգանիստ նշանի արժանացավ երկու նոր մակնիշի արտադրատեսակ: Օրինաչափ է. լավ աշխատանքը, ստեղծագործական ջանքերը նկատվում և գնահատվում են ըստ արժանվույն:

Կոլեկտիվն արտադրական բարձր ցուցանիշների, սոցիալիստական մրցությունում հաղթելու համար բազմիցս արժանացել է ՀԿԿ Սովետական շրջկոմի, ժողովրդական դեպուտատների շրջսովետի գործկոմի և ՍՍՀՄ կապի մինիստրության ու ճյուղային արհմիության կենտրոնական կոմիտեի փոխանցիկ կարմիր դրոշներին:

Ձեռնարկության հաջողությունները պայմանավորված են նրանով, որ այստեղ առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում կադրերի ճիշտ ընտրությանը և ուսուցմանը, նրանց պրոֆեսիոնալ վարպետության բարձրացմանը: Կանոնավոր գործում են կադրերի ուսուցման միամյա, երկամյա և եռամյա դասընթացները, որոնք ղեկավարում են գործարանի դիրեկտորը, գլխավոր ինժեները, անվանի վարպետներ Արմանուշ Ադամյանը, Սուսաննա Մանուչարյանը և ուրիշներ: Ընդհանուր, կոլեկտիվ ուսուցումից զատ, այստեղ լայն կիրառություն ունի կադրերի ուսուցման ու դաստիարակության անհատական ձևը: Այդպիսի անհատական աշխատանքով զբաղվում են կուսակցական ու տնտեսական բոլոր ղեկավարները, որոնք այդ գործի արդյունքների համար հաշվետու են կուսկազմակերպությանը: Կադրերի հետ տարվող անհատական աշխատանքի ձևերից կուսկազմակերպությունը հատկապես կարևորում է վարպետ-դաստիարակների շարժման տարածումն ու արմատավորումը: Այդ շարժումը տարեցտարի լայն թափ է ստանում: Վարպետ-դաստիարակների թիվն այսօր հասնում է 49-ի: Նրանք սիրահոժար իրենց գիտելիքներն ու փորձը հաղորդում են երիտասարդներին: Ամեն տարի, արտադրության ծավալի ընդլայնմանը համապատասխան, նորանոր մարդիկ են գալիս գործարան, և միշտ չէ, որ սկզբում հարթ է ընթա-

խնդիրը: Երկիրը տասնյակ միլիոններ տրամադրեց: Սկսվեց ինժեներատեխնիկական այս բարդ կառույցի շինարարությունը, որով երկմիասնական մի խնդիր էր լուծվում. նախ՝ գետն ազատվում էր արդյունաբերական աղտաջրերից և, որ տնտեսական իմաստով ավելի կարևոր է, տևական ժամանակով լուծվում էր հանքաքարի թափուկներն ամբարելու հարցը: Քաջարանի համար դա հիրավի վիթխարի կարևորության պրոբլեմ է և այդ ըմբռնելու համար պետք չէ բնավ լեռնային գործի գիտակ լինել: Անզեն աչքով էլ կարելի է տեսնել, որ արդեն սպառվել են թափուկներն ամբարելու «տեղական ռեզերվները»: Ողջի գետի վրա ու մոտակա կիրճերում վաղուց նման «ամբարտակների» մի կասկադ է գոյացել: Ճիշտ է, Քաջարանն իր «մեղքը» քավելու համար հիմա դրանք խնամքով կանաչապատում ու բնությանը մասնակիորեն վերադարձնում է իր նախկին տեսքը, բայց դա ավելի շուտ հարցի էսթետիկական կողմն է: Գործնական առումով կարևորը թափուկներն ամբարելու խնդրի արմատական լուծումն էր, որն իրականացվեց 38 կիլոմետր երկարությամբ այս թափուկատարի գործարկմամբ միայն:

Իհարկե, Ողջին դրանով չվերագտավ իր խաղաղությունը, ու դեռ հայտնի չէ, թե մեխանիզմները նրա անհնազանդ ժայռերի հետ իրենց վեճը երբ կավարտեն: Անդորրը կորցրած արջուկն էլ ահա իր թաքստոցներից ելել, բանալին ատամների մեջ սեղմած կանգնել է քարակոփ պատվանդանին: Հեղինակների մըտահղացմամբ՝ նա պետք է հյուրընկալ տանտիրոջ դեր խաղա, բայց, դատելով սրտանմլիկ տեսքից, կարելի է կարծել, թե քարանձավների երբեմնի տիրուհին լռություն է հայցում և կամ Կապան-ամրոցը հուսահատորեն լքելուց առաջ բանալին հոժարակամ մարդկանց է հանձնում... Այսպես թե այնպես՝ կիրճում հերթական մի նոր գրոհ է ձեռնարկվել, այս անգամ արդեն գազամուղի համար: Ավելի ճիշտ՝ հերթական այս գրոհը նույնպես մոտենում է ավարտին: Ու դա երևում է ո՛չ միայն նրանից, որ գազամուղն արդեն հասել է Քաջարանի մատույցներին, այլև այն եռանդուն ջանքերից, որ քաղաքը գործադրում է իր խոհանոցային տնտեսությունը վերակառուցելու նպատակով:

ՔԱՋԱՐԱՆԸ ՄԵՐ ԱՅՆ բնակավայրերից է, որ ծնվել է արդյունաբերական հսկաների պատվերով: Իսկ այդ հանգամանքը կանխապես արդեն որոշում է քաղաքի ու նրան ծընունդ տված ձեռնարկության փոխհարաբերությունների բնույթը: Որպես կանոն, նման դեպքերում դժվար է զանազանել այն սահմանը, որ դրանց բաժանում է միմյանցից: Թերևս ավելի ճիշտ կլինի այս յուրատեսակ համալիրը քաղաք-կոմբինատ կոչել, որտեղ առաջինի գոյությունը պայմանավորված է երկրորդով, իսկ վերջինիս համար քաղաքային տնտեսության հոգսերը նույնքան մոտ ու հասկանալի են, որքան բուն արտադրության հետ կապված հարցերը:

Այդուհանդերձ, վերջին տարիներին պղնձամոլիբդենային կոմբինատի մենաշնորհը կարծես փոքր-ինչ սասանվել է. երևան են եկել նոր ձեռնարկություններ, ավելի շուտ՝ ձեռնարկությունների մասնաճյուղեր, որոնք հիմնականում կոչված են լուծելու կանանց աշխատանքով ապահովելու պրոբլեմը: Ինչպես լեռնահանքային արդյունաբերությունն առհասարակ, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատը ևս, չնայած իր վիթխարի մասշտաբներին, աչքի չի ընկնում մեծ չափերով աշխատուժի կլանմամբ: Ու նա ստիպված էր կյանքի կոչել իր «հավելվածը»— ռելեի, կարի՝ բանվորական ուժը սպունգի նման կլանող այդ արտադրությունների տեսքով: Բայց, ինչպես հիմա է պարզվում, հաշվարկների մեջ, այնուամենայնիվ, ինչ-որ անճշտություն է թույլ տրվել: Ո՞վ կարող էր ենթադրել, օրինակ, թե ժամանակի ընթացքում կծագի բարձր ճշգրտություն պահանջող ռելեի արտադրության ու Գանձասարում կատարվող պայթեցումների անհամատեղելիության հարցը: Մինչդեռ պարզվում է, որ չափազանց զգայուն ռելեները բոլորովին էլ անտարբեր չեն սեյսմիկ ցնցումների նկատմամբ: Եվ որքան ավելի է իջնում Գանձասարը, որքան Քաջարանում ավելի նկատելի է դառնում պայթյունների ազդեցությունը, այնքան ավելի է սրվում ռելեի արտադրության համար սեյսմակայուն շենքերի կառուցման անհրաժեշտությունը: Այնպես որ, նոր արտադրությունները նաև նոր, երբեմն բոլորովին անըսպասելի հոգսեր են բերում:

Մինչդեռ Գանձասարն իջնում է ու իջնում: 300 մետր՝ շուրջ երեք տասնամյակում: Միջին հաշվով՝ տարեկան տասը մետր: Անտեղյակ մարդուն գուցե դա քիչ բան է ասում: Իսկ ով գեթ մեկ անգամ եղել է Գանձասարում, կարող է պատկերացնել կատարվածի մասշտաբները: Ինքը՝ գանձերի այդ լեռը, հիմքից մինչև գագաթ նույն անփոփոխ մեծությունը չէ, և քանի դեռ խոսքը նրա վերին հորիզոնների մասին էր, ոչ տասը, ոչ էլ նույնիսկ քսան մետրը գուցե և առանձնապես տպավորություն չէին գործում: Այլ բան է հիմա, երբ հանքավայրի բացվածքի մակերեսն արդեն տասնյակ հեկտարներով է հաշվվում, երբ լեռան մեկ մետրը



հարյուր հազարավոր տոննաներով հանքաքար է պարունակում:

Երկրաբանները հավանորեն այսպես չեն արտահայտվում՝ լեռան մեկ մետրը: Գիտականորեն դա երևի ճիշտ չէ: Զանգվածի համար մետրն իմաստ ունի իր «խորանարդ» կցորդով: Բայց լեռնահանքային արդյունաբերության մեջ կան աշխատանքի տեսակներ, որտեղ արդյունքը բացառապես մետրերով է չափվում, առանց այլևայլ հավելումների: Այդպես է, օրինակ, խոր հորատման հաստոցավարների մոտ: Քաջարանում պրոֆեսիաները հարյուրներով են հաշվվում, սակայն որևէ մեկի մտքով չի անցնում վիճարկել հաստոցավարի նախապատիվ առաջնությունը: Ավելին, այստեղ դրա մասին խոսում են այնպես, որ թըվում է, թե պրոֆեսիայի հեղինակային իրավունքը իրենց է պատկանում: Մի շտապեք համեստության թեմայով դատողություններ անել: Նրանք նաև «մտորելու ինֆորմացիա» են տալիս. խոր հորատման հաստոցի հերթափոխային նորման Քաջարանը հասցրել է 95 մետրի: Դուք պարտավոր չեք իրազեկ լինել լեռնահանքային արդյունաբերության պլանային մանրամասներին, ու դրա համար էլ շտապում են օգնության հասնել. միութենական մասշտաբով ռեկորդային ցուցանիշ է, բայց այստեղ ամենօրյա արտադրական նորմայի ստատուս ունի:

Գանձասարում ես տեսա, թե այդ ռեկորդային ցուցանիշը ինչպես է մշտական գրանցում ստացել: Տպավորությունը նախ այնպիսին է, թե կինոդոկումենտալիստները ուր որ է ահա պիտի սկսեն նկարահանումը, և հաստոցավարները ջանում են ամեն բան կատարել իդեալական տարբերակով: Բայց դիտում ես նրանց աշխատանքը մեկ ժամ, երկու ժամ, դիտում ես ամբողջ օրը, և այդ տեմպն ու ռիթմը քեզ համար հետզհետե դառնում են սովորական, ու սկսում ես խորհել, որ առօրեականն էլ կարող է իդեալականի տարրեր պարունակել:

Գրելով այս տողերը, ես ամենից առաջ նըկատի ունեմ ժամանակի նկատմամբ մարդկանց վերաբերմունքը, նրա յուրաքանչյուր միավորի մեջ ավելի մեծ նյութական բովանդակություն դնելու ձգտումը: Եվ եթե խրոնոմետրաժի հնարավորություն լիներ, անպայման կօգտվեի դրանից՝ ցույց տալու համար այն որոշիչ դերը, որ ռեկորդի գոյավորման մեջ խաղում է ժամանակի գործոնը: Ընդ որում չափի միավոր կընտրեի ոչ թե օրը կամ ժամը, այլ րոպեն: Խոր հորատման վարպետների րոպեն արժանի է նման պատվի: Դրա մասին կարելի է նաև տնտեսագիտական ակնարկների մի ամբողջ շարք գրել, ասենք՝ «Րոպեի արտադրական հնարավորությունները» թեմայով: Եվ դա այն իմաստով, որ ժամանակի այդ փոքրիկ մասնիկից նրանք քամում են ոչ միայն հնարավորը, այլ հաճախ նաև անհնարինը:

Դրանից էլ այստեղ անսովոր բարձր է րոպեի՝ ժամանակի այդ կրտսեր միավորի հեղինակությունը, դրանից էլ նա այստեղ կարող է հանդես գալ իբրև նորին մեծություն ժամանակի՝ բոլոր լիազորություններով օժտված ներկայացուցիչ:

ԳԱՆՁԱՍԱՐԸ ՈՒՂԵԳԻՐ Է ՏՎԵԼ խոր հորատման վարպետների մի քանի սերնդի: Հովհան Իսրայելյանը, կարելի է ասել, ներկայացնում է դրանց միջին սերունդը: Ոչ թե տարիքով, այլ հաստոցավարների սերնդափոխության համակարգում իր զբաղեցրած տեղով: Տասնհինգ տարի է, ինչ նա այստեղ է: Գանձասարի հետ կապված են և նրա մանկությունն ու պատանեկությունը: Դեռ երեկ էր, կարծես, դպրոցից տուն էր գալիս թե չէ՝ թոկը փաթաթում էր մեջքին ու ընկերների հետ հևիհև բարձրանում լեռան գագաթը: Մարդիկ, անգամ երեխաները, գյուղում հենց այնպես՝ հանույքի համար դաշտ չեն գնում: Մի շալակ խոտ կամ մի օրաբաժին օջախի փայտ՝ ահա հանձնարարությունների այն նվազագույն ծավալը, որ պարտավոր էր կատարել: Հանձնարարությունը՝ հանձնարարություն, բայց Գանձասարը նաև նոր ձգողական ուժ էր ձեռք բերել. այստեղ երկրաբաններն արդեն հիմնավորապես զոնդել էին նրա խորին շերտերը, իսկ շինարարները նոր-նոր միայն իրենց գրոհը պիտի սկսեին: Քաջարանը, որտեղ սովորական ավտոմեքենայի մուտքը դեռ մի քանի տարի առաջ երևույթ էր, միանգամից տեխնիկայի հավաքատեղի դարձավ: Ի՞նչը կարող էր ավելի մեծ բավականություն պատճառել գյուղական երեխաներին, քան մեխանիզմների ու սարքավորումների այդ աներևակայելի առատությունն ու բազմազանությունը... Կանգնում էին, դիտում ժամերով, չմտածելով բնավ, որ այդ անմեղ պահերից կյանքի մայրուղիներ պիտի սկիզբ առնեն:

Այսպես է մտաբերում մանկությունը: Իսկ մանկական տարիների հուշերը միշտ էլ կոնկրետ հասցե ունեն: Պատմում է, ու զգում ես, որ նրա սրտին դեպքերից ու փաստերից ոչ պակաս հարազատ են նաև վայրերը, որտեղ դրանք կատարվել կամ տեղի են ունեցել՝ Թթուջուրը, Ջուխտակ սարը, Գյոգգյոլը: Իհարկե՝ նաև Գանձասարը, որի անունը մյուսներից ավելի հաճախ է տալիս, բայց որին այլևս չի կարող ուղղակի մատնացույց անել, ինչպես այդ նույն Թթուջուրը, Ջուխտակ սարը կամ

Գյոգգյոլը: Ու դրանից էլ լեռան մասին հիշելիս երբեմն հայացքը դեպի երկինք է ուղղում, որտեղ հիմա չվերթից առաջ իրենց նոր համալրման հետ ծիծեռնակները վերջին մարզումներն են անցկացնում:

Գանձասարը հիմա հատած բուրգի է նման: Ես փորձում եմ նրա եզրերից մտքով ուրվագծեր տանել, հասնել ծիծեռնակներին և իմ երևակայության մեջ ամբողջացնել Հովնանի մանկության լեռը: «Տարիներ հետո Գանձասարն ավելի շատ լեռան պատվանդանի նման կլինի, քան լեռան»: Դա Հովնանն է ասում, և ես զգում եմ, որ նրա միտքը ճիշտ հակառակ ուղղությամբ է գործում: Իր աշխատանքի ուղղությամբ: Եվ դա բնական է: Դրա համար է այստեղ կենտրոնացված մարդկային ու նյութական այս վիթխարի պոտենցիալը:

Խուսափում եմ վերամբարձ արտահայտություններից, բայց չեմ կարող չասել, որ այդ պոտենցիալն առավել մեծ արդյունավետությամբ շարժման մեջ դնելը Հովնանը համարում է իր անձնական խնդիրը: Նրա հետ ես ընդամենը մեկ օր անցկացրի: Նախապես, իհարկե, ներկայացրել էին, գիտեի արդեն, որ պիտի հանդիպեմ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատի հետ, բայց եթե անգամ առանց այդ «նախնական պատրաստության» ես Գանձասար գայի, միևնույն է՝ անպայման նրան կգտնեի:

Ամեն մի կոլեկտիվ ունի իր անդամը կամ անդամները, առանց որի կամ որոնց նրա դիմանկարը պարզապես թերի կլիներ: Գանձասարցիների համար այդպիսին է Հովնանը: Դրանով բնավ չեմ ուզում ասել, թե նա հակադրության հասնելու չափ առանձնանում է մյուսներից: Բոլորովին ոչ: Գանձասարի մասին ասում են, թե այնտեղ «բանվոր դասակարգի ընտրանին» է հավաքված: Եվ դա ճշմարտությունից հեռու չէ: Դժվարին մասնագիտությունը, նաև դժվարին պայմանները բնական ընտրության գործոնի դեր են կատարում: Ի վերջո՝ մնում են հոգով ուժեղները, նրանք, ովքեր բավականություն դժվարություն հաղթահարելու մեջ են գտնում, ովքեր մեկ անգամ այս անհանգիստ մասնագիտությունն ընտրելով՝ դա իրենց կյանքի գործն են համարում: Այդպիսին է Հովնանի կոլեկտիվը: Իսկ հավասարների մեջ աչքի ընկնելը հեշտ չէ: Հովնանի առավելությունը թերևս այն է, որ նախասիրություններով, մտածողությամբ, հետաքրքրություններով ու կենսադիրքորոշմամբ նա իր մեջ ավելի ամբողջականորեն է ներառել կոլեկտիվի հատկանշական գծերը:

ԳԱՆՁԱՍԱՐՈՒՄ ՄԵՆՔ ՄԻԱՍԻՆ շրջեցինք: Մեզ հետ էին նաև հանքի ղեկավարները, բայց արտադրությունն ինձ Հովնանն էր ներկայացնում: Մյուսները նրան լսում էին ոչ պակաս ուշադրությամբ, քան ես: Հազիվ թե այն պատճառով, որ Հովնանի ասածների մեջ իրենց համար նորություն կար: Նրանց երևի հետաքրքիր էր, թե բանվորն ինչպես է կարողանում ներկայացնել իր ձեռնարկությունը: Իսկ բանվորի «տեղեկանքը» ավելի շատ քննական վերլուծության էր նման: Սթափ հայացքով, զարմանալի իրազեկությամբ: Եվ ավելի շատ ոչ այն մասին, թե ինչ է արված, այլ՝ ինչպես է արված, գործի որակական կողմը շեշտելով...

Օրվա թեմաներից մեկը աշխատանքի կազմակերպման կատարելագործումն էր: Հովնանի բրիգադն այս իմաստով փորձարկողի դեր է կատարում. շատ նորամուծություններ այստեղ են կենսունակության վկայագիր ստացել: Այժմ խոր հորատման հաստոցավարները պատրաստվում են արմատավորելու աշխատանքի կազմակերպման բրիգադային մեթոդը: Այստեղ արդեն խոսքը փորձարկման մասին չէ, այսինքն՝ բրիգադի հայեցողությանը չի թողնված մեթոդն ընդունելու կամ մերժելու հարցը: Եվ նրա անդամները լավ են հասկանում իրենց ինքնագործունեության շրջանակները «սահմանափակելու» պատճառը. խոսքն այս անգամ վերաբերում է այն մեթոդի արմատավորմանը, որը նոր հնգամյակում տիրապետող է լինելու աշխատանքի կազմակերպման պրոցեսում և որի առավելությունների մասին քանիցս նշվել է կուսակցական փաստաթղթերում:

Ես ներկա էի այս առիթով Հովնան Իսրայելյանի և հաստոցավարների կուսխմբի կազմակերպիչ՝ նույնպես հորատման գործի ճանաչված վարպետ Գևորգի Զաքարյանի միջև ծայր առած խոսակցությանը: Ամեն բանից երևում էր, որ այդ թեմայով նրանք շատ անգամ են զրուցել: Փաստարկները՝ թեր ու դեմ, լուծման սպասող հարցերը՝ առավելապես կազմակերպական, արծարծվում էին այնպիսի լավատեղյակությամբ, որ կողմնակի մարդն էլ կարող էր իրավիճակի մասին ընդհանուր պատկերացում ստանալ: Նոր մեթոդի արմատավորման հետ կապված դժվարությունները, դատելով այդ զրույցից, ավելի շատ հոգեբանական երանգ ունեն: Գանձասարում գործող խոր հորատման վեց հաստոցներից յուրաքանչյուրի անձնակազմը հիմա մի-մի «ինքնավար միավոր» է. աշխատում են կողք-կողքի, բայց միմյանց հետ գրեթե առնչություն չունեն: Ճիշտ է, անհրաժեշտության դեպքում հասնում են իրար, բայց դա՝ ավելի շատ բարոյական պարտ-



քի գիտակցությամբ, անձնական հայեցողությամբ... Իսկ այժմ խնդիր է դրվում այդ միավորները համախմբել մեկ միասնական բրիգադում, որտեղ բոլոր հարցերը լուծում է նույն այդ բրիգադի ընտրած խորհուրդը, իսկ վարձատրության չափը որոշվում է ընդհանուր արդյունքի մեջ յուրաքանչյուրի ներդրած վաստակին համապատասխան:

Ուղղակի ասենք՝ նուրբ իրավիճակ է. այսպես թե այնպես՝ նաև վարձատրության սիստեմի վերանայման հարց է դրվում, իսկ դա, եթե անգամ նորը ակնբախ առավելություններ ունի, միշտ էլ մարդկանց ստիպում է հանգամանորեն կշռադատել, ծանր ու թեթև անել, երբեմն չեղած փաստարկներ փնտրել հօգուտ նախկինի... Կա նաև սովորույթի բեռը: Տղաները դա հասկանում են, նույնիսկ կարող են նախապես ասել, թե նոր մեթոդի նկատմամբ ով ինչպիսի դիրք կգրավի: Հովնանը ավելի վճռական է տրամադրված. ով չի կամենա՝ թող չաշխատի: Ոչ թե մարդկային մանր թուլությունների հանդեպ անհանդուրժողականությունն է խոսում նրա մեջ, այլ տարակարծությունների արդեն իսկ հնարավոր առկայության համար ներքին վիրավորվածությունը: Կոլեկտիվը, ասում է, պետք է միասնական լինի, երբ պետական կարևորության գործ են վստահում: Իսկ սա հենց այդ դեպքն է. բրիգադի կարծիքն անպայման որոշակի ազդեցություն կունենա նորամուծության հանդեպ կոմբինատի ողջ կոլեկտիվի վերաբերմունքի վրա: Չառարկելով ընկերոջը, Գևորգին այն տեսակետն է հայտնում, թե գործի հաջողությունը նախապատրաստական աշխատանքով է պայմանավորված. բրիգադային սիստեմը ոչ թե սովորական, այլ բարձրագույն կարգի կազմակերպվածություն է ենթադրում...

Կարծիքների ու տեսակետների հակադրում-համադրումից էլ, հավանաբար, կծնվեն առավել նպատակահարմար լուծումները: Բայց խնդիրը միայն այդ չէ: Ինքնին ուշագրավ է այն մտահոգությունը, որ շարքային բանվորը հանդես է բերում արտադրության զարգացման, ավելի լայն իմաստով՝ մեր տնտեսական քաղաքականության իրականացման նկատմամբ: Ոչ Հովնանը, ոչ Գևորգին և ոչ էլ նրանց ընկերներից շատերը բնավ իրենց վատ չեն զգում նաև աշխատանքի կազմակերպման այժմյան պայմաններում: Բայց բրիգադային սիստեմը, արդեն իր անվանմամբ, ենթադրում է կոլեկտիվ գործունեության, աշխատանքային ու մարդկային հարաբերությունների նոր որակ, փոխադարձ օգնության ու հսկողության, արտադրության ներքին հնարավորությունների օգտագործման՝ բուն կազմակերպական մեխանիզմով ապահովվող երաշխիքներ: Պատահական չէ, որ հենց բրիգադի՝ արտադրական ամենափոքր ստորաբաժանման վրա է սիստեմը դնում շեշտը, դիտում այն իբրև արտադրության կազմակերպական կառուցվածքի ու կառավարման համակարգի բարելավման վճռական օղակ:

Ահա այսպես էլ նրանք կբացատրեն իրենց այն ընկերներին, որոնք դեռ «մենատնտեսի» դիրքերում են կանգնած: Իսկ ընդհանրապես ձեռնարկման վերջնական հաջողությանը չեն կասկածում:

Մեր զրույցը, այս անգամ ավելի ներկայացուցչական կազմով, մենք երկար շարունակում ենք բանվորական համեստ ճաշասեղանի շուրջը, որտեղ տանտիրոջ դերում հանդես է գալիս Հովնանը: Բայց, նկատում եմ, նա ավելի շատ ձևացնում, քան օգտվում է սեղանից: Տղաներից մեկը կատակում է. «Մածնի ախորժակ է պահում»: Մյուսները ծիծաղում են և, կարծես արտադրական թեմաներից հիմնավորապես հոգնած, անցնում են կենցաղային հարցերի: Ու պարզվում է, որ մածնի վերաբերյալ ակնարկը սրամտության համար չի արված: Ամռան տապին դա տղաների նախաճաշից անպակաս է միշտ: Եվ, որպեսզի շոգից «ապրանքային տեսքը» չկորցնի, մածնով լի ամանը նրանք երկար թելով իջեցնում են հորատանցքը: Թեկուզ օրերով պահիր: Ուղղակի որականիշով սառնարան...

Ինչ վերաբերում է Հովնանին, ապա նա իրոք որ «ախորժակ էր պահում»: Հաստոցի մոտ նրան սպասում էր օգնականը՝ Համլետ Վարդանյանը, որի հետ միշտ միասին են նախաճաշում և որի մասին խոսելիս հարկ է համարում շեշտել, այն էլ մի քանի անգամ, թե՛ անունով է օգնական, իսկ այնպես՝ ուզածդ վարպետի հետ կմրցի: Եթե դա Հովնանն է ասում, ուրեմն այդպես էլ կա: Բայց որ ստիպված էր մի քանի անգամ կրկնել նույն բանը, դրանում երևի ես էի մեղավոր: Առաջին անգամ ուշադրություն չդարձրի: Երկրորդ անգամ՝ նույնպես: Միայն երրորդ անգամ ասելուց հետո հասկացա, որ պարտավոր եմ ծոցատետրում նշումներ անել: Եվ միայն դրանից հետո մենք լռելյայն հարցը սպառված համարեցինք: Խոստովանում եմ՝ օգնականի դերին մի փոքր ավելի վաղ ծանոթ լինելու դեպքում Հովնանին ավելի շատ կհասկանայի: Լավ օգնականը այստեղ համազոր է հուսալի թիկունքի: Առավել ևս՝ Հովնանի համար: Դեպուտատական պարտականությունների բերումով, պատահում է, օրերով կտրվում է անմիջական աշխատանքից: Դրան ավելանում է նաև Մոսկվայի լեռնային ինստիտուտի հեռակա բաժնի ուսանող լինելու հանգամանքը: Այնպես որ՝

հուսալի թիկունքը Հովնանի համար կենսական կարևորության խնդիր է: Եվ առհասարակ գտնում է, որ օգնականը վարպետի ստվերում չպետք է մնա:

Նրան սիրում են անվերապահ սիրով՝ ազնվության, բարության, անմիջականության համար: Եվ ոչ պակաս չափով այն բանի համար, որ կարողանում է մարդկային ջերմությամբ մեղմել, տաքացնել հաճախ չափից ավելի գործնական արտադրական հարաբերությունները:

Տեխնիկայի մեր դարում նման մարդկանց չսիրել չի կարելի:

ՀԱՆՔԱՇԽԱՐՀԻ ՄԱՐԴԿԱՆՑ ՀԵՏ հանդիպումներից հետո մի անգամ չէ, որ ես փորձել եմ սիստեմավորել ստացածս տպավորությունները, պարզել, գոնե ինքս ինձ համար, թե այդ ամբողջ բազմազանությունից ի՛նչը կարելի է հատկապես առանձնացնել, արժեքավորել, խորհրդածելու նյութ դարձնել: Եվ, որքան էլ մտքով վերադասավորում, տեղաշարժում եմ դրանք, միշտ առաջին պլան է մղվում բանվորական ակտիվության թեման: Ո՛չ վիթխարի մասշտաբները, ո՛չ կառույցներում առարկայացած ինժեներատեխնիկական համարձակ մտահղացումները, որ ինքնին տպավորիչ են, ո՛չ նույնիսկ առնական ու վեհ, հիրավի զարմանահրաշ և զանգեզուրցու իմ հոգուն առանձնապես հարազատ բնաշխարհը, այլ շարքային բանվորի ակտիվությունը: Ընդ որում՝ ոչ միայն արտադրական (դրա պակասը մենք բարեբախտաբար երբեք չենք զգացել), այլ հատկապես սոցիալական ակտիվությունը: Ես չեմ ուզում նույնիսկ անուններ թվարկել. սոցիալական ակտիվությունը քաջարանյան խառնվածքի, հետևաբար և՝ կոլեկտիվ բնավորության հատկանիշ է:

Ինչպե՞ս, ի՞նչ բաղադրատարրերից է դա գոյանում: Ըստ իս՝ շատ բան արտադրության բնույթով է պայմանավորված: Քաջարանը մարդուն պատսպարում, զերծ է պահում մանրանալու վտանգից: Հանքագործի՝ բովանդակությամբ անչափ ազնիվ աշխատանքի էությունը կարծես անտեսանելի թելերով հաղորդվում, փոխանցվում է կատարողին, կողմնորոշում նրան դեպի նույնքան ազնիվ բարոյական արժույթները:

Կա նաև մի այլ գործոն՝ արտադրության ու անհատի շահերի ներդաշնակությունը: Ոչ թե առանձին թվեր ու փաստեր, այլ ծրագրային իրագործումների մի ամբողջ շարք կարելի է վկայակոչել ցույց տալու համար, որ մարդու նկատմամբ ուշադրությունն ու հոգատարությունը այստեղ ընկալվում են ոչ իբրև դեպքից դեպք իրականացվող միջոցառումների մեխանիկական գումար, այլ որպես պետական քաղաքականության գլխավոր ուղղություն: Նման հանգամանքներում մարդը, բնականաբար, ամեն կերպ ձգտում է գտնել իր տեղը արտադրության համակարգում, անձնական ունակությունները առավելագույն ճշգրտությամբ համարեցնել արտադրության պահանջներին: Քաջարանյան պրակտիկային հատկանշական է նաև սոցիալական ակտիվության գործադրման ու զարգացման կայուն երաշխիքների առկայությունը: Լիարյուն հասարակական կյանքը, գործարար աշխատանքային մթնոլորտը այն ելակետային նախադրյալներն են, որոնք կոլեկտիվի ակտիվացման պրոցեսին մշտական, հարատև բնույթ են տալիս:

Կկարդան այս տողերը Քաջարանում, գուցե և շոյված կզգան իրենց, բայց նաև, հավանաբար ոչ առանց իրոնիայի, կասեն. թղթի վրա շա՜տ հեշտ է ստացվել այդ սոցիալական ակտիվությունը... Ու թերևս իրավացի կլինեն. որքան էլ նպաստավոր են օբյեկտիվ պայմանները, մարդու, առավել ևս ամբողջ արտադրական կոլեկտիվների հասարակական հետաքրքրությունների զարգացումը, նրանց մեջ ակտիվ կենսադիրքորոշում պատվաստելը կառավարվող պրոցեսներ են, որտեղ մանրուքներ չկան, և արդյունքները ձեռք են բերվում քայլ առ քայլ, տևական համբերատար աշխատանքով:

Կուսակցական կոմիտեի քարտուղար Կարեն Մկրտչյանը թղթապանակից առանձնացնում է մի քանի գործ և ներկայացնում ինձ: Մեր զրույցը որոշակի առում ունի՝ բանվորի կարծիքի հեղինակությունը: Բաց հանքի էքսկավատորավար Հրանտ Հայրապետյանը կոմիտեին ահազանգում է այն մասին, որ պայթեցումից հետո հանքաքարի բեկորները շատ խոշոր են ստացվում, իսկ դա դժվարացնում է բարձումը, բացասաբար անդրադառնում պլանների կատարմանը: Այլ կերպ ասած, այդ գործի համար պատասխանատու մարդիկ իրենց ազատել են լրացուցիչ պայթեցումների հոգսից: Մանրամասների մեջ խորանալու հարկ չկա. տվյալ դեպքում մեզ հետաքրքրում է դիմումի հետագա ընթացքը: Ստեղծվել է հանձնաժողով՝ աշխատանքի ու աշխատավարձի բաժնի պետի տեղակալ Ս. Անդրեասյանի ղեկավարությամբ: Ինչո՞ւ հատկապես Անդրեասյանի և ոչ մեկ ուրիշի: Որովհետև նա ժամանակին հանքում նորմավորող է աշխատել, եղել է սկզբնական կուսկազմակերպության քարտուղար, տեղյակ է գործերի վիճակին: Հանձնաժողովի կազմում ներգրավվել են նաև արտադրական ու տեխնիկական բաժինների ներկայացուցիչները: Դիմումի առթիվ զեկուցագրում հանգամանորեն շարադրված են այն միջոցառումները, որ հանձնաժողովի կարծիքով պետք է իրականացվեն: Գործարար մոտեցման նմուշ է այդ փաստաթուղթը: Նրա հեղինակներին բուն փաստից ավելի փաստը ծնող պատճառներն են մտահոգում: Այդ ոգով էլ տրվում են հանձնարարականները:

Սա օրինակներից մեկն է, թե բանվորի բարձրացրած հարցին ինչպիսի արձագանք է տրվում:

Զուտ արտադրական խնդիրներից բացի, նման վերաբերմունքը նաև աշխատանքի մարդու ակտիվությունը զարգացնելու նպատակ է միտում: Ես աչքի անցկացրի ևս մի քանի ահազանգ-դիմումներ: Բոլոր դեպքերում հատկանշականը գործարար մոտեցումն է, այն, որ «մասնավոր» փաստերը հասարակական հնչեղություն են ստանում...

Սոցիալական ակտիվությունը, հիրավի, դժվարությամբ է ձեռք բերվում. «զրո ցիկլից» սկսելն այստեղ ավելի հեշտ է, քան նվաճված բնագիծը զիջելուց հետո նորից դրան հասնելը: Խոսքը, վերջին հաշվով, մարդու հավատին է վերաբերում, իսկ հավատի կորուստը գրեթե միշտ անդառնալի է: Այս գործում արարելը նույնքան կարևոր է, որքան կորուստ թույլ չտալը: Եվ Քաջարանում այդ պրոցեսը միշտ վերընթաց կորագծով է զարգացել: Սերունդները միայն հարստացրել են այն, ժամանակի ոգով դրան նոր երանգներ հաղորդել:

ԽՆԱՄՔՈՎ ՊԱՀՊԱՆՈՒՄ ԵՄ իմ քաջարանյան «արխիվը»: Յուրաքանչյուր գործուղումից՝ մեկ-երկու ծոցատետր: Հիմա եմ միայն նկատում՝ դեպքեր, իրադարձություններ, իսկ ավելի շատ՝ անուններ կան, որ կրկնվում են անխտիր բոլոր գրառումներում: Մի էական տարբերությամբ միայն. ամեն անգամ մարդկանց անուններին ինչ-որ մի նոր բան է ավելացել՝ վաստակի, ծառայության գնահատության մի նոր վկայություն: Ավագ փլոտատոր Գերասիմ Հարությունյանի մասին մի դեպքում նշված է ընդամենը նրա առաջավոր լինելու փաստը, մի այլ դեպքում թվարկված են նրա շքանշանները ու մեդալները, նաև այն, որ ՀԿԿ Կենտկոմի անդամ է եղել: Բուլդոզերավար Արքիմեդ Արշակյանը մի դեպքում իր գործի հիանալի վարպետ է միայն, իսկ ավելի ուշ՝ նաև ՀամԼԿԵՄ XVII համագումարի պատգամավոր, ՀԼԿԵՄ Կենտկոմի անդամ... Նույն Հովնան Իսրայելյանը ավելի վաղ արված իմ գրառումներում ընդամենը «առաջավոր հաստոցավար, կուսանդամության թեկնածու և... լավ ընկեր է»: Ու կարծես հենց այդ «նախահիմքերի» վրա էլ աճել, հասակ է առել երկրի պետական իշխանության բարձրագույն օրգանի այսօրվա ներկայացուցիչը: Էքսկավատորավարներ Արծրուն Առաքելյանը և Պավլուշա Դավթյանը իրենց պրոֆեսիայի ասպարեզում ճանաչված հեղինակություններ են ոչ միայն Քաջարանում ու Հայաստանում...

Իմ գրառումներում քանիցս նշված է նաև Վ. Խաչատրյանի անունը, բայց նրան ես հանդիպեցի միայն վերջին այցելության ժամանակ: Տասնվեց տարեկանից Գանձասարում է, փորձել է համարյա բոլոր մեխանիզմները և, ի վերջո, ընտրել ավտոմեքենան: Հարյուրավոր երիտասարդ բանվորների նման միջնակարգը համատեղել է արտադրության հետ: Մի խոսքով՝ սովորական քաջարանյան կենսագրություն: Կուսակցական կոմիտեում Վիլյուշա Խաչատրյանին, ի թիվս այլ բարեմասնությունների, բնութագրում են իբրև մտավորական-բանվորի: Անձամբ ծանոթանալուց հետո կարող եմ միայն ավելացնել, որ իսկապես մարդու մոտ նկատել են ամենահատկանշականը, և որ բնութագիրն անվերապահորեն «իսկականի հետ ճիշտ է»: Այնուամենայնիվ, ուզում եմ մի շտկում անել. իսկ ինչո՞ւ մտավորական-բանվորի: Ինչո՞ւ ո՛չ պարզապես բանվորի: Նույն այդ Քաջարանում հարյուրավոր շարքային մարդկանց կարելի է հանդիպել, որոնց հետ զրուցելիս ստիպված ես միտքդ միշտ սթափ պահել՝ աննպաստ վիճակի մեջ չընկնելու համար: Ինչ վերաբերում է մարդու ներքին կուլտուրային, չափի, տակտի զգացումին, ապա համոզված կարելի է ասել, որ հանքագործների բանվորական միջավայրը ուզածդ մտավորականի վրա միայն բարերար ազդեցություն կունենա:

Ես երևի միշտ կհիշեմ իմ վաղեմի բարեկամի՝ հարստացուցիչ ֆաբրիկայի վետերան Վասպուրական Հակոբյանի տանը մեր ունեցած խոսակցությունը: Տիկին Զաբելը, ինչպես բոլոր մայրերը, տրտնջում էր որդու՝ Սերոբի աշխատանքի պայմաններից: Պոլիտեխնիկական ինստիտուտի շրջանավարտը երեք տարի է ահա հերթափոխի պետ է աշխատում հանքաքարի ջարդման, տիկին Զաբելի որակմամբ՝ ֆաբրիկայի «ամենափոշոտ տեղամասում»: Մոր հորդորներին անսալով, ես անզգուշություն ունեցա ասելու իմ բարեկամին, թե կարելի է, հավանաբար, ինչ-որ բան ձեռնարկել տղայի աշխատանքի հարցը մի փոքր ավելի հարմար ձևով լուծելու համար: Հայրը միայն ժպտաց, իսկ երիտասարդ ինժեները, որը մինչ այդ նույնիսկ չէր համարձակվում խառնվել մեր զրույցին, վեր կացավ տեղից և հորը՝ կտրականապես, իսկ ինձ՝ շնորհակալություն հայտ-

նելով, պատվիրեց չմտահոգվել իր հարցով: Նախ՝ այդ տեղամասում հիանալի մարդիկ են աշխատում, երկրորդ՝ իրեն դուր է գալիս արտադրությունը և, վերջապես, ինչ կմտածեն նրանք, ովքեր իրեն այստեղ կուսակցության մեջ են ընդունել:

Ինչ խոսք, հիշարժան դաս էր:

Կյանքի քաջարանյան դպրոցը այսպիսի չափանիշներ ունի: Վիլյուշա Խաչատրյանը նույն այդ դպրոցի սաներից է: Բայց՝ աչքի ընկնող սաներից, որոնք ստացածը հավելումով վերադարձնել գիտեն: Անել է այստեղ՝ տեխնոլոգիական տրանսպորտի արտադրամասի կոլեկտիվում: Հիմա նույն արտադրամասի կուսկազմակերպության բյուրոյի քարտուղարն է: Ես նրան այսպես կբնորոշեի՝ պրոֆեսիոնալ բանվոր: Թվում է, թե այդ մարդը բանվորի դասական կերպարի կենդանի մարմնացումն է. բնատուր խելք, կռահունակություն, կենսափորձ, խիստ արտահայտված պատասխանատվության զգացում և, իհարկե, բարձր մակարդակի վարորդական վարպետություն:

Մարդու աճը, եթե, իհարկե, նա հակված է ճիշտ օգտվել ընձեռված հնարավորություններից, ինչ-որ չափով համամասնական է կոլեկտիվի որակական աճին: Այսօրվա տեխնոլոգիական տրանսպորտի պարկը դա և՛ տեխնիկա է, և՛ էկոնոմիկա, և՛ գիտություն... Կար ժամանակ, երբ այն 400 ավտոմեքենա ու շուրջ 800 բանվոր ուներ: Ահա և այդ տվյալները՝ այսօրվա տեսքով. 56 և 225: Բայց՝ 56 «Բելազ», յուրաքանչյուրը 27 և 40 տոննա բեռնատարողությամբ: Սպասվում են նորերը՝ 75 տոննա հզորությամբ: .

Նման հսկաների համար Գանձասարը նեղվածք է թվում: Թափ չառած՝ տեղ են հասնում: Բայց վարորդներն իրենց տարերքն ունեն: Այնպիսի արագություն են զարգացնում, որ կարծես առջևում հարյուրավոր կիլոմետրեր կան անցնելու: Դրանցից մի քանիսին անցյալ տարի մինիստրության հանձնարարությամբ Յակուտիա ուղարկեցին՝ օգնության կարգով ալմաստի հանքերում աշխատելու: Վերադարձին Մոսկվայում նրանց ընդունել էր մինիստր Պյոտր Լոմակոն, շնորհակալություն հայտնել, պատվոգրեր հանձնել:

Արտադրամասի պետ Մարտուն Ոսկանյանը ինքնատիպ մի թիվ է նշում. Գանձասարում հիմա տոննա-կիլոմետրը 8 կոպեկ արժե՝ ամբողջ 5 կոպեկով պակաս, քան անցյալում: Եթե այդ թիվը տարրալուծենք, կստանանք պարկի աշխատանքի վիճակագրական պատկերը: Իսկ պարկն իր գործակիցներով ցուցադրական է ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի մինիստրության համակարգում: Նվաճումների մասին խոսելիս տեղամասի պետն ու կազմակերպության քարտուղարը հարկ են համարում անպայման նշել այն լուրջ օգնությունը, որ ստանում են իրենց հարևանից՝ Լենինգրադի «Դիզել» գիտահետազոտական ինստիտուտի Քաջարանի բարձունքային ավտոլաբորատորիայից: Ստույգ ճշտված է, որ Գանձասարի նման բարձրության պայմաններում շարժիչը կորցնում է հզորության 27—28 տոկոսը: Իր տեսակի մեջ երկրում եզակի այս լաբորատորիան էլ ահա էնտուզիաստ Սիմոն Ծափրազյանի ղեկավարությամբ զբաղվում է մեծ բարձրության պայմաններում մեքենայի մեխանիկական հանգույցների աշխատանքային ռեժիմի հետազոտմամբ: Վարորդները գոհունակությամբ են խոսում լաբորատորիայի առաջարկությամբ «Բելազ»-ների վրա ներդրված հատուկ հարմարանքի մասին, որի շնորհիվ շարժիչի հզորությունը միանգամից մեծացել է 140 ձիաուժով: Եվ այն կարծիքին են, թե հենց միայն դրանով լաբորատորիան արդարացրել է իր գոյությունը:

ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՇԵՄԻՆ Քաջարանը մտորում է իր անելիքները՝ հանգամանորեն, անցյալի փորձի ու ծառացած նոր խնդիրների առանձնահատկությունների հաշվառմամբ, տնտեսական, սոցիալական ու տեխնիկական առաջընթացի պարամետրերի ճշգրտմամբ: Ավարտվող ու սկսվող հնգամյակների սահմանագծում նա սինթեզում, առանձնացնում է ստեղծված այն մնայուն արժույթները, որոնք էապես կհարստացնեն ձեռնարկության արտադրական պոտենցիալն ու տեխնիկական զինանոցը:

Տասներորդ հնգամյակը կոմբինատի պատմության մեջ կմտնի իր ուղղակի անվանմամբ՝ որակով ու արդյունավետությամբ: Ճիշտ է, որակով ու արդյունավետությամբ: Ճիշտ է, որակով ու արդյունավետությամբ: Ճիշտ է,

որակով ու արդյունավետությամբ: Ճիշտ է, քաջարանյան մոլիբդենը որականիշի դեռ չի արժանացել, բայց դա միայն այն պատճառով, որ (այդպես էլ է պատահում) ճշգրտված ու հաստատված չէ բարձրագույն կարգի մոլիբդենի ստանդարտը: Ինքնին նշանակալից է, որ նման վրիպումները որակի հնգամյակում են ի հայտ գալիս, ստանդարտ գոյություն ունի տարբեր կարգերի համար՝ առաջին, երկրորդ, երրորդ, բայց ոչ բարձրագույն կատեգորիայի: Քաջարանի ակտիվ մասնակցությամբ այժմ արդեն ճշգրտվել են նաև ստանդարտի այդ պահանջները, և ոչ ոք չի կասկածում, որ հաստատումից հետո նա առաջինը կօգտվի իր գործադրած ջանքերից:

Որակի «պաշտամունքի» պայմաններում արտադրության կազմակերպական ձևերը նույնպես, բնականաբար, պետք է կրեին դրա շեշտված ազդեցությունը: Այստեղ, եթե նկատի ունենանք խոշոր բնույթի միջոցառումները, դա իր կոնկրետ արտահայտությունը գտավ Քաջարանի ու Ղափանի հանքարդյունաբերության ձեռնարկությունների միավորման մեջ՝ Քաջարանի առաջատար դերի պահպանմամբ: Երևան եկավ մի նոր անուն՝ Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատ: Քաջարանը նոր ավյուն ներարկեց Ղափանի՝ այժմ արդեն սակավազոր դարձած հանքերին:

Ձեռնարկության կուսակցական կոմիտեն հնգամյակի իր ակտիվում ունի արտադրական հարցերի արդյունավետ լուծման ոչ քիչ թվով օրինակներ: Նշենք դրանցից մեկը: Ամբողջ 25 տարի Քաջարանի կոմբինատում պղնձի կոնցենտրատը թողարկվում էր խոնավության ավելի բարձր տոկոսներով, քան նախատեսված է նորմատիվով: Իսկ դա բավական մեծ, լրացուցիչ ծախսեր էր պահանջում ինչպես կոնցենտրատի փոխադրման, այնպես էլ չորացման համար: Արդյունավետության դիրքորոշումը, որ դարձավ տնտեսական շինարարության արդի փուլի գլխավոր խնդիրներից մեկը, կուսկազմակերպությունն ընկալեց հենց այն իմաստով, որ կոմբինատի տեխնիկական միտքը կողմնորոշեց նման առանցքային խնդիրների լուծմանը: Մշակեց ու հարստացուցիչ ֆաբրիկայում ներդրեց տեխնոլոգիական նոր ռեժիմ, որի շնորհիվ կոնցենտրատի խոնավությունը նվազեց 5—6 տոկոսով: Նորույթի տարեկան տնտեսումը կազմում է շուրջ 300 հազար ռուբլի: Մի խոսքով, հնգամյակը Քաջարանում իր մաուշտաբներին վայել հետքեր է թողնում՝ գազամուղը, Քաջարան—Մեղրի ավտոմայրուղին, որի նշանակությունը տնտեսական այս ռեգիոնի համար դժվար է գերագնահատել, թափուկատարը, որ երևույթ է ոչ միայն մեր հանրապետության արդյունաբերության կյանքում, նոր արտադրական կարողություններ, կուլտուր-կենցաղային կառույցներ...

Հնգամյակը ուսանելի շատ բան է թողնում և արտադրության առորին օղակներում աշխատանքի կազմակերպման, տնտհաշվարկի կիրառման, տնտեսական մեխանիզմի բարելավման, կենսագործունեության այլ և այլ ոլորտներում:

Նրա դասերն ուսանելի են նաև մի այլ առումով՝ հասունացած պրոբլեմները ժամանակին նկատելու և լուծելու, տնտեսավարման մեջ գիտության օգտակար գործողության գործակիցը բարձրացնելու, մասնավորապես պլանավորումը բարելավելու անհրաժեշտության իմաստով:

Ընդհանուր առմամբ, կոմբինատը հաջողությամբ է եզրափակում հնգամյակը: Քաջարանում ասել են՝ «ընդհանուր առմամբ», ես էլ հիմա նույնն եմ կրկնում, որովհետև պլանը կատարվում է ոչ թե կոնտրոլ թվերի մակարդակով, այլ «շտկված» տարբերակով: Իսկ նման տարբերակները, որպես կանոն, երբեք հիմնական ցուցանիշների բարձրացում չեն միտում: Բայց այստեղ կոմբինատը քիչ մեղք ունի: Պարզապես իրավասու գերատեսչությունները ֆինանսական միջոցներով չապահովեցին նախատեսված օբյեկտների, մասնավորապես Գեղիի ջրամբարի շինարարությունը: Կարելի է, իհարկե, խոսել այն մասին, որ Քաջարանի նման մեծությունները իրավունք ունեն այդ նույն գերատեսչություններից ավելի լուրջ պլանային կուլտուրա ակնկալելու, սակայն դրանից հիմա դրությունը չի փոխվի:

Իսկ պլանային կարգապահության պակասը, ցավոք, հաճախ է իրեն զգացնել տալիս: Ինչպես դա կարող է պատահել ամեն մի էքսպերիմենտի հետ, խափանումներով է գործում թափուկատարը, որից ձեռնարկությունների միավորումից հետո «սեփականատիրական» իրավունքներով օգտվում է նաև Ղափանի կոմբինատը: Ելքը բազալտե ձուլածո խողովակների կիրառման մեջ է միայն, որպիսիք կոմբինատը պետք է ստանար Թալինում կառուցվող համապատասխան գործարանից: Քաջարանում օր-օրի սպասում են դրան, իսկ այնտեղ շինարարության վերջը դեռ չի երևում:

Այս ամենը, իրենց կարևորությամբ հանդերձ, մանրուք կարող են համարվել Քաջարանի գլխավոր պրոբլեմի համեմատությամբ: Խոսքը Գանձասարի ճիշտ շահագործման մասին է:

Անդրադառնալով այս հարցին, ես նորից ու նորից վերհիշում, վերապրում եմ խիստ գործարար մթնոլորտն այն հանդիպման, որ մենք ունեցանք հանքի պետ Արտակ Խաչատրյանի աշխատասենյակում: Պատահական զուգադիպությամբ այստեղ էին գտնվում նաև կոմբինատի գլխավոր երկրաբան Վաչիկ Գևորգյանը, հանքի գլխավոր ինժեներ Վլադիմիր Խաչատրյանը, կոմբինատի տեխնիկական բաժնի պետի տեղակալ Վլադիմիր Բաբայանը՝ մարդիկ, որոնք այդ պրոբլեմի գոյավորման բուն պրոցեսի ոչ միայն ականատեսը, այլև անմիջական մասնակիցն են: Եվ իրավիճակի նրանց վերլուծությունն էլ ինչ-որ չափով սեփական վաստակի քննադատական գնահատության է նման: Խոսում են մտահոգ, հանքավայրի ճիշտ օգտագործման հարցում անձնական պատասխանատվության խոր գիտակցությամբ: Այդուհանդերձ, հարցն այստեղ դրվում է այնպիսի սրությամբ, որ նույնիսկ չեզոք թվացող փաստերը լուրջ փաստարկներ են դառնում:

Իսկ հարցի էությունը, եթե երկու խոսքով ասելու լինենք, հանգում է հետևյալին: Տարիներ շարունակ Գանձասարը համարվել է պլանին, բայց արդեն վաղուց ժամանակն է, որ պլանը համարվի Գանձասարին: Քմահաճություն չէ սա, այլ հանքի իրական վիճակից բխող օբյեկտիվ հետևություն: Ահա թե գիտական սեղմությամբ ինչպես է դա հիմնավորվում. հանքաքարի մեջ մետաղի, մանավանդ պղնձի պարունակության պլանավորված տոկոսն ավելի բարձր է, քան իրականում եղածը: Այլ կերպ՝ պլանը ավելին է պահանջում, քան հանքն ի վիճակի է տալ:

Բայց Գանձասարը տալիս է: Առայժմ: Ի հաշիվ իր առավել հարուստ երակների: Ու դրանով իսկ խախտվում է լեռնահանքային արդյունաբերության հիմնական օրենքներից մեկը՝ հանքավայրի հավասարաչափ շահագործման սկզբունքը: Հետևանքը Գանձասարում գոյացած «խառնարաններն» են, որոնք գնալով ավելի ու ավելի են դժվարացնում, իսկ հետագայում պարզապես անհնարին կդարձնեն հանքաքարի արդյունահանման նորմալ ընթացքը:

Սակայն ուռճացրած տոկոսը մի այլ՝ ավելի ծանր ավերածություն է գործում: Օժտված պլանային օրենքի լիազորություններով, այն արգելք է դնում իր՝ չափից ավելի բարձր պահանջները չգոհացնող լեռնահանքային զանգվածների վրա և, «աղքատ ապարի» պիտակով, մղում դեպի ձորակիրճերը՝ ժամանակի խղճին թողնելով դրանց օգտագործման հարցը: Ստացվում է այսպես. եթե կա ավելի լավը, ուրեմն լավի նկատմամբ կարելի է և առանձնապես փափկանկատ չլինել, ընդսմին մոռանալով, որ շատ տեղերում, օրինակ՝ հենց նույն Քաջարանի հարևան Ագարակում միլիոններ են ներդրվել մոտավորապես համանման պարունակությամբ հանքավայրը շահագործելու համար: Ինչ վերաբերում է ժամանակի խղճին, ապա մասնագետները թերահավատորեն են տրամադրված նրա մեծահոգության նկատմամբ. «տեղահան» արված հանքազանգվածի մեջ արագորեն բազմանում են հատուկ բակտերիաներ, որոնք քայքայում են մետաղը և խիստ նվազեցնում դրա պարունակությունը: Այսօրվա աղքատ հանքաքարը տարիների ընթացքում կարող է պարզապես դատարկ ապարի վերածվել: Բնության համար էլ երևի միևնույնը չէ, թե իր ստեղծածի հետ ինչպես են վարվում...

Ո՞րն է ելքը: Մասնագետները միասնական են իրենց կարծիքի մեջ. նվազեցնել, իրական վիճակի հետ համապատասխանեցնել հանքաքարի մեջ մետաղի պարունակության պլանային տոկոսը:

Քաջարանը նաև այս առումով լուրջ ակընկալիքներ ունի նոր հնգամյակից: Եվ կոմբինատի ղեկավարները եռանդուն ջանքեր են գործադրում այդ ուղղությամբ: Նոր մարդիկ են, նորովի էլ ընկալում ու ջանում են լուծել Քաջարանի հին պրոբլեմները:

Իսկ հանքագործների հնգամյակը իրոք որ բազմախոստում է: Զանգեզուրի հրաշք-ընդերքը, մանր «վիրավորանքները» մոռացած, մարդու առջև կրկին նոր հորիզոններ է բացել: Եվ հեռու չէ այն օրը, երբ Շահումյանի բազմամետաղ հանքավայրի գործարկմամբ Քաջարան—Ղափան համալիրը կունենա իր երրորդ մեծությունը: Սկսվում է նաև Գեղիի՝ վաղուց սպասված ջրամբարի շինարարությունը, որին, պատկերացրե՛ք միայն, քառասուն միլիոն ռուբլի է հատկացվում: Քաջարանի երկնքից կանհետանա ճոպանուղին՝ նոտաներ հիշեցնող իր վագոնիկներով. Գանձասարը հարստացուցիչ ֆաբրիկայի հետ այսուհետև կկապվի սարից սար հասնող մի կոնվեյերով: Կտուժի ռոմանտիկան, բայց արտադրությունը անպայման կշահի: Կլինեն, իհարկե, նաև «ընթացիկ» շատ գործեր, սակայն ամենաընդհանուր գծերով այսպիսին է հանքագործների գալիք հնգամյակը:

Տեսանելի, շոշափելի են այդ հեռանկարները քաջարանցիների համար: Ի դեպ՝ խառնվածքի հարց է. խիզախները նախ մտքով են հաղթահարում անցնելիք ճանապարհը:

# ՄԱՐԴԻԿ, ՈՐ ԿՅԱՆՔ ԵՆ ԱՐԱՐՈՒՄ

**Պ. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ՀԿԿ Թալինի շրջկոմի առաջին քարտուղար

*ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ մղձավանջներով ու օրհասներով լի նավակը մեծ Հոկտեմբերի շնորհիվ փրկության ափ հասավ: Սկսվեց մեր ժողովրդի վերածնության դարաշրջանը, երբ հայ աշխատավորը վերջապես հնարավորություն ստացավ ազատ կյանք վարել իր ապահով հայրենիքում:*

*Դարերի պատմություն ունեցող հայ-ռուսական բարեկամությունը նոր որակ և բովանդակություն ստացավ, խարսխվեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի, լենինյան ազգային քաղաքականության սկզբունքների վրա:*

*Հայ ժողովրդի լավագույն զավակներն աներեր կանգնեցին Լենինի դրոշի ներքո, զինվորագրվեցին կոմունիստական կուսակցությանը: Բոլշևիկների ջանքերով հայ աշխատավորությունը ոտքի կանգնեց դաշնակների անփառունակ տիրապետության դեմ և 11-րդ կարմիր բանակի օգնությամբ՝ Հայաստանը սովետական հանրապետություն հռչակեց:*

*Հայաստանում սովետական կարգերի հաստատման լուրը մեծ խանդավառություն հարուցեց Թալինի աշխատավորների շրջանում: Նրանք գրկաբաց ընդունեցին նոր կյանքի ջահակիրներին և եռանդուն պայքարեցին լեռնաշխարհում սովետական կարգերի ամրապնդման համար:*

*Կոմունիստական բջիջների ու նրանց ակտիվիստների ղեկավարությամբ շրջանում սկսվեցին սոցիալական արմատական վերափոխումներ:*

*Հայտնի է, որ 1918—1920 թվականներին թուրք հրոսակների կրկնակի ներխուժման հետևանքով շրջանի բնակչությունը երկու անգամ տեղահան արվեց: Նրանց ողջ ունեցվածքը թալանվել կամ ավերվել էր: Ցանքատարածությունները ամայացել էին: Հողը մշակելու համար չկային գործիքներ, բանող անասուններ, սերմացու: Վիճակն ավելի էր ծանրացել նրանով, որ Արևմտյան Հայաստանի նահանգներից շրջանում ապաստանել էին հազարավոր գաղթականներ: Հարկավոր էր հաղթահարել մոլեգնող սովը: Այս չափազանց ծանր տարիներին մեր ժողովրդին եղբայրական օգնության ձեռք մեկնեցին ռուս աշխատավորները: Մեծ Լենինի նախաձեռնությամբ Հայաստան ուղարկվեցին մեքենաներ, սերմացու, դրամ: Եվ հավատը նոր կարգերի, ապագայի նկատմամբ հաղթանակեց: Սասունից ու Մշո դաշտից, Կարսից, Էրզրումից, Վանից ու Արդահանից մազապուրծ եղած մարդիկ նոր գյուղեր հիմնեցին ու տեղի բնակիչների հետ համատեղ լծվեցին նոր կյանքի կառուցմանը: Նրանց աներևակայելի աշխատանքով լեռնալանջերն ու ձորամիջյան տարածությունները մաքրվեցին քարերից ու մացառներից, կրկին լսվեց հայ շինականի սրտաբուխ հորովելը և, որպես վկայություն նոր կյանքի հարատևման, գյուղական օջախներից ծուխ բարձրացավ ու նոր հացի բույրը տարածվեց, նորածնի ճիչը լսվեց:*

*Լենինյան ագրարային քաղաքականության հետևողական կենսագործման շնորհիվ, ինչպես ողջ երկրում, այնպես և մեր շրջանում մանր, փոշիացած գյուղացիական տնտեսությունները միավորվեցին սկզբում կոոպերատիվներում, հետագայում՝ կոլտնտեսություններում:*

*Գյուղում տարվող աշխատանքի կարևորագույն խնդիրներից մեկը կոմունիստական կուսակցությունը համարում էր սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը: Վ. Ի. Լենինը հսկայական նշանակություն էր տալիս գյու-*

տուն կերպով մտել են Թալինցու կենցաղի մեջ: Բոլոր բնակավայրերն էլեկտրիֆիկացված են, գյուղերի մեծ մասի և ավանների փողոցներում տեղակայվել են ցերեկային լուսավորության լապտերներ: Շրջանում գործում են 5225 ռադիոկետ, ավտոմատ հեռախոսակայան՝ շուրջ 4000 համարով:

Անհամեմատ բարձրացել է աշխատավորների կուլտուրական մակարդակը, բարելավվել է նրանց հանգստի կազմակերպումը: Գործում են 2 կինոթատրոն, 19 մշտական կինոսարք, 2 շրջիկ կինո: Գրադարանների գրքային ֆոնդը անցնում է 180.000-ից:

Շրջանի ազգաբնակչությունն ինտերնացիոնալ սերտ կապեր է պահպանում մեր երկրի տարբեր հանրապետությունների աշխատավորության հետ: Վերջին 5 տարում Թալին են այցելել մոլդավական, լիտվական, լատվիական, էստոնական, տաջիկական կուլտուրայի աշխատողների պատվիրակությունները: Շրջանի դպրոցների 400-ից ավելի աշակերտներ նամակագրական կապերի մեջ են մեր հայրենիքի բոլոր եղբայրական հանրապետությունների դպրոցականների հետ: Դպրոցներում կան «Ինտերնացիոնալ անկյուններ»: Սերտ կապ է հաստատված Վրացական, Ադրբեջանական հանրապետությունների և Կրասնոդարի երկրամասի աշխատավորության հետ, որոնց հետ Թալինցիները սիրով փոխանակում են իրենց կուտակած առաջավոր փորձը:

Շրջանի 104 սկզբնական կուսակցական կազմակերպություններում հաշվառման են վերցված 2034 ՍՄԿԿ անդամներ, նրանցից 345-ը կամ 17 տոկոսը կանայք են, վերջին 10 տարում ՍՄԿԿ անդամների թիվը շրջանում աճել է 714-ով:

Կոմերիտականների թիվը շրջանում 8345 է, որից 4890-ը կամ 58,6 տոկոսը կանայք են: Կոմերիտականների ընդհանուր թվի 35,1 տոկոսը սովորողներ են, իսկ շուրջ 5400 կոմերիտականներ աշխատում են ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում և իրենց արժանի ավանդն են ներդնում շրջանի սոցիալ-տնտեսական խնդիրների իրականացման գործում:

Այժմ աշխատավորական կոլեկտիվներն սկզբնական կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ հայրենանվեր աշխատանք են ծավալել կուսակցության XXV համագումարի պատմական որոշումները, տասներորդ հնգամյակի առաջադրանքները անթերի կատարելու համար:

Ընթացիկ տարին դժվարին եղավ գյուղատնտեսության աշխատողների համար: Ապրիլ ամսին տեղացած առատ ձյունը, դրան հետևած ցրտահարությունները և տևական երաշտը լուրջ վնաս հասցրեցին գյուղատնտեսությանը: Ցրտահարվեցին խաղողի և պտղատու այգիները, երաշտը վնասեց խոտադաշտերը, հացահատիկային կուլտուրաների զգալի տարածությունները:

Ստեղծված ծանր վիճակը չվհատեցրեց շրջանի աշխատավորներին: Աշխատասեր Թալինցին առաջին անգամ չէր, որ նման դժվարության առջև էր կանգնում: Բնական աղետներն ու տևական երաշտները պարբերաբար կրկնվում են բնակլիմայական բարդ ու դժվարին պայմաններ ունեցող մեր լեռնային շըրջանում: Եվ ինչպես միշտ, այս անգամ էլ մեր աշխատավորները կրկնապատկեցին իրենց ուժն ու եռանդը, հնարավոր ամեն ինչ արեցին բնական աղետների հետևանքները վերացնելու համար: Այդ ասպարեզում պլանավորված ու սիստեմատիկ աշխատանք կատարեցին կուսակցության շրջանային կոմիտեն, շրջսովետի գործադիր կոմիտեն և սկզբնական կուսակցական կազմակերպությունները: Առաջին հերթին բարձրացվեց աշխատավորների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մակարդակը, ամենուրեք ուժեղացվեց պահանջկոտությունը կադրերի նկատմամբ:

Շրջանի աշխատավորները այս օրերին լայն թափ են հաղորդել սոցիալիստական մրցությանը՝ ի պատիվ ՍՄԿԿ XXVI համագումարի: Աշխատավորական բոլոր կոլեկտիվներում աշխատավորները նոր, բարձր պարտավորություններ են ստանձնում երկրի կոմունիստների մեծ համաժողովը արժանավայել գործերով ու նվերներով դիմավորելու համար:

Գյուղատնտեսության բնագավառի աշխատողները ժամկետից շուտ, դեռ հոկտեմբերի սկզբին՝ ՍՍՀՄ սահմանադրության օրը կատարել և գերակատարել են պետությանը հացահատիկ, խաղող, կաթ, միս, ձու և գյուղատնտեսական



այլ մթերքներ վաճառելու պլանային առաջադրանքները: Միայն այս տարվա բերքից պետությանն է վաճառվել 10 հազար տոննա խաղող, որն առաջադրանքը գերազանցում է 66 տոկոսով: Ընթացիկ տարում, նախորդ տարվա համեմատությամբ, հեկտարի բերքատվությունն աճել է 6 ցենտներով: Համագումարը լավ ցուցանիշներով են դիմավորում Արտենիի, Քարակերտի, Արագածի, Դալարիկի, Դավթաշենի, Մաստարայի, Կաքավաձորի սովխոզները, Ցամաքասարի, Սուսերի, Վ. Բազմաբերդի, Արեգի, Զարինջայի կոլտնտեսությունները:

Հնգամյակը հաջողությամբ են ավարտում նաև արդյունաբերության ու շինարարության աշխատողները: Նրանք խոստացել են իրենց բոլոր պլանները մինչև նոյեմբերի 29-ը պատվով կատարել: Քարակերտի պահածոների, Թալինի պանրի գործարանները տասներորդ հնգամյակի իրենց առաջադրանքների կատարման մասին զեկուցել են դեռևս մեկ տարի առաջ:

Մինչև տարեվերջ շրջանում կգործարկվեն արտադրական նոր կարողություններ, կուլտուր-կենցաղային օբյեկտներ, դպրոցներ ու մանկապարտեզներ, այդ թվում՝ հանրապետությունում խոշոր էլևատորը՝ տարեկան 60 հազար տոննա հացահատիկ ընդունելու կարողությամբ, Ալագյազի ոչխարաբուծական կոմպլեքսը, կենցաղսպասարկման տունն ու ավտոսպասարկման կայանը շըրջկենտրոնում, բետոնե իրերի կոմբինատը Դալարիկ ավանում, Ոսկեթասի դըպրոցը և այլն:

Թալինը զարգացման մեծ հեռանկար ունեցող շրջաններից է: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ու կառավարության ամենօրյա հոգատարության ու եռանդուն ջանքերի շնորհիվ, Թալինի շրջանն ավելի կզարգանա տասնմեկերորդ հնգամյակում: Հատկապես մեծ են գյուղատնտեսության զարգացման հնարավորությունները: Առաջիկա տարիներին կընդարձակվեն ոռոգելի հողատարածությունները: Ախուրյանի ջրամբարի շահագործմամբ նախկինում ամայի ու անմշակ 15 հազար հեկտար հողատարածություններում կտնկավորվեն նոր այգիներ, կստեղծվեն տասնյակ այգեգործական նոր տնտեսություններ:

Ախուրյանի ջրամբարի ջրերը ջրհան կայանների միջոցով բարձրացնելու և շրջանում կառուցվող ու վերանորոգվող տասնյակ ջրամբարների շնորհիվ հնարավոր կլինի ոռոգելի դարձնել շրջանի լեռնային գոտու տնտեսությունների շուրջ 10 հազար հեկտար հողատարածություններ: Կավելացվեն բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունները, կամրապնդվի կերային բազան, հնարավորություն կստեղծվի զարգացնելու կաթնային տնտեսությունները, ստեղծելու մատղաշի աճեցման միջտնտեսային ձեռնարկություններ, զգալիորեն բարձրացնելու անասունների մթերատվությունը:

Առաջիկայում մեծ թափով զարգանալու է շրջանի արդյունաբերությունը: Կկառուցվեն նոր գործարաններ, ֆաբրիկաներ և արտադրական այլ կարողություններ: Արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղեր կհիմնադրվեն շրջանի մի շարք բնակավայրերում: Գյուղերում և ավաններում կբացվեն նոր դպրոցներ, ակումբներ, կուլտուր-կենցաղային մի շարք օբյեկտներ:

«Խավարից լույսի ենք հասել, ավերից ու կոտորածից, սովից ու համաճարակից՝ ունևոր ու երջանիկ կյանքի: Թող հաստատ մնա ռուսի օրենքը, բոլշևիկի օրենքը, Լենինի օրենքը»: Օրերս զրույցի ժամանակ այսպես արտահայտվեց Դավթաշեն գյուղի բնակիչ 82-ամյա Գևորգ Մելքոնյանը:

Արյունոտ յաթաղանից հրաշքով փրկված այս ծեր սասունցու համար չկա ավելի մեծ երջանկություն, քան իր բախտը կապել ռուս ժողովրդի հետ, լենինյան գաղափարների հետ, տեսնել և ապրել սոցիալիստական կարգերի վեհությունը:

Հայ ժողովրդի վերածննդի 60 տարիների բարձունքից արժեքավորելով մեր հիրավի մեծ հասումները, ոգևորված գալիքի պայծառ հեռանկարներով, Թալինի շրջանի աշխատավորները կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ այսուհետ ևս ջանք ու եռանդ չեն խնայի՝ բազմապատկելու շրջանի հոգևոր ու նյութական հարստությունը, ավելի շեն ու ունևոր դարձնելու մեր մարդկանց կյանքը, իրենց արժանի ավանդը ներդնելու մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման վեհ ու ազնիվ գործում:

## Սոցիալիզմը և կուլտուրան

# ԺՈՂՈՎՐԴԻ ՀՈԳԵՎՈՐ ԱՐԺԵՔՆԵՐԸ՝ ԺՈՂՈՎՐԴԻՆ

Լ. Ս. ԽԱՉԻԿՅԱՆ
Մաշտոցի անվան հին ձեռագրերի ինստիտուտ «Մատենադարանի» դիրեկտոր, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

1920 Թ. ՆՈՅԵՄԲԵՐԻ 29-ից հազիվ էր անցել կես ամիս, երբ հրապարակվեց Հայաստանի Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության Հեղկոմի հրամանագիրը՝ կուլտուր-կրթական բոլոր հիմնարկությունների հետ միասին նաև Էջմիածնի մատենադարանի պետականացման մասին: Այդ հրամանագրով մի նոր դարաշրջան սկսվեց հազարամյա նախապատմություն ունեցող Մատենադարանի համար: Նախորդ բոլոր դարերում մեր մատենադարանի հիմքը հանդիսացող Էջմիածնի գրատունը, միջնադարյան Հայաստանի բոլոր գրատների պես, գոյատևման տևական պայքար է մղել օտար բարբարոս նվաճողների և տգետ վանականների դեմ: Եղել են բարենպաստ տարիներ և այնտեղ համախմբվել են գրասեր մտավորականներ ու շնորհալի գրիչներ, ստեղծվել են նոր ձեռագրեր, ուրիշ վայրերից հավաքվել արժեքավոր մատյաններ (այդպես էր, օրինակ, Հակոբ Ջուղայեցի կաթողիկոսի գահակալության տարիներին՝ 1655—1680 թթ.), սակայն դրանց հաջորդել են ասպատակությունների-ավարառությունների դժնդակ տասնամյակներ ու մի հարվածով ի չիք են դարձել սերունդների քրտնաջան աշխատանքի արդյունքները: 1810-ական թվականներին գրած իր մի նամակում նշանավոր եկեղեցական-քաղաքական գործիչ Ներսես Աշտարակեցին հայտնում է, որ «մեր օրերում ավարի մատնվեց Արարատյան աթոռ կաթողիկե Էջմիածնի բազմահարուստ գրատունը», իսկ մեկ ուրիշը լրացնում նրան այսպիսի տողերով. «անդադրում նվաճումների և սրածությունների շնորհիվ հայ ազգն ու նրա գրականությունը այն չափով սպառված ու ոչնչացված են եղել, որ հազարավոր գրքերից հազիվ մի հազար հատ ժառանգություն է մնացել մեզ մեր նախնիներից»:

Ձեռագրական գանձերի հավաքման և ցուցակագրման աշխատանքները սկսում են կազմակերպված բնույթ կրել 1828 թ. հետո, երբ Արևելյան Հայաստանն ազատագրվում է պարսկական լծից և իր բախտը հավերժորեն կապում Ռուսաստանի հետ: Էջմիածնի մատենադարանը գրավում է հայ և օտարազգի առաջադեմ մտավորականների ուշադրությունը. ջանքեր են գործադրվում տարբեր վայրերից արժեքավոր նոր մատյաններ հավաքելու, դրանք ցուցակագրելու նպատակով և այլն: Առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին ձեռագրերի թիվը Մատենադարանում հասնում է 4660 միավորի. ձեռագրական հավաքածուներ են ստեղծվում նաև Անդրկովկասի ու Ռուսաստանի հայաբնակ այլ վայրերում:

1915 թ. հայ ժողովրդի գլխին պայթում է մեծ աղետը. իմպերիալիստական պետությունների թողտվությամբ իրենց «երիտասարդ թուրքեր» կոչող արյունարբու բանդան տնավեր ու բնավեր է անում Արևմտյան Հայաստանի հայությանը, մարդկային պատմության մեջ չըգրանցված վայրագությամբ բնաջնջում միլիոնավոր մարդկանց: Հողին են հավասարեցվում հայ մշակույթի հարյուրավոր կենտրոններ՝ գրադարաններ, դպրոցներ, վանական հաստատություններ. կրակի ճարակ են դառնում համաշխարհային արժեք ներկայացնող մի քանի հազար փառահեղ ձեռագրեր և թանգարանային անգնահատելի արժեքներ: Մեծ զոհողությունների գնով հաջողվում է փրկել պատմական Հայաստանի սակավաթիվ մշակութային կենտրոնների (Կարին, Վան, Աղթամար, Վարագ, Լիմ, Կտուց և այլն) ձեռագրերի մի մասը: Էջմիածնի ձեռագրերի բուն հավաքածուն ժամանակավորապես փոխադրվում է Մոսկվա, պատերազմական գործողություններից հեռու՝ ապահով պահվելու համար: Դժնդակ այս պայմաններում էր գտնվում, ահա, հայ ձեռագրական հուշարձանների ամենախոշոր գանձատունը՝ Էջմիածնի մատենադարանը, երբ ավերված ու բզկտված Հայաստան երկրի վրա ծածանվեց ազատարար կարմիր դրոշը:

Ժողովրդի սեփականությունը դարձած մատենադարանի առջև դրվեցին հսկայական գիտական ու գործնական նշանակություն ունեցող խնդիրներ, և առաջին հերթին, անշուշտ, հրաշքով փրկված ու ցիրուցան եղած ձեռագիր մատյանների որոնման, փրկագնման, հայրենի մատենադարան փոխադրելու և ապահով ու խնամքով պահելու մեծ խնդիրը:

Հոբելյանական այս օրերին կարելի է անվարան հայտարարել, որ Հայաստանի կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ամենօրյա հոգատար ղեկավարությամբ Մատենադարանի անձնակազմը անցած 60 տարիների ընթացքում պատվով է կատարել իր առջև դրված խնդիրները: 1922 թ. Մոսկվայից անկորուստ (նույնիսկ հավելումով) Հայաստան է փոխադրվում Էջմիածնի ձեռագրական հավաքածուն, այնուհետև հայրենադարձվում են Մոսկվայի Լազարյան ճեմարանին, Նոր Նախիջևանի հայկական համայնքին, Թիֆլիզի հայկական ազգագրական ընկերությանն ու Ներսիսյան դպրոցին, Աստրախանի առաջնորդարանին և հայաբնակ այլ վայրերի ուրիշ բազմաթիվ հաստատությունների պատկանող ձեռագրական մեծ ու փոքր հավաքածուները: Հավաքչական աշխատանքը շարունակվում է նաև այսօր. վերջին երկու տասնամյակների ընթացքում ձեռագրերի հոսք է սկսվել նաև արտասահմանյան հայկական գաղթօջախներից. հայրենասիրական այդ գործի շուրջը համախմբվել են հայ մշակութային հուշարձանների արժեքը գիտակցող և դրանց հավաքման համար նյութական միջոցներ չխնայող մի շարք նվիրյալներ:

Այսօր Մատենադարանում պահվում է 16 հազարից ավելի ձեռագրական միավոր, որից 10830-ը հայերեն ամբողջական ձեռագրեր, 2500-ը օտարալեզու ձեռագրեր, իսկ մյուս մասը՝ պատառիկներ, հմայիլներ և այլն: Ըստ այդմ Մատենադարանի միայն ձեռագրերի հավաքածուն սովետական իշխանության տարիներին եռապատկվել է: Եվ այդ հավելումը ո՛չ միայն քանակային ցուցանիշ է. նոր ձեռք բերված ձեռագրերի շարքում կան արվեստի հրաշալիքներ. Թորոս Ռոսլինի և Սարգիս Պիծակի ստեղծագործությունները, պատմագրական, փիլիսոփայական, գեղարվեստական, բժշկագիտական, տիեզերագիտական բացառիկ գիտական արժեք ունեցող հարյուրավոր ընտիր ձեռագրեր: Համապատասխանաբար հարստացել են նաև Մատենադարանի մյուս հավաքածուները՝ արխիվային փաստաթղթերը, հնատիպ գրքերի բաժինը և հայագիտական գրադարանը: Այսպիսով, Մատենադարանը դարձել է հազարամյա հայ մշակույթի ոսկե ֆոնդի խոշորագույն պահեստարանը:

Ձեռագրեր ընդօրինակող գրիչներն ու ծաղկող մանրանկարիչներն իրենց հիշատակարաններում մեջ բազմիցս աղերսագին դիմումներ են հղել մեծ զոհողությունների գնով ստեղծվող արժեքների ապագա տերերին՝ խնդրելով գուրգուրանքով խնամել ձեռագրերը, հեռու պահել ջրից ու կրակից, մաքուր լաթով բռնել, թուղթ չկտրել և այլն: Իսկ ամենից ավելի աղերսել են՝ փակ չպահել և կույր չդարձնել գիրքը, քանի որ այն ստեղծվում է ընթերցանության համար, ուստի սիրով և պատրաստակամությամբ պետք է տրվի բոլոր նրանց, ովքեր կարդալու կամ ընդօրինակելու ցանկություն ունեն: Այս դիմումները ցանկալի արդյունք քիչ են տվել: Միջնադարյան վանքերին կից գրատներում ու պահեստներում, ինչպես և մասնավոր անձանց բնակարաններում, վատ խնամքի ու պահպանության անբարենպաստ պայմանների հետևանքով վնասվում և ոչնչացվում էին հազարավոր ձեռագրեր: Այդ մասին կան բազմաթիվ ստուգապատում վկայություններ: Այսպես, հայտնի է, որ 16-րդ դարի կեսերին Մշո Սուրբ Կարապետ վանքի վանականները բազմաթիվ ձեռագրեր պահել են վանքի խոնավ դարանում: Երբ տարիներ անց բացում են այն և տեսնում, որ փթել են բոլոր գրքերն ու դարձել անօգտագործելի, թաղում են դրանք հողի մեջ («ամփոփեցին ի հողն»): Բարեբախտաբար, հայտնվում է գրասեր մի անձնավորություն, պեղում է դրանք, հանձնում մի փորձված նորոգողի և, ի թիվս այլ ձեռագրերի, փրկում նաև մանրանկարչական փառահեղ մի ձեռագիր, որն այսօր իր արժանի տեղն է գրավել հայ մանրանկարչության պատմության մեջ: Տգետ վանականների կողմից մեծաքանակ ձեռագրերի ոչնչացման բազմաթիվ փաստերից հիշատակենք նաև Հաղբատի վանքի գրատան պատմության հետ առնչվող տխուր փաստը: Վանքի մեծահարուստ գրադարանի գրքերի մեծ մասը, հնագույն ժամանակներից սկսած, պահվելիս է եղել դժվարամատչ քարանձավներում: 1777 թ. մտակույր մի առաջնորդի հրամանով հանվել են ջրաղացի ձորի մեծ քարայրում պահվող անհամար ձեռագրերը. ամբողջական մնացածները հափշտակվել են տարբեր մարդկանց կողմից, իսկ հնագույն՝ մաշված ու թերի մատյանները՝ կիտել են իրար վրա ու դարձրել

հրո ճարակ. «Ժողովեալ առ հասարակ հանդէպ զանգատան դրան իբրեւ տասն կամ երկոտասան ոտնաչափ թանձրութեամբ, հուր էարկ եւ այրեաց զամենայն իբրեւ զանպիտան»,— գրում է ժամանակակից պատմիչը: Նման դեպքեր տեղի են ունեցել նաև Սևանի վանքում, Տաթևում և այլուր:

Էջմիածնի Մատենադարանի ձեռագիր արժեքների պահպանության վիճակը բարվոքելու մասին անցյալում շատ է խոսվել. «Մի քանի հարյուրյակ բավական է բոլորովին չար Անհիմանի ձեռքից փրկելու այն թանգարանը, որի իսկական արժեքը գնահատել միայն ապագային է թողյալ», գրել է ականավոր հայագետ Ն. Մառը 1893 թ., սակայն այդ «չար Անհիմանն» իր չար գործը կատարել է անդադրում, նույնիսկ 1910 թ. հետո, երբ Էջմիածնում կառուցվեց Մատենադարանի համար հատուկ շենք՝ ձեռագրերի պահպանության պայմաններին անհամապատասխան իր գրապահոցով:

Գիտական պահպանության մեծ կարևորություն ունեցող խնդիրը նույնպես լուծվեց սովետական իշխանության տարիներին: 1939 թ. Մատենադարանը փոխադրվեց Երևան. ձեռագրերը ժամանակավորապես ապահով կայան գտան Ալ. Մյասնիկյանի անվան գրադարանի օդառատ ու գեղեցիկ կենտրոնական սրահում: Դարերի ընթացքում ձեռք բերած «հիվանդությունների» բուժման, ախտահանման, վերանորոգման ու վերակազմման նպատակով ստեղծվեց հատուկ բաժին, որը համալրվեց կարող մասնագետներով (քիմիկոս, միկրոբիոլոգ, հըմուտ վերականգնողներ և ուրիշներ): Այդ, սակայն, մեծ գործի սկիզբն էր միայն: Դեռ չէր ավարտվել սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմը, դեռ տուն չէին վերադարձել պատերազմ մեկնած մատենադարանցիները, երբ Սովետական Հայաստանի կառավարության հատուկ որոշմամբ սկսվեցին Մատենադարանի նոր, հոյակապ շենքի կառուցման աշխատանքները: Այդ շենքը կանգուն է արդեն երկու տասնամյակից ավելի ու դարձել է Հայաստանի ծաղկուն մայրաքաղաքի ճարտարապետական հրաշալիքներից մեկը: Եվ այստեղ ստեղծվել են այնպիսի կատարյալ պայմաններ ձեռագիր հուշարձանների պահպանության համար, որ ընդօրինակվում են նույնիսկ շատ ավելի բախտավոր անցյալ ունեցող ժողովուրդների կողմից:

Փոխադրվելով նոր շենք, Մատենադարանը թևակոխեց իր պատմության նոր՝ ամենաարգասավոր շրջանը. գրապահոց-մատենադարանի հիմքի վրա ստեղծվեց Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր հին ձեռագրերի գիտահետազոտական ինստիտուտ՝ Մատենադարանը, որը հետագայում (Մաշտոցի ծննդյան 1600-ամյա հոբելյանի օրերին) ստացավ հայկական այբուբենի ստեղծող և գրականության հիմնադիր մեծ Մաշտոցի անունը: Գիտահետազոտական որոշ աշխատանքներ Մատենադարանում կատարվել էին նաև դրանից առաջ, սակայն հին ձեռագրերի ինստիտուտ դառնալուց, ինչպես նաև համապատասխան կադրերով համալրվելուց և նոր երիտասարդ մասնագետներ պատրաստելու հնարավորություններ ձեռք բերելուց հետո միայն աննախընթաց ծավալ ստացան Մատենադարանի ձեռագրերում ամբարված նյութերի ուսումնասիրության և գիտական հրատարակության ասպարեզում տարվող աշխատանքները: Մատենադարանը դարձավ Սովետական Միության աղբյուրագիտական ճանաչված կենտրոններից մեկը:

Մեկ հոդվածով անհնար է նույնիսկ ընդհանուր գաղափար տալ այն մասին, թե ինչ է արվել Մատենադարանում ձեռագրական սկզբնաղբյուրների ուսումնասիրության ու հրապարակման բնագավառում: Տպագրվել են հարյուրից ավելի գրքեր, շուրջ երկու հազար մեծ ու փոքր հոդվածներ, որոնք վերաբերում են միջնադարյան հայ գրականության բոլոր մարզերին: Մաշտոցի անվան Մատենադարանի անձնակազմը կոչված էր ո՛չ միայն շարունակելու հայ բանասերների նախորդ սերնդի սկսած գործը հայ պատմագիրների, բանաստեղծների և մատենագրության այլ բնագավառներում ստեղծագործած միջնադարյան գիտնականների ժառանգության ուսումնասիրության ուղղությամբ, այլև մարքս-լենինյան գաղափարախոսության դիրքերից վերագնահատելու այդ ժառանգությունը, ընդարձակելու հայ աղբյուրագիտության ավանդական սահմանները, գիտահետազոտական աշխատանքների ոլորտի մեջ առնելով մինչև հեղափոխությունն անտեսված, բայց աշխատավոր ժողովրդի հոգևոր ու նյութական կյանքի պայմանների ուսումնասիրության առումով առաջնային նշանակություն ունեցող ձեռագիր սկզբնաղբյուրները: Այդ աշխատանքները ծավալելու նախապայմանը մեծ չափով կապված էր ձեռագրական ողջ հավաքածուի գիտական նկարագրության հետ: Նկատի ունենալով այդ հանգամանքը՝ Մատենադարանի մի խումբ աշխատակիցների ջանքերով կազմվեցին նախ ուղեցույց ցանկեր— պատմագրության, փիլիսոփայության, գեղարվեստական գրականության, տիեզերագիտության, բժշկության և գիտության այլ բնագավառների մասին ձեռագրերում առկա նյութերի, այնուհետև երկու ընդարձակ հատորներով հրապարակվեցին հայերեն բոլոր ձեռագրերի համառոտ նկարագրությունները, և դրանից



հետո սկսվեց մանրակրկիտ մայր ցուցակի ըստեղծման դժվարին աշխատանքը:

Հոբելյանական այս օրերին ուրախությամբ կարող ենք ծանուցել մեր ընթերցողներին, որ պատրաստ են արդեն Մատենադարանի հայերեն ձեռագրերի մայր ցուցակի 3 հատորները, և որ դրանք իրենց բովանդակությամբ ու սկզբունքներով գերազանցում են մինչև օրս հրապարակված բոլոր նմանատիպ ցուցակները: Այս ցուցակի միջոցով գիտական շրջանառության մեջ են դրվելու մինչև օրս անհայտ մնացած հազարավոր նյութ-միավորներ, որոնք մեծապես կհարստացնեն մեր գիտելիքները միջնադարյան հայ մատենագրության տարողության ու գիտական նշանակության մասին: Ցավով պետք է նշել, որ ստեղծվել են որոշ դժվարություններ արդեն պատրաստի այդ հատորները պոլիգրաֆիական բարձր մակարդակով տպագրելու ճանապարհին, սակայն պետք չէ տարակուսել, որ դրանք առաջիկայում կհաղթահարվեն:

Ողջ միջնադարի ընթացքում Հայաստանի տարբեր նահանգներում և հայկական գաղթավայրերում ապրել ու ստեղծագործել են հարյուրից ավելի պատմագիրներ ու ժամանակագիրներ, որոնց գրվածքներում առաջնակարգ նյութեր կան ո՛չ միայն Հայաստանի ու Անդրկովկասի, այլև բոլոր այն երկրների մասին, որոնց հետ քաղաքական, տնտեսական ու մշակութային կապեր են ունեցել մեր նախնիները: Պատմագրական այդ հուշարձանների մեծ մասը հրատարակված է եղել անցյալում, դրանց զգալի մասը թարգմանվել է նաև օտար լեզուներով: Օրինակելի ավանդույթներ ունեցող այս գործը, աղբյուրագիտական արդի պահանջներին համապատասխան, շարունակվել է մեր օրերում, Մատենադարանի աշխատակիցների ջանքերով: Ամեն մի պատմագրական երկի բոլոր մեզ հասած ձեռագիր ընդօրինակությունների բաղդատությամբ և հանգամանալից ներածական ուսումնասիրություններով հրապարակվել են արդեն Եղիշեի, Սեբեոսի, Արիստակես Լաստիվերցու, Անանուն զրուցագրի, Կիրակոս Գանձակեցու, Աբրահամ Կրետացու և այլ հեղինակների պատմագիտական երկերը: Մասամբ պատրաստ են, մասամբ էլ ընթացքի մեջ են նաև այլ պատմագիրների՝ Փավստոս Բուզանդի, Մովսես Կաղանկատվացու, Սամվել Անեցու, Վարդան Արևելցու, Գրիգոր Ակնեցու, Մխիթար Այրիվանեցու, Թովմա Մեծոփեցու, Առաքել Դավրիժեցու և ուրիշների երկերի գիտական բնագրերը:

Դրան զուգընթաց մեծ աշխատանք է կատարված հայերեն ձեռագրերի հիշատակարանների հրատարակության ուղղությամբ: Հիշատակարանները, գրված լինելով պատմական անցուդարձերին ժամանակակից ու ականատես չարքաշ մշակների՝ գրիչների և ծաղկողների կողմից, պարունակում են բացառիկ արժեքավոր ու արժանահավատ տեղեկություններ աշխատավոր ժողովրդի կյանքի ու կենցաղի, օտար բռնակալների կազմակերպած հարատև աշխարհակործան արշավանքների, իր ազգային դիմագիծն ու մշակութային ավանդույթները պահպանելու համար ժողովրդի մղած հերոսական պայքարի մասին: Հրատարակվել են արդեն 14 և 15-րդ դարերի հիշատակարանները ամբողջապես, 17-րդ դարի հիշատակարանների մի մասը, հրատարակության ընթացքի մեջ են 5—13-րդ դարերի հիշատակարանները, պատրաստվում են հրատարակության մյուս դարերի համապատասխան նյութերը: Պատմական կարևորագույն սկզբնաղբյուրներ են նաև միջնադարյան Հայաստանի հոգևոր ու աշխարհիկ գործիչների շարադրած պաշտոնական գրությունները՝ կոնդակներ, շրջաբերականներ, նամակներ, ինչպես նաև վանական հաստատությունների ու ֆեոդալական գերդաստանների կալվածքների, եկամտաբեր այլ հաստատությունների մասին հայերեն և օտար լեզուներով պահպանված հրովարտակները, կալվածագրերը և նմանատիպ այլ փաստաթղթեր: Ծավալուն աշխատանք է կատարված նաև այդ նյութերի գիտական ուսումնասիրության և հրապարակման մարզում: Հրապարակվել են մասնավորապես Մատենադարանի պարսկերեն հրովարտակները և Մատենադարանի պարսկերեն կալվածագրերը խորագրով մեծարժեք հատորները, շուտով հրատարակության են հանձնվելու Դիվան հայ պատմության վերականգնվող մատենաշարի հերթական համարները:

Մատենադարանի գիտական անձնակազմի ուշադրության կենտրոնում են գտնվել նաև միջնադարյան Հայաստանի իրավունքի պատմության սկզբնաղբյուրները: Պատշաճ գիտական ուսումնասիրությամբ և ծանոթագրություններով հրատարակվել են Մխիթար Գոշի Գիրք դատաստանի նշանավոր երկի նախնական ու համառոտ խմբագրությունները, Կանոնագիրք Հայոց կոչվող եկեղեցական կանոնների երկհատոր ժողովածուն (Հայկ. ՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի կողմից) և Հարավային Ռուսաստանի հայկական գաղթօջախների ինքնավար համայնքների համար ստեղծված դատաստանագիրքը, որ հայտնի է գիտությանը Աստրախանի հայոց դատաստանագիրք անունով:

Ողջ միջնադարի ընթացքում, իսկ շատ ավելի մեծ ծավալով 17—18-րդ դարերում, Հայաստանի քաղաքներն ու հարևան երկրների վաճառաշահ կենտրոնները մեծ դեր են կատա-

տական շրջանի այլ նշանավոր հեղինակների շատ աշխատություններ. դրանց շարքում հատուկ արժեք են ստանում պատկառելի քանակ կազմող այն երկերի թարգմանությունները, որոնց հունարեն կամ ասորերեն բնագրերը կորուստի են մատնվել: Հայ թարգմանական գրականությունը նշանակալից արդյունքներ է տվել նաև հետագա դարերում: 10-րդ դարից սկսած թարգմանություններ են կատարվել նաև արաբերենից, ապա՝ լատիներենից, իսկ 16—17-րդ դարերում երևան են եկել նաև գիտական ու գեղարվեստական ուշագրավ աշխատությունների թարգմանություններ՝ կատարված իտալերենից, ֆրանսերենից, լեհերենից, ռուսերենից, իսպաներենից և եվրոպական այլ լեզուներից:

Թարգմանական գրականության հուշարձանների մի փոքր մասն է միայն գիտական պատշաճ մակարդակով ուսումնասիրված ու հրատարակված: Այս բնագավառում հսկայական անելիքներ կան, անսպառ աշխատանք, որ կատարելու են հաջորդ սերնդի ներկայացուցիչները: Սակայն մեծ գործի սկիզբը դրված է արդեն. լույս են տեսել Արիստոտելի Ստորոգությանց 6-րդ դարի Անհայտ մեկնիչի աշխատության հայերեն թարգմանությունը, Զենոն Իմաստասերին և Հերմես Եռամեծին վերագրված երկերը և այլն. շուտով տպագրության կհանձնվեն հայ դասական թարգմանություններից Ծննդոց և Մակաբայեցոց գրքերի գիտական բնագրերը, Բարսեղ Կեսարացու Վեցօրեայքի բնագիրը և թարգմանական այլ հուշարձաններ:

Աշխատանքի բնագավառների համառոտ այս թվարկումն իսկ բավական է՝ ուրվագծելու Մատենադարանում տարվող աղբյուրագիտական-հետազոտական աշխատանքների սահմանները բացահայտելու դրանց գիտական նշանակությունը հայ միջնադարյան մատենագրության համակողմանի ուսումնասիրության համար: Պատկերը, սակայն, թերի կլիներ, եթե մի քանի խոսք չասեինք ձեռագրական նշանավոր հուշարձանների ռուսերեն թարգմանությունների մասին, այսինքն՝ կարևոր այն աշխատանքի, որի շնորհիվ միայն հայ մատենագրության գանձերը դուրս են բերվում գիտական նեղ շրջանակներից, մատչելի դառնում հայ և օտարազգի ընթերցող հասարակայնությանը:

Գրաբարագետ-ռուսագետ բանասերների Մատենադարանում աշխատող խումբը, որ տարիների համառ աշխատանքով հմտացել է իր մասնագիտության մեջ, զգալի գործ է կատարել հայ փիլիսոփայական հուշարձանների, պատմական-վարքաբանական բնագրերի, բնագիտական ու բժշկական աշխատությունների բարձրորակ թարգմանություններ կատարելու ուղղությամբ: Ռուսերեն թարգմանվել և լույս են տեսել Դավիթ Անհաղթի, Վահրամ Ռաբունու, Հովհան Որոտնեցու և այլ իմաստասերների մի շարք աշխատություններ, Անանիա Շիրակացու տիեզերագիտական գրվածքների հատընտիր ժողովածուն, հայ պատմագիրներից Կորյունի, Եղիշեի, Անանուն գրուցագրի, Արիստակես Լաստիվերցու, Կիրակոս Գանձակեցու, Առաքել Դավրիժեցու, Զաքարիա Սարկավագի, Սիմեոն Լեհացու, Աբրահամ Կրետացու պատմական գրվածքները, հայ վարքաբանական գրականության լավագույն նմուշների մի հատոր, մի ամբողջ շարք բնագիտական-բժշկական երկեր և այլն: Այդ աշխատանքը շարունակում է ծավալվել. շուտով ավարտվելու և տպագրության են հանձնվելու Ղազար Փարպեցու, Հովհաննես Դրասխանակերտցու, Հովհան Մամիկոնյանի, Գրիգոր Դարանաղցու պատմագրական երկերի, Ամիրդովլաթ Ամասիացու Անգիտաց անպետ և միջնադարյան այլ նշանավոր գիտական ու գրական հուշարձանների թարգմանությունները: Ուշադրության կենտրոնում է Գրիգոր Նարեկացու Մատեան ողբերգութեան հանճարեղ ստեղծագործության առողջ ռուսերեն թարգմանության աշխատանքը, իր ավարտին է մոտենում և Մովսես Խորենացու Հայոց պատմության ռուսերեն նոր թարգմանությունը:

Շեշտում ենք հայ հին գրականության այս երկու հսկաների գլուխգործոցների թարգմանության նպատակով տարվող աշխատանքների հույժ կարևորությունը: 1962 թ. Կորյունի Վարք Մաշտոցի երկի թարգմանությամբ և Մեսրոպ Մաշտոցի մասին մի շարք հոդվածների հրատարակությամբ համապատասխան պայմաններ ստեղծվեցին շուքով ու խանդավառությամբ տոնելու մեծ երախտավորի ծննդյան 1600-ամյա հոբելյանը, որը վիթխարի նշանակություն ունեցավ հայ մշակույթի առաջավոր ավանդույթների պրոպագանդման համար: Անտարակույս, առաջիկայում, երբ պատրաստ կլինեն վերոհիշյալ ստեղծագործությունների գիտական բնագրերը, ռուսերեն թարգմանությունները և մի շարք ուսումնասիրություններ նրանց մասին, հնարավորություններ կստեղծվեն նշելու նաև Մովսես Խորենացու Պատմության 1500 և Ողբերգության մատյանի 1000-ամյակը: Այդ հուշարձանները մեծապես կնպաստեն հայ պատմահոր և մեծ բանաստեղծ Նարեկացու անմահ ստեղծագործությունների ըստ արժանվույն գնահատման և համայն մարդկության սեփականությունը դարձնելու վեհ գործին:

Միջնադարյան մեր նշանավոր մատենագիրների հոբելյանները գիտականորեն նախապատրաստելու խնդիրը միշտ էլ Մատենադարանի անձնակազմը համարել է իր կարևորագույն գործը, ձեռք բերված գիտական արդյունքների ծանուցման և տարածման արգասավոր ուղիներից մեկը: Ահա ինչու Մատենադարանում վերջին մի քանի տարիների ընթացքում հոբելյանական գիտական նստաշրջաններ են գումարվել՝ նվիրված Ներսես Շնորհալուն, Մխիթար Գոշին, Մխիթար Հերացուն, Հովնաթան Նաղաշին և հայ մշակույթի այլ երախտավորների, ինչպես նաև հիշարժան պատմաքաղաքական կարևոր անցուդարձերին: Առաջիկայում այդպիսի նստաշրջաններ են գումարվելու նաև՝ նվիրված հայ ձեռագրական մշակույթի ամենաարժեքավոր նմուշներին: 1981 թ., օրինակ, լրանում է հազարամյակը հայերեն հնագույն թղթյա ձեռագրի, որը հայտնի է գիտական աշխարհին նաև իր ճոխ բովանդակությամբ: Անհրաժեշտ աշխատանքներ են կատարվում՝ հրատարակելու այդ բացառիկ բնագրի լուսատիպ նմանահանությունը և պատշաճ ուսումնասիրություն դրա աղբյուրագիտական և հնագրական նշանակության մասին:

Սրանք են աղբյուրագիտական և ձեռագրագիտական աշխատանքների հիմնական ուղղությունները, որոնց շուրջ համախմբվել է Մատենադարանի գիտական անձնակազմը: Սակայն կատարված աշխատանքի պատկերն անկատար կլինի, եթե հաշվի չառնենք ուշագրավ մի հանգամանք ևս: Տարիներ շարունակ զբաղված լինելով ձեռագիր բնագրերի ուսումնասիրության, ձեռագրերի գիտական նկարագրության և հարակից աշխատանքներով, Մատենադարանի աշխատակիցներից շատերը, աղբյուրագիտական ուսումնասիրություններից զատ, գրել են նաև արժեքավոր մենագրություններ, մշակել հայ ժողովրդի քաղաքական, տնտեսական և մշակութային կյանքի դեռևս չլուսաբանված շատ պրոբլեմներ: Փիլիսոփայական գիտության ձևավորումը հին Հայաստանում, Մեսրոպ Մաշտոցի կյանքն ու գործունեությունը, Աղվանից աշխարհի գրականությունը, Հողային հարաբերությունները միջնադարյան Հայաստանում, Զաքարյան Հայաստանի իրավա-քաղաքական ստատուսը, 18-րդ դարի հայ գեղարվեստական գրականության առանձնահատկությունները— ահա այդ ուսումնասիրությունների ոչ լրիվ ցանկը: Եվ դրանով է բացատրվում նաև այն հանգամանքը. որ Մատենադարանի աշխատակիցներից շատերը ամենագործուն մասնակցություն են ունեցել ՍՍՀՄ գիտական կենտրոնների և Հայկական ՍՍՀ ԳԱ հասարակագիտական ինստիտուտների նախաձեռնությամբ ստեղծվող կապիտալ աշխատությունների շարադրման գործում. գրել են Հայ ժողովրդի պատմություն, Հայ նոր գրականության պատմություն բազմահատորյակների և կոլեկտիվ այլ աշխատությունների կարևոր մի շարք բաժիններ, Հայկական սովետական հանրագիտարանի բազմաթիվ հոդվածներ և այլն: ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի մակնիշով հրատարակվող Памятники письменности Востока մատենաշարի մի շարք հատորներ հրատարակության են պատրաստել Մատենադարանի գիտական աշխատողները և այլն:

Մատենադարանը համընդհանուր ճանաչում է գտել Հայաստանում և նրա սահմաններից դուրս նաև իր ցուցասրահով, որի այցելուները հնարավորություն են ստանում միջնադարյան ձեռագրական հուշարձանների ընտիր նմուշների միջոցով գաղափար կազմելու հայերեն ձեռագրերի բովանդակության, ձևավորման ու նկարազարդման սկզբունքների և գիտական նշանակության մասին: Նոր շենքի կառուցումից անցել է ընդամենը 23 տարի, այդ ընթացքում Մատենադարան են այցելել մոտ մեկ միլիոն հետաքրքրասեր մարդիկ՝ աշխարհի տարբեր մայրցամաքներից: Նրանցից շատերը հիացական խոսքեր են ասել այն բացառիկ հոգածության մասին, որով շրջապատված են 60 տարի առաջ իսպառ ոչնչացման վտանգի տակ եղող անգնահատելի ձեռագրական հուշարձանները, որ այսօր բացառիկ խնամքով պահվում են Մատենադարանում:

Տոնելով իր վերածննդի մեծ հոբելյանը՝ հայ ժողովուրդն իրավամբ հպարտանում է ո՛չ միայն ժողովրդական տնտեսության տարբեր մարզերում ձեռք բերած վիթխարի հաջողություններով, այլև իր մշակութային ժառանգության պահպանության և ուսումնասիրության համար ստեղծված հիանալի պայմաններով: «Խոր հիացմունք է պատճառում այն հոգատարությունը, որով սոցիալիստական Հայաստանը պահպանում է իր ժողովրդի հին մշակույթի փառահեղ հուշարձանները՝ դարձնելով դրանք մատչելի արդի և գալիք սերունդներին»,— Մատենադարանի պատվավոր հյուրերի հուշամատյանում գրել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևը: Այս բարձր գնահատականը ոգևորության անսպառ աղբյուր է Մատենադարանի աշխատակիցների համար, և նրանք պարտքի խոր գիտակցությամբ ու կրկնապատկված եռանդով շարունակում են իրենց նպաստը բերել վերածնված հայ ժողովրդի հազարամյա մշակույթի մեծարժեք հուշարձանների՝ ձեռագիր մատյանների, գիտական պահպանության և խորազնին ուսումնասիրության մեծ գործին:

## Հանուն մարդու բարօրության

# ՀԱՄԵՍՏ ՎԵՀՈՒԹՅՈՒՆ

ՌԱՖԱՅԵԼ ԱՐԱԼՅԱՆ

ՄԵՂՄ ՈՒ ԽԱՂԱՂ մի լույս է ճառագում նրա փոքր-ինչ գունատ դեմքին։ Հոգնած աչքերի մեջ փայլատակում է վստահության ու իմաստության առինքնող և հուսադրող մի արտահայտություն։ Նայելով նրան, ակամա համակվում ես լավատեսությամբ ու անկեղծությամբ։ Զարմանալի՜ է։ Արդյոք մարդ ի ծնե՞ այդպիսին է լինում, թե՞ կյանքի, աշխատանքի, տարիների հետ ստացած բարեմասնություն է այդ։ Հավանաբար երկուսի զուգակցումը։ Եվ, սակայն, որտեղից էլ, երբ էլ եկել է այդ խաղաղ իմաստությունը, եկել է բարիք գործելու, մարդուն սփոփելու։

— Իսկ ես կարծում էի, թե ինձ արդեն մոռացել են, և ես կարող եմ նորից ամփոփվել ինքս իմ մեջ, զբաղվել իմ սովորական գործերով,— ժպտում է նա, օրորում գլուխը։

— Հավանաբար անվանի դառնալն ավելի՞ դյուրին է, քան դրա ծանրությունը կրելը, նույն բարձունքի վրա մնալը...

— Դժվար է, բայց, չեմ թաքցնում՝ հաճելի։— Նա մի թեթև հոգոց է հանում, այնպես, ինչպես միայն հոգնած կինը։— Այնուամենայնիվ, արժե՞ կրկին անդրադառնալ իմ կյանքին ու աշխատանքին։ Չէ որ, ի վերջո, ես շարքային բժիշկ եմ և սովորական, տանը և աշխատանքում մշտահոգ մի կին։

Հասկանում եմ, իհարկե, որ ժամանակին շատ հանդիպումներ են եղել լրագրողների հետ, հարցազրույցի է նստել նա, ելույթներ ունեցել... Այս ամենը հոգնեցուցիչ է։ Խոստովանենք, մի քիչ էլ ձանձրալի լինելուց բացի, նաև անհարմարության զգացում է հարուցում մարդու, մանավանդ ի ծնե համեստ ու ինքնամփոփ մարդու մեջ։ Սակայն կա նաև պատվի մի մեծ զգացում՝ իր փորձն անմնացորդ նվիրել ուրիշներին, որովհետև դա արդեն միայն իրենը չէ, այլ ամենքինը։

— Չեմ առարկում։ Սակայն ցանկանում եմ հիշեցնել, որ մարդ ճանաչվում է հենց նվիրվածության շնորհիվ։

— Այո՛, բայց երբ համբավը շատ է տարածվում, անելիքներն ու պարտքերը մեծանում են։

Պայմանավորվում ենք հանդիպել հաջորդ օրը։

...Առանձնասենյակում, միջանցքներում, հիվանդասենյակներում խաղաղավետ անդորր էր։ Թերևս այդպես լինում է միայն հիվանդանոցներում։ Աշնան արևը պատուհաններից ներխուժել էր սենյակ և վառ դեղինով օծել, հաճելի ջերմությամբ էր ողողել ամեն ինչ։

Արդեն ճերմակող մազերով, սովորական կեցվածքով, նրբակիրթ այդ կինը, որին բոլոր ծանոթներն ու անծանոթները վերաբերվում են մեծ հարգանքով, նաև լի է իմաստությամբ ու ազնիվ երազանքներով։

— Ինչո՞վ է սկսվում և ավարտվում ձեր օրը,— հարցնում եմ։

— Չորս երեխաների մոր և կնոջ սովորական հոգսերով, հիվանդանոցային առօրյայով, իսկ երեկոյան, եթե ժամանակ եմ ունենում, ամուսնուս հետ գնում եմ կինոթատրոն։

Որքա՜ն սովորական, առօրեական է այդ ամենը։ Չէ որ այս աշխարհում բյուրավոր մարդիկ հենց այդպես էլ ապրում են. ընտանեկան հոգսեր, աշխատանք, մարդկային սովորական հաճույքներ և, ինչ խոսք, նաև տխրություն ու վշտեր։

Բայց և այնպես գիտեմ, որ մանավանդ բժշկի աշխատանքում արտասովոր շատ բան կա։

— Խնդրեմ, կարող եմ և թվարկել։ Նախ և առաջ անհրաժեշտ է կատարել նոր ընդունված հիվանդների մանրամասն զննություն, ախտորոշել հիվանդությունը։ Բաժանմունքի վարիչը պետք է կարողանա ո՛չ միայն ախտորոշել, այլև հիվանդությունը վերլուծել, մշակել բուժման մեթոդներ և, որ շատ կարևոր է, հիվանդին հանձնել համապատասխան բժշկի տնօրինությանը։ Ես առանձնապես շեշտում եմ այս հանգամանքը, քանի որ յուրաքանչյուր բժիշկ ունի իր նախասիրությունները, մոտեցման ու բուժման իր ձևերը և մասնագիտացած է որոշ հիվանդությունների ճանաչման ու բուժման բնագավառում։ Ինչպես ասում են, ամեն բժիշկ իր դեղն ու դարմանն ունի։ Այս հարցում չպետք է սխալվել։

Սակայն Լենինականի 2-րդ բուժմիավորման թերապևտիկ բաժանմունքի վարիչ Ելենա Ավետիսյանի աշխատանքային օրն այսքանով չի ավարտվում։ Տանն էլ նա իր հիվանդների հետ է։ Աշխատանքը շարունակվում է, մտովի, հիվանդից հեռու. նա վերլուծում է հիվանդության ընթացքը մանրամասնորեն ու երևույթները համադրում՝ ի՞նչ փոփոխություններ են տեղի ունեցել առաջին օրվանից հետո, ինչպիսի՞ն է բուժման ընթացքը։

— Ինչպե՞ս եք ճանաչում հիվանդությունը։

— Հարցը և՛ բարդ է, և՛ շատ պարզ։ Ամեն հիվանդություն իր դեմքն ու ձայնն ունի։ Չճանաչել չի կարելի, ավելի ճիշտ՝ անթույլատրելի է։ Սակայն բարդ է, քանի որ հիվանդությունը բոլորի մոտ չէ, որ նույն ձևով է սկսվում և ընթանում։ Յուրաքանչյուր օրգանիզմ ունի իր յուրահատկությունները, իր ուժեղ ու թույլ կողմերը։ Ուրեմն ախտը պետք է ճանաչել հենց տվյալ մարդու մեջ և ոչ թե ընդհանրապես։

Կյանքն ու հիվանդությունը։ Նրանք ծնվել են միասին։ Սակայն կյանքը մարդու վրա դրել է մի ծանր, վիթխարի պարտականություն՝ հաղթահարել ախտը։ Դարեր ու դարեր մարդու օրգանիզմը միայնակ պայքարել է հիվանդությունների դեմ, ձեռք բերել զարմանալի դիմադրողականություն և ինքնաբուժման կարողություն (սակայն ոչ բոլոր ախտերի դեմ), մինչև որ փորձը, իմաստությունը օգնության են հասել նրան՝ ճանաչելու ախտը, գիտակցորեն հաղթահարելու այն։

Ելենան ծնվել, մեծացել է մի ընտանիքում, ուր մշտապես հարգվել է բժշկի մասնագիտությունը։ Մայրը հիվանդանոցում էր աշխատում, և փոքրիկ աղջիկը հաճախ դասերից հետո գնում էր մայրիկի մոտ՝ միասին տուն վերադառնալու։ Այնտեղ նա և՛ հիվանդներ էր տեսնում, և՛ լսում էր բժիշկների զրույցները, ականատես լինում նրանց դժվարին, բայց շնորհակալ աշխատանքին։ Եվ կամաց-կամաց նրա մեջ արմատացավ այսպիսի մի համոզմունք. մարդ ինչ մասնագիտություն էլ ունենա, պետք է գործի բարեխիղճ, նվիրումով...

Մարդիկ կարող են ամեն ինչ անել, ամեն ինչ ստեղծել, արդեն ստեղծվածը կատարելագործել։ Սակայն բնության արարածներից կատարելագույնը մարդն է։ Նա կարող է փոխել սիրտը, երիկամը, կհեռացնի որևէ հիվանդ օրգան, բայց փոխել այդ կատարյալ հինվածքն ու նրա էությունը՝ երբեք։ Կարող է կոփել միայն։ Սակայն կա մի մասնագիտություն, որ կոչված է հսկելու մարդու օրգանիզմի անխափան գործունեությունը, միջամտելու թուլացող ազդակների վերականգնմանը, կանխելու կենսագործունեության անկումը, երկարացնելու կյանքը։ Պահպանել բնության տվածը, պահպանել աչքի լույսի պես։ Որովհետև մարդը բնության ու կյանքի լույսն է։ Բժիշկը կոչված է պահպանելու այդ լույսը։

Եվ փոքրիկ Ելենան որոշեց բժիշկ դառնալ։ Դպրոցն ավարտելու հետո մեկնեց Մոսկվա, ընդունվեց ինստիտուտ, սակայն երբ սկսվեց Հայրենական մեծ պատերազմը, փոխադրվեց Երևան և բժշկական ինստիտուտն ավարտեց 1944 թվականին։

Ինստիտուտում ավելի խորացան մարդու նկատմամբ նրա անսահման հավատն ու սերը։ Մինչև այսօր էլ նա երախտագիտությամբ է հիշում իր դասախոսներին, որոնք նրան խոր ու կայուն գիտելիքներ տալուց բացի, համակեցին զգացումներից ու առաքինություններից վեհագույնով՝ մարդու նկատմամբ բոլորանվեր սիրով։ Նա գիտե, թե ինչ արժեք ունի ավագ ընկերոջ ու դասախոսի խորհուրդը երիտասարդի համար։ Չէ՛ որ իր անմոռաց խորհրդատուն ինստիտուտում եղել է պրոֆեսոր Գյանջուցյանը։ Խորագիտակ մասնագետ ու փայլուն դասախոս, որ կարողանում էր իր իմաստությամբ լուսավորել սանի կյանքի ուղին, ցույց տալ ապագան։ Նա եղել ու մնում է նրա հոգևոր հայրը։

— Շատ վաղուց հայտնի մի ճշմարտություն կա,— մտազբաղ ասաց բժշկուհի Ելենան,— ավելի հեշտ է սիրել ամբողջ մարդկությունը, քան պատշաճ ուշադրությամբ վերաբերվել մեկին, խորապես զգալ նրա բերկրանքը կամ ցավը։ Եվ, եթե անհրաժեշտ է՝ օգնել, նրա համար անել հնարավոր ամեն բան։ Պատրաստի հրահանգներ ու խրատներ այստեղ չկան։ Պետք է գործել ինքնուրույն, սրտի ու մտքի թելադրանքով, հաշվի առնելով մարդու անհատականությունը։ Ես կարող եմ հարյուրավոր դեպքեր պատմել, որոնց մեջ պարզ երևում է մարդ անհատը, թեև հիվանդությունը նույնն է։

...Դաշնակահարուհին. հիսունից քիչ անց, գունատ դեմքով, կապտավուն խոշոր ու խորունկ աչքերով մի կին էր։ Դեմքին անասելի թախիծ, աչքերում հիասթափություն կար։ Երբ նայում էր դեմքիդ, թվում էր, ուր որ է աչքերից արցունքներ կթափվեն։ Եվ, հիրավի, երբեմն արտասվում էր բոլորից թաքուն, մեկուսի, մի անկյուն քաշված։ Չէր կամենում, որ ուրիշները տառապեն իր տվայտանքների, իր ցավի պատճառով։

Հիվանդանոց գալու հենց առաջին պահից բժշկուհին երկար-երկար զրուցեց նրա հետ։ Դաշնակահարուհին հանգստացավ, նրա աչքերում հույսի շողեր փայլեցին. ինչ-որ պայծառ անդորր էր ճառագում նրա դեմքից։ Ե՛վ բժշկուհին, և՛ հիվանդները շատ լավ էին հասկանում այդ կնոջը։ Դաշնակահարուհի, և ահա շարժումները չեն ենթարկվում տիրոջ կամքին, մատները նախկին զգայնությամբ չեն շոշափում ստեղները։ Թեև սննդային թունավորումը թեթև էր եղել և կյանքի համար անվտանգ, սակայն ֆիզիկապես թույլ կինը դժվարությամբ էր տանում հիվանդությունը, մանավանդ հոգեպես շատ էր ընկճված։ Օրերն ու շաբաթներն անցնում

էին, դաշնակահարուհին շարունակում էր թախծել, կարոտով նայել միջանցքի ծայրամասում դրված դաշնամուրին։

— Նա երաժշտության դասատու է, և շատ է անհանգստանում իր սաների համար,— մի անգամ ասաց բժշկուհին,— չի ցանկանում ուսումնական տարվա կեսից թողնել պարապմունքները։ Դե ինչ, ամեն բան պետք է անել նրան իր աշխատանքին վերադարձնելու համար...

Եվ ահա, եկավ այն օրը, երբ հիվանդությունը տեղի տվեց։ Նրա մատներն սկսեցին աշխուժանալ, միջանցքը ավելի հաճախ լցվեց երաժշտության պայծառ, կենսաթրթիռ հնչյուններով...

— Որտեղի՞ց գիտեք այդ պատմությունը,— զարմացավ բժշկուհին։— Չէ որ ես ձեզ ոչինչ չեմ պատմել։ Գուցե ձեզ հայտնի է նաև պահածոյացված սննդից թունավորված Բ. Ս. ընտանիքի պատմությո՞ւնը...— անհանգիստ օրորվեց տեղում բժշկուհին։— Դա մի մեծ ողբերգություն էր։ Ամբողջ մի ընտանիք։ Երկու ցերեկ և երկու գիշեր գլխավոր բժիշկ Օնիկ Կարապետյանը, ավագ բուժքույր Ռիմա Վարդանյանը և ես չենք հեռացել նրանց սնարից։ Մեզ հաջողվեց փրկել միայն երեքին։ Իսկ մայրն ու երկու փոքր տղաները մահացան... Երբեք չեմ մոռանա մոր աղերսալից հայացքը։ Նա իր մասին թերևս չէր մտածում։ Նա խնդրում էր փրկել իր զավակներին...

Ամեն մարդու մեջ բժիշկը պետք է տեսնի նրա տոհմի շարունակությունը, նաև՝ նախահիմքը, նրա անձի հետագա անվերջ գոյությունը՝ գալիք սերունդների մեջ։ Որովհետև ամեն ծնվող իր մեջ կրում է հարյուր-հազարավոր տարիների կյանք։ Որովհետև գենը գալիս է առաջին մարդուց։ Մահացողը շարունակում է իր կյանքը ամեն ծնվողի մեջ, հետևաբար նորածինը նույնպես հազարամյա կյանքի ուղի է անցել։ Նա իր հետ բերել է իր տոհմի մանկությունը, այդ տոհմի բոլոր առավելություններն ու թերությունները, նաև ախտերը։ Գուցե հետագա տասնյակ սերունդների մեջ այդ առավելություններն ու ախտերը չբացահայտվեն, սակայն, միևնույն է, ինչ-որ հարյուրերորդ սերնդի մեջ անպայման ի հայտ կգան։ Ուստի բժշկի խնդիրն է նաև տոհմածառի պատմությունն ուսումնասիրել, քննել, ճանաչել, հետագա սերունդներին ձերբազերծել հին ախտերից։

...Սովորաբար ընդունված է ասել, թե անփոխարինելի մարդիկ չկան։ Ճիշտ չէ։ Մարդուն չի կարելի փոխարինել մեկ ուրիշով։ Ամեն մարդ իր տեղն ունի կյանքում, և երբ նա հեռանում է, միևնույն է, ով էլ գա, նրա տեղը բաց է մնալու։

— Հետևաբար պետք է ջանալ, որ մարդը երկար ապրի, թափուր չթողնի իր տեղն աշխատանքում, ընտանիքում, ընկերների շրջանում, հասարակական կյանքում։ Պետք է միշտ հիշել, որ նա անկրկնելի է, անփոխարինելի, և որ նրա կրկնակը բնությունն այլևս չի ստեղծելու։— Բժշկուհին խոր շնչեց, թափառիկ հայացքը հառեց սեղանին փռված թղթերին և շարունակեց Շիրակի թեթև, երգեցիկ առոգանությամբ։— Այս մեծ ճշմարտությունը ուղենիշ պետք է լինի բժշկի համար։

Հիմա ինձ համար պարզ է, թե ինչու էր նա անընդհատ շեշտում, թե հիվանդ ընդունելիս ու զննելիս պետք է ելնել մարդու անհատականությունից և ոչ թե սոսկ ախտի ընդհանուր հատկանիշներից։ Ճանաչել ախտը՝ նշանակում է ճանաչել նաև մարդու էությունը։ Բուժման սահմանված դեղամիջոցներն ու կանոնները գուցե և պարտադիր են, սակայն անպայման որոշակի վերապահումներով։

— Մարդու որևէ օրգանի ախտը պետք է ճանաչել օրգանիզմի ամբողջականության մեջ,— կրկին շարունակեց նա։— Ճիշտ է, բժիշկը պետք է մասնագիտանա, խորանա մեկ ճյուղի, ասենք՝ թոքերի, լյարդի, սրտի, երիկամների ախտորոշման ու բուժման ուղղությամբ։ Սակայն լյարդը կամ երիկամը ինքնին չի կարող հիվանդանալ, նա կապված է մյուս օրգանների հետ։ Եթե սիրտը հիվանդանում է, ուրեմն անհրաժեշտ օգնություն չի ստանում մյուս օրգաններից։ Դա մի ոսկե շղթա է, և երբ օղակներից մեկը տեղից պոկվում է, խախտվում է շղթայի ամբողջականությունը։ Գիտությունն ու տեխնիկան հրաշքներ են գործում կյանքի բոլոր բնագավառներում, նաև բժշկության մեջ։ Այժմ բժիշկն իր տրամադրության տակ ունի ամենաբազմազան սարքավորումներ՝ մարդու ներքին օրգաններն ուսումնասիրելու, հիվանդությունն ախտորոշելու, ինչպես և բուժելու համար։ Բժշկական նորագույն սարքերը շատ են օգնում մեզ, իսկ ապագայում կօգնեն առավելագույն չափով։ Եվ որքան շուտ, այնքան լավ։

— Սակայն տեխնիկան, որքան էլ կատարյալ լինի այն, կենդանի մասնագետին փոխարինել չի կարող։— Ելենա Ավետիսյանը խոսում է համոզված ու վստահ։— Հետևաբար պետք է միշտ հիշել, որ մեքենան որոշ չափով բժշկին հեռացնում է հիվանդից։ Օգնում է ճանաչելու ախտը, բայց ոչ հոգին, սիրտը, էությունը։ Բժիշկը պետք է շոշափի հիվանդին, զգա նրա ջերմությունը, սրտի զարկը, շնչառությունը։ Որովհետև չկա մարդկային այնպիսի օրգան, որն իր ազդակները չունենա։ Այդ ազդակներն էլ հենց հուշում են. բժիշկն զգում, լսում է հիվանդ օրգանի մեղմ շշունջը, խոսում դրա հետ։ Եվ իր ձեռքի տակ ունենալով սրտի զարկերը չափող ու գրանցող սարք, բժիշկը պետք է զննի հիվանդ սիրտը և իմանա, թե ինչո՞ւ այդ միշտ հավա-



տարիմ, անդադրում մեքենան սկսեց դավաճանել տիրոջը։ Դրա համար էլ երիտասարդ մասնագետներին ես միշտ խորհուրդ եմ տալիս չհեռանալ հիվանդից, չդառնալ տեխնիկայի կցորդը...

Նա, ասես, սուզվում է մտքերի ծովը, ապա շարունակում.

— Իսկ դրա համար բժիշկը պետք է բազմակողմանի զարգացած, հանրագիտակ լինի, հարուստ գիտելիքներ ունենա, կարողանա մարդու հոգին ընկալել։ Մի՞թե դեռ Էյնշտեյնը չէր ասում, թե ինքն ավելի շատ փիլիսոփա է, քան ֆիզիկոս և որ բնության երևույթներն ընկալում ու վերծանում է ոչ թե չափումներով ու փորձերով, այլ փիլիսոփայական ընկալումներով, երևույթների մտավոր համադրությամբ ու մեկնաբանությամբ։ Այսպիսին պետք է լինի նաև բժիշկը։ Եթե հիվանդությունը բնական երևույթ է, ապա այն պետք է ճանաչել նաև փիլիսոփայորեն, հանգամանքների վերլուծությամբ։

Բժշկուհին ելավ տեղից և սկսեց քայլել սենյակում.

— Ինձ համար փիլիսոփա-բժշկի կատարյալ օրինակ է Գևորգ Թադևոսյանը։ Աշխատում է մեզ մոտ, նրա հետ դուք կարող եք հենց հիմա ծանոթանալ։ Ուսանողական նստարանից ուղղակի ռազմաճակատ՝ Կերչ մեկնելով, նա շատ բան է տեսել ու տարել։ Պատերազմի ահավոր հետևանքները,- մահ, արյուն, ավեր։ Հավանաբար նա շատ է խորհել մարդու էության, նրա առաքինությունների և հրեշավոր արարքների մասին։ Կյանքը նա տեսել է մահվան ճիրաններում, ինքը փրկվել է հրաշքով... Ո՞վ գիտե, քանի զինվորի կյանք է փրկել։ Ավարտվել է պատերազմը, բայց անհաշտ պայքարը մահվան դեմ շարունակվում է նաև այսօր։ Մարդու ցավերը սրտին մոտ ընդունող, հիվանդի հետ հիվանդացող բժիշկը սոսկ մասնագետ չէ։ Նա դեղատոմս գրող, հիվանդության պատմությունը բարեխղճորեն գրանցող ծառայող չպետք է լինի, այլ հիվանդի էության մեջ փոթորկվող երևույթները փիլիսոփայորեն ընկալող ու վերծանող մարդ-մասնագետ։ Հենց այսպիսին է մեր Գևորգը և, բարեբախտաբար, միակը չէ։

Լենինականի 2-րդ բուժմիավորումը հիմնականում սպասարկում է գործարանային թաղամասերի բանվորներին ու ծառայողներին, տեքստիլ կոմբինատին, մանվածքային ու գուլպեղենի ֆաբրիկաներին և այլ գործարանների։ Այս արտադրամասերը յուրահատուկ են նաև աշխատանքային պայմաններով և դրանցում ընդգրկված են ո՛չ միայն տեղացիներ։ Այստեղ աշխատելու են գալիս նաև մոտ ու հեռավոր գյուղերից, մեր Միության տարբեր վայրերից։

— Նրանցից շատերը միայնակ են,— շարունակում է բժշկուհին,— ընտանիք ու հարազատներ չունեն։ Իհարկե, ժամանակի ընթացքում նրանք նույնպես հարմարվում են նոր պայմաններին, ընտանիք կազմում, հիմնում իրենց երջանկության օջախը։ Սակայն ոչ բոլորին է դա հաջողվում։ Եվ ահա լինում են, բարեբախտաբար եզակի, ֆիզիկական և հոգեկան լարվածության դեպքեր։ Երիտասարդ մարդն անհանգիստ է, շուտ տպավորվող, շուտ ոգևորվող և շուտ էլ հուսահատվող։ Մարդուն երբեմն աշխատանքի բնույթը կարող է ձանձրացնել, երբեմն ընտանեկան հարաբերությունները լավ չեն դասավորվում, հաճախ էլ սերն է մնում անպատասխան։ Եվ գալիս է մի ժամանակ, երբ երիտասարդ բանվորը կամ բանվորուհին հուսախաբության, հոգեկան լարվածության պահեր է ապրում։ Երիտասարդը, որը դեռ լիովին նախապատրաստված չէ կյանքին, դժվարությամբ է տանում այդ ամենը, ընկճվում, մեկուսանում է ընկերներից, ներամփոփվում։ Իսկ այստեղ արդեն գլուխ է բարձրացնում հիվանդությունը։ Մելամաղձություն, անտարբերություն ամեն ինչի նկատմամբ... Իսկ կյանքը պատժում է անտարբերությունը։

...Երիտասարդ աղջիկը երբեմն վերանում էր իրականությունից, շուրջն ասես ոչինչ չէր տեսնում, դժվարությամբ էր պատասխանում բժիշկների հարցումներին և երբեմն նույնիսկ նշանակված դեղերը չէր ուզում ընդունել։ Նա ժամերով հայացքը հառում էր հեռուները։ Ի՞նչ էր տեսնում այնտեղ, ի՞նչ էր որոնում այդ հեռուներում։ Ի՞նչ էր մտորում, արդյո՞ք կյանքի, իր հիվանդության, մահվան մասին։ Գուցե իր անհույս սիրո՞... Ո՞վ և ի՞նչը կարող է նրան կրկին վերադարձնել իրական աշխարհ, հորդո՞րը, սրտացավությո՞ւնը, դեղահաբե՞րը... Ինչ էլ որ լինի, պետք է գտնել ելքը։ Պետք է հեռացող կյանքի և իրականության կապը պահել, չթողնել, որ կտրվի։ Պետք է, բայց ինչպե՞ս։

Մտորումների, կռահումների, իրարամերժ վերծանումների այս լաբիրինթոսում կարելի է և մոլորվել, խճճվել այնպես, որ կորցնես ճիշտ ուղին։ Եվ այնժամ՝ վերջ։ Սակայն բժիշկը մոլորվելու իրավունք չունի։

— Եվ ի՞նչ, աղջիկը բուժվե՞ց։

— Դժվարությամբ, բայց բուժվեց։— Ավետիսյանը թեթևացած շնչեց, մեղմ ժպտաց, ասես հիվանդ աղջիկը հենց նոր սկսեց զգալ իրականությունը և կյանք վերադարձավ։— Բուժվեց, և մենք նրան բարի մաղթանքներով ճանապարհեցինք աշխատանքի։ Հիվանդին բուժելը, նրան իր ընտանիքի ու աշխատանքային կոլեկտիվի գիրկը վերադարձնելը, մարդկանց և երկրին վերստին օգտակար դարձնելը բժշկին համակում են վեհության զգացումով։ Դա բերկրանք է ո՛չ միայն ապաքինված մարդու, այլև քեզ համար։ Քանզի մի կյանք կորզել մահվան

ճիրաններից, նշանակում է նորից ստեղծել...

Նայում եմ զրուցակցիս հոգնած դեմքին, տեսնում նրա աչքերի փայլն ու մտածում, թե որտեղի՞ց է արարելու, կյանք ստեղծելու այդ վիթխարի ուժը այս նիհարավուն, արտաքուստ թույլ կնոջ մեջ։ Չէ՞ որ շատ սովորական մի մարդ է նա, և, եթե տեսնես փողոցում, չես էլ կռահի, որ հենց նա է բազում մարդկանց պարգևել առողջության բերկրանքը՝ իր խնդությունից, իր կյանքից մաս-մաս անվարձահատույց բաշխելով անծանոթ մարդկանց։ Այդ ամենից հետո ի՞նչ է մնում իրեն՝ բժկուհուն։ Չէ որ հոգին, որքան էլ հարուստ լինի այն, ի վերջո կարող է սպառել ինքն իրեն։

— Ո՛չ, հոգին չի սպառվում, հարստանում է։ Այն պահին, երբ քեզ թվում է, թե այլևս ուժ չունես, նայիր առողջացող հիվանդի աչքերին, և սիրտդ կուռչի հրճվանքից, խենթանալու չափ կլցվես լույսով ու բերկրանքով։ Անսահման երախտագիտություն կա այդ աչքերում... Մի՞թե դա բավական չէ, որ բժիշկն իրեն լի ու լի վարձատրված զգա, հարստանա կրկնակի, գործելու հավատ ու վստահություն ձեռք բերի։

Չկա և հավանաբար չի էլ լինելու այնպիսի մի չափ, որով հնարավոր լինի չափել մարդկային հոգու եզերքները։ Եվ ինչպե՞ս է, որ այս անհուն, անսահման, անծայրածիր տիեզերքն ամփոփվում է մարդկային հոգու մեջ։

— Մարդկային հոգու այս տիեզերական անսահմանության մասին ես էլ եմ շատ խորհել։ Դա զարմանալի շնորհ է, որ բնությունը պարգևել է միայն մարդուն։ Ու թեև այն մեր մեջ է, մերն է, բայց մենք դեռևս լավ չենք ճանաչում, չգիտենք, թե ինչպես և ինչից է հյուսված այն։ Հաճախ հենց ինքներս ենք խաթարում, մենք ենք մռայլում ու վիրավորում այդ բնատուր շնորհը։ Բայց ամեն ինչ չէ, որ կատարյալ է և ամեն կատարյալ չէ, որ պահպանում ենք անխաթար։ Մի չար խոսքը բավական է՝ հոգու պայծառությունը խամրելու համար։

Բժշկուհին էլի ինչ-որ բան էր ուզում ասել, բայց այդ պահին նրան դուրս կանչեցին։ Հնչեց հեռախոսի զանգը, ես խնդրեցի նորից զանգահարել մի քանի րոպե հետո։ Եվ այդ պահին հանկարծ նկատեցի սեղանի անկյունում դրված փոքրիկ մի թերթիկ, որի վրա ուղիղ, հաստատուն ձեռագրով գրված էր «Общение», և էլի մի քանի գրքերի անուններ՝ արդեն բժշկական թեքումով։

«Общение» — կապ, շփում, հաղորդակցություն. այսպես է բացատրված բառարանում։

— Դուք արդեն ծանո՞թ եք այս գրքին,— հարցրի, երբ բժշկուհին վերադարձավ։

— Ո՛չ, նոր է հրատարակվել, և գրում եմ, որ Մոսկվայից ուղարկեն։ Վերնագիրը խոստումնալից է։ Կարծում եմ՝ մարդկային հարաբերությունների մասին է։ Կապը, հաղորդակցությունը մարդկանց միջև, կապը մարդկային հոգիների միջև։ Խորհուրդ կտայի անպայման ձեռք բերել։ Ամենքս էլ գիտենք, որ հոգին խռովել կարելի է մեկ բառով, մեկ շարժումով, նույնիսկ թռուցիկ հայացքով... Ահա մի օրինակ՝ ցույց տալու համար, թե ինչպես կարելի է խռովել բժշկի հոգին։ Առհասարակ ընդունված է և անհրաժեշտ, որ իրավասու կազմակերպությունները ուսումնասիրեն, վերլուծեն, ստուգեն բժշկական հիմնարկությունների աշխատանքը։ Դա տեղին է, օգտակար։ Բայց պատահում է, որ գալիս է մի բյուրոկրատ և սուզվում հիվանդության պատմության թերթիկների, հարցաթերթիկների մեջ և լուռ ու մունջ գրանցումներ կատարում իր համար։ Ուսումնասիրում է բժշկի աշխատանքը։ Եվ ոչ մի հարց, ոչ մի սրտաբաց զրույց։ Նա քո աշխատանքը, ո՛չ, քո տառապանքը չափում է հիվանդաթերթիկներով, հանձնարարված դեղերի քանակով և չգիտեմ էլ ինչով։ Կենդանի մտածող, տառապող բժիշկը մնում է թղթերի այդ կույտի տակ։ Նա չի աշխատում ճանաչել ոչ հիվանդին և ոչ էլ բժշկի հոգին։ Ինչ ուզում եք ասեք, բայց նման վայ-վերադասից ես վիրավորվում եմ։ Ախր կենդանի բժիշկը կանգնած է քո կողքին, դու ինչո՞ւ քեզ անհրաժեշտ բացատրությունները նրանից չես վերցնում, ինչո՞ւ չես աշխատում ճանաչել նրան...

Ճանաչել... Բայց չէ՛ որ նման ունակություն ամեն մարդու չի տրված. իսկ բժշկին անպայման պետք է տրված լինի։ Դրա համար տարիների մտերմություն և համատեղ կյանք պետք չէ։ Զարմանալին այն է, որ հիվանդներն իրենք բժիշկ-մարդուն ճանաչելու նուրբ զգացողություն ունեն։

Ելենա Ավետիսյանի նախկին հիվանդներն այժմ ապրում են ո՛չ միայն Լենինականում։ Նրանք ցրված են ամենուր։ Եվ երբ հրապարակվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը Ելենա Ավետիսյանին Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում շնորհելու մասին, նամակների և հեռագրերի հեղեղ սկսվեց։

Երախտագիտությունը բժշկի նկատմամբ մարդկային ամենագեղեցիկ հատկություններից մեկն է։ Զուր չէ, որ դպրոցի իր նախկին դասատուներից մեկը սիրում էր կրկնել.

— Քո մի խոսքը, սիրելի աղջի՛կս, բուժում է ինձ...

Ստանում է նա հարյուրավոր նամակներ, բացիկներ, հեռագրեր։ «Մենք ձգտում ենք ամեն ինչում նմանվել ձեզ»,— Երևանից գրել են երիտասարդ բժիշկներ Աիդա և Սերգեյ Վարդանյանները։ Եվ ինքը սիրով պատասխանում, խորհուրդներ է տալիս, որովհետև գիտե, թե փորձառու բժշկի խորհուրդն ու օրինակը ինչ արժեն երիտասարդի համար։ Ոչ թե քարոզներ կարդալ, այլ ապացուցել անձնական օրինակով։ Այդ օրինակի ուժը չէ՞ արդյոք, որ նրա երեք դուստրերն էլ սովորում են բժշկական ինստիտուտում։

— Ինձ համար դժվար է այդքան նամակների պատասխանելը. բայց պարտավոր եմ, չի կարելի չպատասխանել։— Ապա թեթև ժպտաց, ուրախ-ուրախ շարունակեց,— սակայն չկարծեք, թե բոլորն են շնորհակալություն հայտնում։ Լինում են նաև բողոքներ, դժգոհություններ, քննադատական նամակներ։ Գրում են հիմնականում վերադաս մարմիններին, քարկոծում բժշկին սխալ բուժելու, կոպիտ վերաբերմունքի և այլ «հանցանքների» համար։ Այդ բողոքների մեջ, հարկավ, ճշմարտություն կա։ Բայց այս ամենից ես ցանկանում եմ մի հետևություն անել, որը մեզ համար շատ կարևոր է։ Բանն այն է, որ շատ հիվանդներ և նրանց հարազատներն ամեն կերպ ջանում են խառնվել բժշկի գործերին, նույնիսկ խորհուրդներ տալ, վիճել... Լավ է, որ մեր մարդիկ զգալի տեղեկություններ ունեն բժշկության, սանիտարահիգիենիկ միջոցառումների վերաբերյալ։ Սակայն հաճախ այդ տեղեկությունները սխալ և հակասական են լինում։ Կարծում եմ, որ մեղքը սան-լուս պրոպագանդայինն է։ Որակյալ դասախոսություններ քիչ են կազմակերպվում բնակչության շրջանում, հանրամատչելի գրքույկներ քիչ են հրատարակվում, և առհասարակ այդ գործը բարվոք չէ։ Մինչդեռ շատ կարևոր է...

Տեսնում եմ, որ բժշկուհին հոգնել է, մանավանդ որ հաճախակի դուրս են կանչում, և նա կրկին աշխատասենյակ է մտնում բորբոքված ու խիստ։ Անհանգիստ է բժշկի կյանքը։

Նայում եմ Ելենա Կարապետովնայի խոհուն, հոգնած, բայց ներքին այրումից լուսավորված դեմքին և հիշում մեր ոսկեղենիկ Եղիշեին. «Հայոց աշխարհի փափկասուն տիկնայք... Մոռացան իրենց կանացի տկարությունը և առաքինի տղամարդիկ դարձան հոգևոր պատերազմի մեջ. կռիվ բաց արին ու մարտնչեցին ծայրագույն մեղքերի դեմ, կտրեցին և դեն գցեցին նրա մահաբեր արմատները...»։ Եվ հայ կանայք այդպես կռվեցին ո՛չ միայն իրենց հավատն անաղարտ պահելու, այլ գերված ու օտարության մեջ տառապող ամուսինների փառքը պանծացնելու, երկիրը կրկին ոտքի հանելու, հայոց տուն կրակը չմարելու համար։ Եվ այսպես՝ դարեր։

Բարդ է նրա հոգեբանությունը, ինչ-որ տեղ նաև հակասական։ Իր դարավոր պատմության մեջ նա շատ է տառապել։ Ո՛չ միայն կնոջ իրավական վիճակի պատճառով։ Պետականությունից զուրկ մի ժողովրդի դուստրը պետք է իր առաքինությունն անվթար պահեր կամքի գերագույն լարումով։ Նվաճողը, այն էլ բարբարոս նվաճողը, ո՛չ միայն երկրի բարիքների, այլ նաև կնոջ տերն էր, այստեղից բխող իր բոլոր հետևանքներով։ Ուստի և նա ամփոփվել է ինքն իր մեջ, ներփակվել հոգեպես ու ֆիզիկապես։ Նա դարձել է սոսկ մայր, հավատարիմ կին, ճանաչել է միայն իր տան շեմը և աշխարհը չի ընկալել իր ողջ խորությամբ։ Իսկ այժմ հանգամանքները փոխվել են։ Կինը ցանկանում է վեր բարձրանալ և բարձրանում է։ Նա ձգտում է ձերբազատվել բոլոր նախապաշարումներից և ազատվում է։ Նա այժմ կանգնած է հասարակական սանդուղքի վերին աստիճանին՝ տղամարդու հետ հավասար։ Սա հայ կնոջ ներքին ուժի, դարերով կուտակված իմաստության պոռթկումն է սոցիալիստական պայմաններում։ Այսպես բողբոջն է պայթում գարնանը՝ արևի տաք համբույրից և հողից ներծծած ավիշների հորձանքից։

— Այո՛,— նկատում է բժշկուհին,— այժմ կնոջ բնածին խելքն ու ունակություններն ընտանեկան նեղ շրջանակներից դուրս են եկել և ստացել հասարակական արժույթ ու հնչողություն։ Բայց որքա՜ն լավ է, որ նա տանը մնացել է կին, մայր, ամուսին, ամուսնու ընկեր՝ իր առաքինություններով ու բարեմասնություններով։

Եվ ահա իմ դեմ նստած է այդ կանանցից մեկը՝ Ավետիսյան Ելենա, դուստր Կարապետի. սոցիալիստական աշխատանքի հերոս է, ունի բարձրագույն կարգի բժշկի որակավորում և վաստակավոր բժշկի կոչում, առողջապահության գերազանցիկ է, Պատվո նշան շքանշանի ասպետ, բազմիցս արժանացել է մեդալների, պատվոգրերի։

Իր կոչումը տեսնելով մարդկանց ու հայրենիքին ծառայելու մեջ, նա, դեռևս բոլորովին երիտասարդ, ընդունվեց կոմունիստական կուսակցության շարքերը և այժմ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անդամության թեկնածու է։

Ցանկանում եմ նրան մի հարց էլ տալ. ո՞րն է բժշկի կոչումը, սակայն վերհիշելով մեր զրույցը՝ մտածում եմ, որ այս ժամերի ընթացքում նա արդեն սպառիչ պատասխան է տվել այդ հարցին։

Ամեն մարդ մի աշխարհ է։ Դրանում ինձ մի անգամ ևս համոզեց այս հետաքրքրական, անմոռաց հանդիպումը... Հիմա ես հրաժեշտ կտամ նրան, իսկ նա նորից կայցելի իր հիվանդներին, հարց ու փորձ կանի և տուն կգնա անհանգիստ սրտով։

Այսպես է բժշկի կյանքը՝ միշտ հոգսերով, անձկալից սպասումներով լի, միշտ հիվանդների հետ։ Եվ ցանկանում եմ բարձրաձայն ու ամբողջ սրտով գոչել՝ հարգա՜նք քո վեհ գործին, բժի՛շկ։

# ՄԵԿՆԱՐԿ

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

**ԱՄԵՆ ԱՎԱՆ ԻՐ ԳՈՒՅՆՆ** ու բույրն ունի. Եղվարդինը՝ այգիների, բանջարանոցների կանաչն է, աշխատավորուհիների գլխաշորերի բազմերանգությունը, շիկավարս եգիպտացորենի, ցորենի ծանր հասկերի ոսկին, հացի անուշ, գգլխիչ բուրմունքը: Վաթսունամյա Սովետական Հայաստանի ութնամյա շրջանի ավաններից մեկն է Արայի լեռան ստորոտում փռված Եղվարդը: Շրջանն է նորաստեղծ, իսկ Եղվա՜րդը... Հին է այն իր թոնիրներից ելնող ճերմակ-փրփուր հացի, արևագույն ցորենի հուռթի արտերի պես: Եղվարդի հաց, Եղվարդի սպիտակահա՜տ ցորեն... Ու ասես այստեղ է ծնվել վարուժանյան հացին երգը՝ աշխատանքի, հողի մշակի փառաբանության շարքը.

*Հովե՜ր կանցնին.—*
*Ու ցորյաններս հուշիկ-հուշիկ կ'արթննան...*
*Զըմրուխտներով կը ծըփա դաշտը անհուն:*
*Ծիտը կ'երգե թառած հասկի մ'օրորուն՝*
*Մինչ իր տակեն ցորյաններու մոլեգին*
*Տովե՜ր կ'անցնին,*
*Հովե՜ր կ'անցնին:*

Եղվարդցին սիրել է հողն ու բերքը, ուր էլ եղել է, արտերի ծով-ծփանքն ու հացի բույրը տուն են կանչել նրան, ու նա եկել է, եկել, շենացրել: Հաց, աշխատանք, լույս... Եվ ուր ո՛չ դպրոց՝ ո՛չ եղիցի լույս:

**1979** թվականին Եղվարդի № 1 դպրոցը հանդիսավոր երեկույթով նշեց իր նախահիմքի՝ տեղի եկեղեցական-ծխական դպրոցի հարյուրամյակը:

Սովետականացումից 39 տարի առաջ էր. Եղվարդն այսօրվանը չէր. ցեխոտ փողոցներով, հողաշեն տներով, աթարի հսկա բուրգերով փոքրիկ մի գյուղ էր այն: Ձմռանը, երբ որոշ չափով թեթևանում էր գործը, մարդ ու անասուն տուն էին մտնում: Օդաներում, թոնրի շուրջը հավաքվում էին, և ծայր էին առնում հին-հին հեքիաթներն ու զրույցները: Գրի սևն ու սպիտակը ջոկող հատ ու կենտ «գրագետները» հավաքում էին իրենց շուրջը գյուղի երեխաներին, ու հնչում էր այբ, բեն, գիմ, դան... ծնողներն ուրախանում էին, որ «ուսումնական» են դառնում իրենց զավակները, իսկ զավակները գրաճանաչ էին դառնում, սովորում այնքան, որ կարողանային ստացական, պարտամուրհակ ստորագրել, նամակ կարդալ ու գրել:

Այդ դպրոցում ամեն ընտանիքից մի հոգի իրավունք ուներ սովորելու. վիճակ էին գցում. ում բախտը ժպտար, նա աշակերտ էր դառնում: Չունևոր ընտանիքների համար դժվար էր ուսման վարձ վճարելը, և սովորողների մեծ մասը ունևորների երեխաներն էին:

Աբազանց տան երկու օթախներում տեղավորված դպրոցի վարժապետներն էին գյուղի քահանան՝ տեր Ղուկասը և դրսից եկած Հովակիմն ու Խաչատուրը: **1915** թվականին Աբազանց կիսաքանդ օթախներին փոխարինեց առաջին դպրոցական շենքը՝ յոթ դասասենյակով:

Ազատարար Հոկտեմբերով վերածնվեց ողջ Հայաստան երկիրը և նրա փոքրիկ Եղվարդ գյուղը: Արմատապես վերափոխվեց և կրթության ասպարեզը: Սովորելու հնարավորություն ընձեռվեց բոլոր երեխաներին, ծավալվեց և անգրագիտության վերացման գործը: Յոթ սենյակը շատ քիչ էր՝ հագեցնելու ուսումնատենչ մարդկանց ծարավը, և **I—IV** դասարանները տեղափոխվեցին դատարանի հին շենքը:

**1934** թվականին գյուղի բնակչությունն իր ուժերով և, գրեթե, իր միջոցներով ձեռնամուխ եղավ դպրոցական նոր շենքի կառուցմանը: Գյուղացիների ոգևորված աշխատանքը ղեկավարում, զգալի օգնություն էր ցույց տալիս գյուղխորհուրդը: Կառուցահրապարակը նման էր մեծ մրջնանոցի: Երկու տարում բարձրացավ, շահագործման հանձնվեց նորակերտ ութնամյա դպրոցը: Ամենքի ուրախությունն անափ էր: Կարճ ժամանակ անց դպրոցը դարձավ լավագույններից մեկը շրջանում. դիրեկտորը դպրոցի նախկին սան Կարապետ Սաֆարյանն էր: Նորից՝ նորը, լավից լավը կա: Աշակերտների թիվը հետզհետե մեծանում էր և, մի դպրոցի շենք ևս փոխելուց հետո, **1971** թվականից Եղվարդի № 1 դպրոցը փոխադրվեց այժմյան եռահարկ շենքը, որն ապահովված է ուսուցումը նոր, առաջավոր մեթոդներով վարելու հնարավորություններով: Դպրոցն ունի լավ կահավորված մետաղամշակման-փայտամշակման կոմբինացված արհեստանոց, անհրաժեշտ մոդելներով, պլակատներով, տեխնիկական միջոցներով հագեցած մեքենագիտության կաբինետ, կինոցուցադրման, կինոնկարահանման ապարատներ և այլ սարքեր ու գործիքներ: Դպրոցում արմատավորված է ուսուցման կաբինետային սիստեմը: Ե՛վ մանկավարժների յոթանասունյոթ հոգիանոց կոլեկտիվը (22-ը տղամարդ), և՛ աշակերտները գոհ են այժմյան պայմաններից. քիմիայի, ֆիզիկայի, կենսաբանության, աշխարհագրության, ռուս գրականության և երաժշտության, հայ գրականության (երեք) լավ կահավորված կաբինետներ, աշխատանքային բարենպաստ մթնոլորտ:

Հասարակության արժույթներից ամենաբարդի ու թանկագինի՝ մարդու կերպավորման գործի պատասխանատվությունն ու հույժ կարևորությունն են արտացոլում ընկեր Լ. Ի. Բրեժնևի՝ ուսուցիչներին ուղղված հետևյալ խոսքերը. «Ձեր մասնագիտությունն ամենահիանալի մասնագիտություններից մեկն է, ուր վարպետը տարի առ տարի շարունակում է իրեն իր աշակերտների մեջ... Ուսուցչի թուլություններն իր աշակերտների միջոցով կփոխանցվեն ապագային: Դրանից ավելի վատ ոչինչ չի կարող լինել: Միաժամանակ լավ ուսուցիչը ևս շարունակում է իրեն, իր գիտելիքները, բարի հատկությունները՝ հանձին սաների: Այս առաքելությունից ավելի ազնիվ ոչինչ չի կարող լինել»: Այստեղից հետևում է և մանկավարժների պատրաստման գործի նույնքան կարևորությունն ու պատասխանատվությունը:

Ժողովուրդը նրանց՝ մանկավարժներին է վստահել իր ապագան, և մարդկային հետագա փոխհարաբերությունները մեծապես պայմանավորված են մարդկային հոգու դարբնոցի՝ դպրոցի և նրա վարպետների կարողությամբ: Նման վստահության խոր գնահատմամբ ու պատասխանատվությամբ էր հագեցած մթնոլորտը Եղվարդի կուլտուրայի տան, ուր հրավիրված էր Նաիրիի շրջանի ուսուցչական կոնֆերանսը: «Նվիրաբերենք մեր ուժերը աճող սերնդի կոմունիստական դաստիարակության գործին». այս էր կոնֆերանսի նշանաբանը: Նաիրիի կուսշրջկոմի երկրորդ քարտուղար Զ. Սահակյանը, ժողկրթության բաժնի վարիչ Օ. Բեյբությանը և ելույթ ունեցող ուսուցիչներն ու դիրեկտորները հանգամանորեն ներկայացրին շրջանի 15 հանրակրթական, 3 երեկոյան-հեռակա և 3 ութնամյա դպրոցների գործունեությունը, ուր մոտ տասը հազար աշակերտների կրթության ու դաստիարակության գործին է նվիրված մանկավարժների 727 հոգիանոց բանակը: Կոնֆերանսը հաշվետվությունն էր ողջ կատարվածի, սկսվող տարվա շեմին անելիքների ստանձնում ու խոստում: Սթափ վեր հանելով, քննադատելով շրջանի ժողկրթության ցանցի թերությունները, հանգամանորեն արծարծվեցին ու գնահատվեցին այդ ասպարեզի հաջողությունները: Օրինական հպարտությամբ նշվեց դպրոցների ու արտադրության կապը, դպրոցականների ակտիվ մասնակցությունը գյուղատնտեսական աշխատանքներին, որի համար և շրջանի կոմերիտական կազմակերպությունն արժանացել է ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշին: Ողջ լավագույնը, հայրենասիրականը, մանկավարժական կոլեկտիվի ջանքերի, ցանած աշխատասիրության ու մարդկայնության արգասիքն են. ահա թե ինչու կոնֆերանսի ամբիոնից շրջանի ղեկավարությունն առավել գիտակցված պարտավորության նման է արտասանում Լ. Ի. Բրեժնևի խոսքերը. «Ուսուցիչն ամենուր պետք է լինի ցանկալի մարդ. նրա առաջ պետք է բաց լինեն պետական կառավարման մարմինների, և՛ կուսակցական, և՛ կոմերիտական ղեկավար կազմակերպությունների դռները»:

Կոնֆերանսում դրվատանքի խոսքեր ասվեցին լավագույն մանկավարժների մասին. իսկ երբ այն ավարտվեց, շատերը մոտենում, շնորհավորում էին միջահասակ ու համեստ արտաքինով ուսուցչուհուն՝ Ռ. Սահակյանին. նա պատվոգիր էր ստացել հայոց լեզվի և գրականության հանրապետական ընթերցումներին լավագույնս մասնակցելու համար: Նա էլ հենց պատմեց իր դպրոցի պատմությունը: Այժմ նա մանկավարժական կոլեկտիվի վետերաններից է:

— Ի՞նչը ձեզ դպրոց բերեց,— հարցնում ենք:

— Ես շատ էի սիրում հայոց լեզվի իմ առաջին ուսուցչին՝ ընկեր Գրիգորյանին, որից և շատ բան եմ սովորել: Ամեն անգամ դպրոցից տուն գալով հավաքում էի մեր բակի երեխաներին, նստեցնում արևկող պատի տակի գերաններին, թուղթ ու մատիտ բաժանում և սկսում էի, ուսուցիչներիս նմանվելով, դաս տալ. հատկապես շատ էի սիրում կարմիր մատիտով ուղղել... Իսկ հետո, երբ ավարտեցի դպրոցը, տասնվեց տարեկանից սկսեցի աշխատել հենց իմ դպրոցում, իմ ուսուցիչների հովանու տակ: Աշխատելուն զուգընթաց ավարտեցի մանկավարժական ինստիտուտի բանասիրական ֆակուլտետի հեռակա բաժինը և մինչև օրս աշխատում եմ այս դպրոցում: Ինձ ուրախացնում է այն հանգամանքը, որ մեզ մոտ քիչ են Վեդունց սարգիսներն ու Նոյի ագռավները: Գնում, սովորում, մեծ մասամբ

վերադառնում են մեր սաները, աշխատում գյուղատնտեսության, անասնապահության, արդյունաբերության բնագավառում: Ովքեր էլ չեն վերադառնում, մայրաքաղաքում, մեր հայրենիքի տարբեր վայրերում իրենց հանրօգուտ գործերով, գիտության, արտադրության մեջ ձեռք բերած հաջողություններով պատիվ են բերում իրենց ծննդավայրին:

Նա ինքը ջանացել է այնպես անել, որ աշակերտները որքան հնարավոր է շուտ զգան մայրենի լեզվի բույրն ու թովչանքը: Նրա վարած բաց դասերն ընդօրինակման, ուսանելի ժամեր են ինչպես սկսնակ, նույնպես և փորձառու ուսուցիչների համար: Իսկ ընկերների այն հարցին, թե որքան ժամանակում է նա պատրաստվում նման դասերի, պատասխանում է՝ «Ողջ կյանքումս, իսկ այս դասերին պետք է եղել միայն ամփոփել, ծրագրել, պլանավորել...»: Ավանդվող թեմային զուգահեռ ուսուցչուհին կազմակերպում է օպերայի, թատրոնի, կինոնկարների կոլեկտիվ դիտումներ, էքսկուրսիաներ գրողների տուն-թանգարաններում, ուր և վարում է որոշ դասեր:

Տարիների իր բազմափորձ աշխատանքով ու մանկավարժական հմտությամբ նա կարողացել է վաստակել և՛ աշակերտների, և՛ գործընկերների ջերմ սերը: Տարիներն անցնում են, աշակերտները թև են առնում, թռչում, դառնում արժանավոր քաղաքացիներ. նրանց հաջողությունների մասին պատմող բազում նամակները ուրախությամբ ու հպարտությամբ են համակում նրա սիրտը:

Ծանոթացե՛ք դեղաբույսերին. կարդում ենք քիմիայի, կենսաբանության կաբինետի դռան մոտ փակցված հրահանգ-հրավերում ու մտնում կաբինետ. փորձանոթներ, փորձարկման սարքեր, հավաքածուներ, հերբարիումներ, ամենատարբեր բույսեր... Ավագ ուսուցիչ, ուսուցիչների կատարելագործման խմբակի ղեկավար, քիմիայի և կենսաբանության դասատու Գարուշ Գևորգյանն է աշակերտների հետ մեկտեղ ժողովել, պատրաստել այդ ամենը, կահավորել կաբինետը:

Մեծ հայրենականի մասնակիցը, մանկավարժական ինստիտուտի քիմիա-կենսաբանական ֆակուլտետի շրջանավարտը մինչև օրս այդ առարկան է ավանդում դպրոցում:

— Աշակերտները չեն կարող սիրել ուսուցչին,— ասում է նա,— եթե նրա այսօրվա դասը չտարբերվի երեկվանից, չհարստանա նոր նյութով, գիտության նոր տվյալներով:

Ահա թե ինչու նա մշտապես հետևում է գիտության նվաճումներին. շատ այլ ամսագրերի հետ նրա անբաժան խորհրդատուներն են «Քիմիան դպրոցում», «Կենսաբանությունը դպրոցում» պարբերականները:

Նրա կազմակերպած էքսկուրսիաները դեպի ժողտնտեսության նվաճումների ցուցահանդես, օդերևութաբանական կայան, սևծովյան կենդանաբանական ու բուսաբանական այգիներ մեծապես նպաստել են աշակերտների գիտելիքների հարստացմանը: Այստեղ էլ ծնունդ է առնում շրջակայքը անձամբ ավելի գեղեցկացնելու զգացումը. մանկան քաղաքացի դառնալու ծիլն է այս, որ պետք է գուրգուրանքով աճեցնել, մեծ ծառ դարձնել: Խնամքով մշակված այգու, բանջարանոցի կողքին երեխային ցույց է տրվում աչքաթող արված, չմշակված, կորդացած հողակտորը. կենդանի դաշտ և մեռած հողակտոր, որ մի ժամանակ նույնպես կենդանի էր եղել:

Մեռած դաշտի կողքին, հենց երեխաների ձեռքով պտղատու այգի են հիմնում. իր ձեռքով տնկածը, իր ձեռքով մշակածն ու խնամածը մարդը աչքի լույսի պես կպահպանի: Եվ Գևորգյանը ջանացել է, որ յուրաքանչյուր աշակերտ ունենա իր ծաղկի, վարդի թուփը, իր ծառը, իր աշխատանքի գործիքը, սիրի դրանք: «Տնկի՛ր փոքրիկ ծառ և մայրիկիդ ծննդյան օրը նվիրիր նրան», «Տնկի՛ր խաղողի մի վազ, խնամիր ու նվիրիր տատիկիդ»... Սա մեծապես կօգնի, որ երեխան սիրի և՛ հարազատներին, և՛ բնությունը:

Դպրոցի այս շենքին նախորդած երեք շենքերի դպրոցամերձ հողամասերում այգիներ են հիմնել նրա ղեկավարած պատանի բնասերները, խնձորենիներ աճեցրել, ջերմոց հիմնել... Հեշտ չի եղել այդ ամենը, աշակերտներն իրենք են արել ամեն ինչ. դույլերով հող ու ջուր են կրել, այգի հիմնել և ուրախացել ամեն ծիլ ու ծաղկով: Նրանք ակտիվ մասնակցել են և սովխոզի դաշտային աշխատանքներին, այգեկութին, ամեն տարի հավաքել են 500 տոննա խաղող...

Աշխատանքը բարիքի աղբյուր է, ամենազոր զենք ընդդեմ չարիքի: Այս գաղափարն են հետևողականորեն սերմանում ու արմատավորում գյուղմեքենայացման թեքումով աշխատանքային ուսուցման դասատուներ Թևոս Համբարձումյանը և Նշան Կարապետյանը: Առաջինը նույնպես այս դպրոցի շրջանավարտ է:

1971 թվականից Եղվարդի № 1 դպրոցին տրվել է գյուղատնտեսական մեքենաների ու միջոցների ուսումնասիրման թեքում: Դպրոցն ունի երեք տրակտոր, մեկ կոմբայն: Դպրոցականները տարվա մեջ մեկ ամիս արտադրական պրակտիկա են անցկացնում սովխոզի այգիներում, ակտիվ մասնակցում այգիների ձևավորմանը, բուկլիցին, այգեկութին և այգեթաղին: Սովխոզի ղեկավարությունը միշտ էլ



գոհունակությամբ, գովասանքով է արտահայտվում նրանց մասին:

— Մեր դպրոցի շրջանավարտներն ստանում են 3-րդ կարգի տրակտորիստի կոչում,— պատմում է Համբարձումյանը:— Ուրախալի է աղջիկների ակտիվությունը, նրանք սիրում են տրակտոր վարել: Մեքենափորձնական կայանում շատ գոհ են մեր դպրոցի շրջանավարտ դիտարկողներից: Իսկ սովխոզում իրենց բարեխիղճ աշխատանքով աչքի են ընկել Ս. Մաթևոսյանը, Վ. Սողոմոնյանը, Գ. Հակոբյանը և ուրիշներ: Տրակտորիստի ու տանկիստի մասնագիտությունները շատ մոտ են իրար,— շարունակում է նա,— և այդ է պատճառը, որ մեր տղաները բանակում ևս չեն խեղճանում, անմիջապես իրենց տեղը գտնում են:

...Դրոցական կոլեկտիվի հոգևոր կյանքի համար անգնահատելի նշանակություն ունի երաժշտությունը: Մի քանի տարի է, ինչ դըպրոցում երգ-երաժշտություն է ավանդում Խ. Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի շրջանավարտ Գայանե Գրիգորյանը: Շնորհալի խմբավարի ղեկավարած երգեցիկ խումբը շրջանային և հանրապետական օլիմպիադաներում գրավել է մրցանակային տեղեր, արժանացել նյութական խրախուսանքի, իբրև պարգև ստացել է ակորդեոն, մագնիտաֆոն: Աշակերտները սիրում են ընկեր Գայանեին, հաճույքով կատարում նրա հանձնարարությունները, ակտիվ մասնակցում արտադասարանական պարապմունքներին:

Դպրոցի երրորդ հարկում կազմակերպված «Թող լինի միշտ արևը, և թող միշտ լինեմ ես» խորագիրը կրող պատկերասրահը հիացմունք է պատճառում դիտողներին. երեխաների հետաքրքրությունների, հակումների, գեղարվեստական ճաշակի ու ձիրքի արտահայտությունն է այն: Նկարչական խմբակի ղեկավար, նկարչության երիտասարդ ուսուցիչ Աշոտ Մանուկյանը ջանում է, որ դեռահասներն ու պատանիները հնարավորին չափ շուտ վայելեն ստեղծագործական աշխատանքի բերկրանքը: Եվ ահա նրանց մտքի, երևակայության ու ձեռքի աշխատանքի արգասիքը. III—IV դասարանցիներից շատերն են նկարել տեսարաններ Կարմիր գլխարկը, Հազարան բլբուլը, Մոխրոտը, Ոսկե ձկնիկը, Անահիտը, Անբան Հուռին, Արջն ու աղջիկը հեքիաթներից, Ճըպուռն ու մրջյունը առակից, Խաղաղություն աշխարհին և այլ տարբեր նատյուրմորտներ:

«Փառքի սրահ» է կոչվում նույն հարկի ձախակողմյան միջանցքը. այստեղ ցուցադրված են լուսանկարներ Մեծ հայրենականի անմոռաց դրվագներից, ներկայացված են նաև հերոսների ու զորավարների դիմանկարները: Սրահի մյուս մասի լուսանկարներից դիտողին են նայում դպրոցի՝ սովետական բանակում ծառայող սաների դիմանկարները. նրանց մասին զինվորական հրամանատարության շնորհակալության ու գովասանքի խոսքը նույնպես նրանց նախնական ռազմական պատրաստության պատշաճ մակարդակի վկայությունն է:

Այս դպրոցում հատուկ հանդիսավորությամբ են նշվում մեր երկրի ռազմական տոները՝ տանկիստի, հրթիռային զորքերի, ռազմածովային և ռազմաօդային նավատորմի, զինակոչիկի օրերը, սովետական բանակի կազմավորման տարեդարձերը: Այդ օրերին շեֆ զորամասերից հրավիրվում են տարբեր ազգերի զինվորներ ու սպաներ: Առանձնապես հետաքրքրական են անցնում հանդիպումները պատերազմի մասնակիցների հետ՝ Արա լեռան ստորոտում, բլրի վրա բարձրացող Հայրենական պատերազմում զոհվածների հիշատակը հավերժացնող հուշարձանի մոտ:

Աշակերտների ռազմահայրենասիրական դաստիարակությանը մեծապես նպաստում են նաև հանդիպումները զինվորական ծառայությունից վերադարձած կամ արձակուրդ եկած շրջանավարտների, նրանց այլազգի ընկերների հետ, այդ հանդիպումները միաժամանակ ինտերնացիոնալ դաստիարակության խթանման միջոց են. բանակում ծայր առած բարեկամությունը շարունակվում է և դպրոցի պատերից ներս: Նման բարեկամությանը զարկ տալու մի օջախ է դպրոցում ստեղծված բարեկամության ակումբը: Այն սերտ կապեր է հաստատել Ուկրաինայի Ծպոլա քաղաքի աշակերտության հետ: Այս քաղաքում է հերոսաբար զոհվել Եղվարդի № 1 դպրոցի սան, տանկիստ Գրիգոր Հակոբյանը, որի անունով և կոչվում է դպրոցի պիոներական դրուժինան: Ծպոլա քաղաքի փողոցներից մեկը, ինչպես նաև № 1 դպրոցի պիոներական դրուժինան նրա անունն են կրում: Այնտեղ Հայրենական պատերազմում զոհվածների հիշատակը հավերժացնող հուշասյան վրա փորագրըված է և Գրիգոր Հակոբյանի անունը: Ու մի օր, երբ նրա անունը կրող դրուժինայի պիոներներն այցի գան հերոսի հայրենի գյուղը, լավ չի՞ լինի, որ հարազատ դպրոցի բակում ևս տեսնեն համեստ մի հուշասյուն՝ կենդանի վըկայությունը նաև ծննդավայրում նրա հիշատակի անմահության:

Աշակերտներին կոլեկտիվիզմի, ինտերնացիոնալիզմի, աշխատասիրության և մարդկային այլ դրական հատկանիշներով, կոմունիստական բարոյականության ոգով դաստիարակելու գործում կարևոր է պիոներական ու կոմերիտական կազմակերպությունների դերը: Ուսուցչական կոմերիտական կազմակերպության քարտուղար Վ. Մեժլումյանը համակող-

մանի օգնություն է ցույց տալիս կոմերիտական կազմակերպությանը, որի քարտուղարն է X դասարանցի, գերազանցիկ աշակերտ Հասմիկ Մարությանը. ակտիվ, խելացի աշխատող է նա, օրինակելի, նախաձեռնող: Իր բարեխիղճ, սրտացավ աշխատանքով մեծ հեղինակություն է վայելում դպրոցի ավագ ջոկատավար Գայանե Ամիրյանը:

Այս ամենի մասին պատմում է դպրոցի կուսակցական կազմակերպության քարտուղար, դիրեկտորի տեղակալ, պատմության ուսուցիչ Խսկանդար Կարապետյանը: Դպրոցի առաջին շրջանավարտներից է նա: Եվ տխրության ամպն է պատում նրա դեմքը:

— Տասնութ հոգով բանակ գնացինք, ռազմաճակատ, վերադարձանք վեցս... Ես եկա դպրոց՝ իրականացնելու նաև զոհված ընկերներիս երազանքը՝ ծառայելու ամենադժվարին երջանկությանը՝ նոր մարդու, խաղաղ ժամանակների կյանքը կերտող, դժվարությունները գիտակցաբար հաղթահարող մարդու դաստիարակությանը:

Եվ պատմում է դպրոցում կազմակերպվող միջոցառումների, նախաձեռնությունների մասին: Գաղափարական, գեղարվեստական բարձր մակարդակով են անցնում տարելիցներին նվիրված հանդեսները, մասնագիտական կողմնորոշման նպատակով կազմակերպվող հանդիպումները շրջանի ղեկավար աշխատողների, սովխոզի առաջավոր բանվոր-բանվորուհիների՝ խաղողագործների, մեխանիզատորների, կթվորուհիների հետ: Հետաքրքրական են անցնում շրջանավարտների հետ կազմակերպվող համատեղ հավաք-հանդիպումները, ուր վերջիններս իրենց փորձն են հաղորդում դպրոցականներին, անձնական օրինակով ցույց տալիս, թե ջանադիր աշխատանքն ինչպիսի հեռանկարներ կարող է բացել նրանց առաջ:

— Հինգերորդ քառորդ է կոչվում մեզ մոտ սովխոզի աշխատանքներին օգնելու շրջանը. ամռանն է դա, և տարվա չորս քառորդների ուսման առաջադիմության համար ծավալված մրցույթը շարունակվում է սովխոզային դաշտերում:

Բոլոր միջոցառումների, դաստիարակչական աշխատանքների հիմնտ ու սրտացավ կազմակերպիչը, նախաձեռնությունների ղեկավարն է կուսակցական կազմակերպությունը:

— Ցանկություններ, հոգսեր անշուշտ կան ու կլինեն,— ասում է շիկավարս, խաժակն, համակրելի արտաքինով ուսմասվարը՝ մաթեմատիկայի ուսուցչուհի Դոնարա Հարությունյանը: Գրադարանը ևս կարիք ունի հարստացման, մշտապես զգացվում է դպրոցական ծրագրերին համապատասխանող գրականության պակասը. ո՛չ միայն գրականության, այլև մյուս առարկաների յուրացմանն օժանդակող գրքերի կարիքը նույնպես մեծ է:

Դպրոցի մանկավարժական կոլեկտիվում լավ գիտեն, որ չորացած ծաղկի են նման իրենց գիտելիքների հարստացմամբ, ինքնակատարելագործմամբ չզբաղվող ուսուցիչները: Այդ է պատճառը, որ այստեղ այնպես նախանձախնդիր են մանկավարժական նորությունների, գրականության նկատմամբ. երբ լույս տեսավ Վ. Սուխոմլինսկու Դաստիարակության մասին գիրքը, կազմակերպվեց դրա լայն քննարկում, որին ուսուցիչների ու ծնողների հետ մեկտեղ ակտիվ մասնակցեցին VII—X դասարանցիները:

1974—75 ուսումնական տարվանից Եղվարդի № 1 դպրոցի դիրեկտորն է Երևանի պետական համալսարանի շրջանավարտ Հրաչյա Մխիթարյանը: Նրա ղեկավարած մանկավարժական կոլեկտիվը ներդաշնակ ընտանիք է նման, որը համալրում են մեծ մասամբ բարձրագույն կրթություն ստացած և գյուղ վերադարձած տեղացիները, նույն դպրոցի շրջանավարտները, այլ վայրերից եկածներն էլ շատ շուտ մերվում են կոլեկտիվին ու չեն ուզում հեռանալ. գալիս են ու մնում: Այսպես, քսանչորս տարեկան աղջիկ էր Ռախսան, երբ Արմավիրից 1942 թ. եկավ Եղվարդ, սկսեց ռուսաց լեզու ավանդել այս դպրոցում, սիրեց երեխաներին, երեխաներն էլ իրեն ու նրա ավանդած լեզուն, ամուսնացավ, հիմա արդեն թոշակավորվել է, բայց դպրոցը չի թողել:

Դիրեկտորը գոհունակությամբ է պատմում ռուսաց լեզվի ուսուցչուհիներ Պողոսյան Նադեժդայի (Արարատից է), Պետրոսյան Աիդայի, Սաստրյան Աննայի, Ներսիսյան Զոյայի մասին: Նրանց ջանքերով են այնպես բովանդակալից, հետաքրքրական անցնում ռուսաց լեզվի օրերը դպրոցում (շաբաթը մեկ օր), ռուսաց լեզվի խմբակների պարապմունքները, ուր միջին և բարձր դասարանի աշակերտները զեկուցումներ են կարդում, գրքեր քննարկում: Մեծ նվիրումով են աշխատում և տարրական դասարանների դասվարները, երիտասարդ ուսուցչուհիներ Հակոբյան Ծովիկը, Գևորգյան Զույհետան, Արշակյան Գրետան, Գևորգան Նազիկը, նաև տարեց ուսուցչուհի Օֆելյա Մնացականյանը, որն իր ամբողջ կյանքը նվիրաբերել է հայրենի գյուղի մատաղ սերնդի դաստիարակությանը: Նրանք սիրում են իրենց գործը և ամենայն բարեխղճությամբ աշխատում հմուտ դիրեկտորի, ավագ ուսուցիչների ղեկավարությամբ: Օրական երկուական ժամ դիրեկտորը նվիրում է դասալսումներին:

— Դասալսումներն անհրաժեշտ են ո՛չ միայն դասատուներին օգնելու, շտկելու, խորհուրդ տալու համար. դրանք հավասարապես պետք են և մեզ: Դիրեկտորը հնարավորության սահմաններում պետք է լավ իմանա յուրաքանչյուր աշակերտի և ուսուցչի: Իսկ դասը ուսուցչի ընդհանուր և մանկավարժական կուլտուրայի հայելին է,— շարունակում է նա,— նրա հոգևոր հարստության, աշխարհայացքի, նախաձեռնության չափանիշը: Ներկա լինելով դասերին, ես տեսնում եմ՝ ինչպես, շարադրելով նյութը, ուսուցիչը աշակերտների առջև ո՛չ միայն բացում է գիտելիքների լայն պատուհանը, այլև բացահայտվում, դրսևորվում է ինքը...

Դիրեկտորի և ուսմասվարներ՝ հայոց լեզվի ու գրականության վաստակաշատ ուսուցիչ Զհան Ուդումյանի, մաթեմատիկայի ուսուցչուհի Դոնարա Հարությունյանի դասալսումները քննարկվում են մանկավարժական խորհրդի նիստերում, բաց դասերի միջոցով կազմակերպվում է փորձի փոխանակում, տարածվում են ուսուցման լավագույն, առաջավոր մեթոդները:

— Դպրոցի աշխատանքային բարեբար մթնոլորտն օգնում է, որ նորեկ մանկավարժները օտար չզգան, որ կարողանան հմտանալ իրենց գործում:

Եվ որքա՜ն կարևոր է միշտ սափրված, կոկիկ, օրինակելի արտաքինով մտնել դասարան, ճիշտ այնպես, ինչպես դերասանն է բեմ ելնում: Դասվարները, դասղեկները և մյուս ուսուցիչները մշտապես հետևում են, որ երեխաները միշտ դպրոց գան աշակերտական համազգեստով, ֆիզկուլտուրայի ժամին լինեն սպորտային հանդերձանքով: Աշակերտների մաքրությանը, առողջական վիճակին աչալուրջ հսկում, հետևում է դպրոցի բուժքույրը՝ Վարդուհի Նևոնյանը:

— Դժվարին է սովորեցնելու երջանկությունը,— խոստովանում է Մխիթարյանը,— բայց այն մեծ երջանկություն է: Ամեն տարի տարեսկզբին ես մի առանձին հուզումով, սրտի դողով եմ դպրոց մտնում և ո՛չ միայն ինձ, այլև մանկավարժական մեր ողջ կոլեկտիվի համար: Դժվարություններ, տարակուսանքներ, հուսալքություններ ու հաղթանակներ, ուրախություններ...

— Վերջին հինգից վեց տարվա աշխատանքները պլանավորելիս,— շարունակում է դիրեկտորը,— մեծ ուշադրություն է նվիրվում աշխատանքի գիտական կազմակերպմանը: Եվ այն տվել է իր արդյունքները. ավելի մեծ թվով շրջանավարտներ են ընդունվում բուհերն ու տեխնիկումները, հաղթահարելով բավականին մեծ մրցույթը և դրսևորելով կոնկրետ գիտելիքներ: Միայն 1979/80 ուսումնական տարվա շրջանավարտներից ինը հոգի ընդունվել են բուհերը:

Ասպա հիշում է դպրոցի շրջանավարտներին, որ դարձել են գիտնականներ, բժիշկներ, գյուղատնտեսներ, ճարտարապետներ, ինժեներներ, զինվորականներ...

Հոգսե՞ր, ցանկություննե՞ր. անշուշտ. կկամենայինք, որ մեր դպրոցն ունենար դպրոցամերձ հողամաս, առավելապես հագեցվեին մեր լաբորատորիաներն ու կաբինետները, գրադարանը հարստացվեր նորանոր գրքերով, ամսագրերով ու հանդեսներով, որ մեր աշակերտների նախանաշի կազմակերպման գործն այլևս չարժանանար «երկու» գնահատականի և... Եվ որ այս տարի ձմռանը տաք լինեն մեր դպրոցն ու դասարանները:

Մեր կյանքի բարու, մարդկայինի, գեղեցկի սերմնացանների միահամուռ ցանկությունն է՝ խաղաղություն, անամպ երկինք համայն աշխարհին:

— Վստահ ենք, որ մեր կուսակցության XXVI համագումարը ավելի հաստատուն ու ամուր կդարձնի խաղաղության մեծ գործը: Մենք՝ մանկավարժներս, կգործադրենք մեր բոլոր ջանքերը համագումարի որոշումների արժանի կենսագործողներ լինելու համար: Այսուհետ ևս կզինենք մեր սաներին համակողմանի գիտելիքներով, գաղափարաքաղաքական պատշաճ դաստիարակությամբ: Ամենքիս ուրախացնում է այն, որ այժմյան սերունդն ավելի շատ բան տեսած, շատ ավելի զարգացած է նախորդների համեմատությամբ. վերելքի, առաջընթացի շատ ավելի մեծ թռիչքահրապարակներ են ստեղծվել մեր վերածնված փաթունամյա երկրում: Մեծացել են և քարը հող դարձնող, հողին բուրմունք տվող մեր ժողովրդի պահանջները ինչպես բոլոր ասպարեզներում, նույնպես և այսօրվա երեխաների՝ վաղվա քաղաքացիների, նրանց անելիքների ու պարտականությունների նկատմամբ: Մեր կուսակցությունն ամենքիս կոչում է չաքողել, չկոծկել նկատվող թերացումներն ու թերությունները. համարձակ բացահայտել, վերհանել, համատեղ խորհել ու ծրագրել դրանց վերացման ուղիները, օրավուր առավել շենացող ու ծաղկող անդաստանը մաքրել մոլախոտերից ու բոռերից: Թող ոչինչ չկասեցնի մեր առաջընթացը,— ավարտում է իր խոսքը դիրեկտորը:— Թող ոչինչ չսպառնա մեր երեխաների ամենակենսական, ամենագեղեցիկ երազանքի իրականացմանը— թող լինի միշտ արևը:

# ՍՍՀՄ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ

Լ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆ
Իրավաբանական գիտությունների դոկտոր,
պրոֆեսոր

## *ՍՍՀՄ ՆՈՐ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՀԱՂԹԱՆԱԿՆ Է*

Մեր կուսակցության յուրաքանչյուր համագումար նշանակալից ուղենիշ է դառնում դեպի ողջ սովետական ժողովրդի բարձրագույն նպատակը՝ կոմունիզմը տանող ճանապարհին։ Համագումարից համագումար, կատարելով կանխանշված պլանները, ՍՍՀՄ աշխատավորներն անընդհատ բարձրացնում են իրենց քաղաքական, տնտեսական ու սոցիալական զարգացման մակարդակը։ Նախորդ փուլի հասումներն ապագա հաղթանակների ամուր հիմքն են կազմում։ Ահա և այժմ, նախապատրաստվելով ՍՄԿԿ առաջիկա XXVI համագումարին, մեր կուսակցությունը, սովետները, պետական մարմինները, հասարակական կազմակերպություններն ու աշխատավորական կոլեկտիվները մանրակրկիտ վերլուծում են ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման արդյունքները՝ կուտակված փորձով զինվելու, հաջորդ հնգամյակի խնդիրների լուծման համար հիմք ստեղծելու նպատակով։

Մենք բոլորս տեսնում ենք, թե ինչպես անսահման աճել են Սովետական Միության տնտեսական պոտենցիալն ու պաշտպանական հզորությունը, զգալիորեն բարձրացել են աշխատավորների նյութական բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը, առավել ամրապնդվել մեր հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը։ ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը հաստատակամորեն ու հետևողականորեն կենսագործում են կուսակցության XXIV և XXV համագումարների որոշումներով սահմանված խաղաղության ամրապնդման և միջազգային անվտանգության քաղաքականությունը։ Հատկապես կարևոր է, որ այդ վիթխարի բազմակողմանի աշխատանքն իրականացվում է սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի ծավալման պայմաններում, դեմոկրատիա, որը սովետական ժողովրդին հնարավորություն է ընձեռում լուծելու հասարակական կյանքի տարբեր ոլորտների հրատապ խնդիրները։

Բնութագրելով ՍՍՀՄ սահմանադրությունը, ընկեր Լ. Ի. Բրեժնևը հատկապես շեշտեց, որ սոցիալիստական դեմոկրատիայի ընդարձակումն ու խորացումն իսկ կազմում են դրանում պարունակվող նորի հիմնական էությունը։ ՍՍՀՄ սահմանադրության ընդունման պրոցեսն իսկ և այն իրադրությունը, որում իրականացվեցին դրա նախագծի մշակումն ու քննարկումը, վառ արտահայտությունն են սոցիալիստական կարգի բնորոշ իրական ժողովրդակառավարման։

ՍՍՀՄ սահմանադրության նախագծի մշակման պրոցեսի խոր դեմոկրատիզմը վառ կերպով արտահայտվեց այդ նշանավոր քաղաքական ու իրավական ակտի իրոք համաժողովրդական քննարկման ժամանակ։ 140 միլիոն մարդուց ավելի, այսինքն՝ Սովետական Միության չափահաս բնակչության առավել քան չորս հինգերորդը, մասնակցեց ՍՍՀՄ սահմանադրության նախագծի քննարկմանը։ Եվ դա իսկապես գործնական, խիստ շահագրգռված ու արտակարգ արդյունավետ քննարկում էր, որի ընթացքում առանձին հոդվածների վերաբերյալ արվեցին 400 հազար առաջարկություններ, որոնց խորազնին ուսումնասիրությունը սահմանադրական հանձնաժողովին հնարավորություն ընձեռեց ՍՍՀՄ Գերագույն սովետին առաջարկելու հիմնական օրենքի նախագծի ճշգրտված տեքստը։ Կատարված աշխատանքի մասշտաբների և արդյունավետության մասին կարելի է դատել բստ այն իրողության, որ նախագծի նախնական տեքստի 173 հոդվածներից 118-ում արվել են զանազան փոփոխություններ և ուղղումներ, ավելացվել է իրենց ընտրվող ներկայացուցիչներին պատվիրաններ տալու ընտրողների իրավունքը վավերացնող մեկ հոդված։

ՍՍՀՄ սահմանադրությամբ օրենսդրորեն ամրապնդվում է սոցիալիստական դեմոկրատիայի ընդհանուր, համապարփակ սիստեմը, դեմոկրատիա, որը հաստատվել է որպես մեր երկրի հասարակական ու պետական կյանքի հիմնարար սկզբունք։ Սկսած ներածականի առաջին իսկ տողերից և վերջացրած եզրափակող 174-րդ հոդվածով, որում սահմանված է ՍՍՀՄ սահմանադրության փոփոխման կարգը, մեր հիմնական օրենքը սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքների ու նորմերի փայլուն մարմնացումն է։

## *ՍՍՀՄ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՄԲՈՂՋԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄ Է*

Սոցիալիստական կարգի խոր դեմոկրատիզմն ամենից առաջ արտահայտված է ՍՍՀՄ քաղաքական համակարգի սահմանադրական ամրապնդմամբ։ Այդ սիստեմն ընդգրկում է սերտորեն փոխկապակցված և փոխպայմանավորված հարաբերություններ ու ինստիտուտներ, որոնց միասնությունն արտահայտում է սովետական սոցիալիստական հասարակության էությունն ու գործունեության մեխանիզմը՝ որպես նպատակահարմարորեն կազմակերպված, ամբողջական ու միասնական, դինամիկ զարգացող սոցիալ-քաղաքական կառուցվածք։ Ցույց տալով դրա նշանակությունը՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում ասաց. «Կոմունիստական շինարարության ասպարեզում մեր ամբողջ աշխատանքի կարևոր ուղղությունը սովետական հասարակության քաղաքական սիստեմի համակողմանի զարգացումն է» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, Ե., 1976, էջ 121)։ Պատահական չէ, որ ՍՍՀՄ 1977 թ. սահմանադրությունում սովետական հասարակության քաղաքական սիստեմը հստակ բնութագրված է առաջին գլխում։ ՍՍՀՄ հիմնական օրենքը, արտահայտելով մարքս-լենինյան տեսության ու սոցիալիստական պետական շինարարության պրակտիկայի զարգացումը, նպաստավոր հիմք է ստեղծում սովետական քաղաքական սիստեմի գիտական սահմանման, հստակ ըմբռնման ու ճանաչման համար, այդ անհրաժեշտ է կոմունիստական շինարարության միասնական պրոցեսի հետագա առավել հաջող զարգացման առումով։

Սոցիալիստական հասարակության քաղաքական սիստեմի գիտական ըմբռնման հիմքը մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատություններն են։ Հատկապես այս հարցի մշակման գործում մեծ է Վ. Ի. Լենինի ներդրումը։ Նա ոչ միայն զարգացրեց ու համակողմանիորեն հիմնավորեց սոցիալիզմի գիտական տեսությունը, այլև գլխավորեց աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծումը։ Պրոլետարական հաղթական հեղափոխության շնորհիվ ձևավորվող նոր հասարակության քաղաքական սիստեմի խնդիրները Վ. Ի. Լենինը տարբեր ասպեկտներով քննարկել է իր մի շարք աշխատություններում, մասնավորապես «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» դասական երկում, ուր բազմակողմանի մշակվել է պրոլետարիատի դիկտատու-

րայի սիստեմի պրոբլեմը։ Հենվելով լենինյան հիմնարար ցուցումների ու հետևությունների վրա, որոնք հետագայում զարգացվել են ՍՄԿԿ որոշումներում ու փաստաթղթերում, սովետական շատ գիտնականներ տարիներ շարունակ ուսումնասիրել են այդ խնդիրները։ Ընդ որում, դեպի կոմունիզմ մեր հասարակության առաջընթացին զուգընթաց, ժամանակի պահանջներին ու պայմաններին համապատասխան առավել ճշգրտվել ու հարստացվել է քննարկվող հարցերի շրջանակը։ Վերջին տարիներս գիտական շրջանառության մեջ է մտել սովետական հասարակության քաղաքական սիստեմ հասկացությունը, որն այժմ օրենսդրորեն վավերացվել է ՍՍՀՄ նոր սահմանադրության մեջ։ Խոսքը ոչ թե տերմինի սոսկ փոփոխման մասին է, այլ իմացության տարբեր ասպեկտների ու աստիճանների։

Առաջին անգամ ամբողջովին ու համակողմանի ամրագրելով սովետական հասարակության քաղաքական սիստեմը, ՍՍՀՄ 1977 թ. սահմանադրությունը հնարավորություն է ընձեռում ոչ միայն խորությամբ ճանաչելու մեր քաղաքական սիստեմի էությունն ու հիմնական տարրերը՝ բոլոր փոխադարձ կապերում, այլև թափանցելու լենինյան գաղափարների գանձարանը, որոնք մարմնավորվել են սահմանադրական նոր դրույթներում։ ՍՍՀՄ նոր սահմանադրության մեջ սովետական հասարակության քաղաքական սիստեմը ներկայացվում է որպես մեր երկրում հաստատված ժողովրդաիշխանության և դրա իրականացման ճյուղավորված մեխանիզմի փոխկապակցված միասնություն։

Իրոք, ՍՍՀՄ սահմանադրության առաջին գլխի հիմնական գաղափարը սովետական ժողովրդի լիիրավության ամրապնդումն է։ Այդ գաղափարը հստակ արտահայտված է 2-րդ հոդվածում.— «ՍՍՀՄ-ում ամբողջ իշխանությունը պատկանում է ժողովրդին»։ Նույն հոդվածը մատնանշում է, որ այդ իշխանությունը բարդ կառուցվածք ունի և չի հանգեցվում սոսկ պետական իշխանության։ Կան նաև կառավարման այլ ձևեր։ Այնուհետև կարդում ենք. «Ժողովուրդը պետական իշխանությունն իրականացնում է ժողովրդական դեպուտատների սովետների միջոցով, որոնք ՍՍՀՄ քաղաքական հիմքն են»։ Այստեղ խոսվում է ժողովրդական դեպուտատների սովետների միջոցով միայն պետական, և ոչ թե ժողովրդի ողջ իշխանությունն իրականացնելու մասին։ ՍՍՀՄ սահմանադրության առաջին գլխի մյուս հոդվածներում հիմնական գծերով սահմանված է ժողովրդաիշխանության իրականացման ողջ մեխանիզմը։ Այդ մեխանիզմը, որը ղեկավարում և ուղղություն է տալիս ՍՄԿԿ-ն, (ՍՍՀՄ սահմանադրության 6-րդ հոդված), ներառում է սովետական սոցիալիստական համաժողովրդական պետությունը (հոդված 1), հասարակական կազմակերպությունները (հոդված 7), ինչպես նաև աշխատավորական կոլեկտիվները (հոդված 8) և անմիջական դեմոկրատիայի այլ ձևեր, որոնց թվում, ՍՍՀՄ սահմանադրությամբ նախատեսված (հոդված 5) առավել կարևոր պետական հարցերի համաժողովրդական քննարկումը և համաժողովրդական քվեարկությունը (ռեֆերենդումը)։

Այսպիսով, ժողովրդի իշխանության կուռ մեխանիզմում ՍՍՀՄ սահմանադրությունը միավորում է ոչ համարժեք ինստիտուտներ։ Եթե պետությունը, դրա ապարատը, որի հիմքն են կազմում ժողովրդական դեպուտատների սովետները, մի կազմակերպություն է, որը հատկապես ստեղծված է պետական իշխանությունն իրականացնելու համար, ապա հասարակական կազմակերպությունները ունեն այլ պարտականություններ։ Լինելով աշխատավորների կամավոր միություններ, դրանք ամեն կերպ օգնում են պետությանը և դրա մարմիններին ժողովրդի պետական իշխանությունն իրականացնելիս և դրանով իսկ մասնակցում այդ պրոցեսին։ Հասարակական յուրաքանչյուր կազմակերպություն ծնունդ է աշխատավորների տարբեր խմբերի որոշակի շահերը բավարարելու անհրաժեշտության, որով և սահմանվում են դրանց կանոնադրական խնդիրները։ Հասարակական կազմակերպությունները կառավարում են հասարակական կյանքի տարբեր բնագավառներ, իրականացնում հասարակական ինքնավարություն, որը նույնպես ժողովրդի իշխանության, նրա լիիրավության դրսևորումներից է։ Եվ պետական ու հասարակական իշխանության, հասարակության պետական ղեկավարման և հասարակական ինքնավարության համակարգում հանդես է գալիս ժողովրդի միասնական, բայց կառուցվածքով



ոչ միանշանակ իշխանությունը։ Այն ծնում է իշխանության զանազան հարաբերություններ, որոնք ժողովրդի ողջ իշխանությունը ներկայացնող ինստիտուտների հետ միասին կազմում են ՍՍՀՄ քաղաքական սիստեմը։

Հանգամանորեն բնութագրելով պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմը՝ Վ. Ի. Լենինը ամենևին էլ այն չէր նույնացնում հասարակության քաղաքական սիստեմի հետ, այլ դրա մեջ տեսնում էր պրոլետարիատի դիկտատուրայի իրականացման մեխանիզմը։ Եվ այդ դիկտատուրան հանդիսանալով բանվոր դասակարգի գլխավորած աշխատավորների համապարփակ իշխանություն, իրականացման մեխանիզմով կազմում էր սովետական հասարակության քաղաքական սիստեմը։ «Դիկտատուրան,— նկատել է Լենինը,— իրականացնում է սովետների մեջ կազմակերպված պրոլետարիատը, որին ղեկավարում է կոմունիստական կուսակցությունը...» (Երկեր, հ. 34, էջ 38), մատնանշելով, որ պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում միավորված են արհմիություններն ու այլ հասարակական կազմակերպություններ, և այնուհետև. «Ստացվում է ընդհանուր առմամբ և ամբողջությամբ ձականորեն ոչ կոմունիստական ճկուն և համեմատաբար լայն, շատ հզոր, պրոլետարական ապարատ, որի միջոցով կուսակցությունը սերտորեն կապված է դասակարգի ու մասսայի հետ և որի միջոցով, կուսակցության ղեկավարությամբ, իրագործվում է դասակարգի դիկտատուրան» (նույն տեղը, էջ 40)։ Լենինը բացահայտեց պրոլետարիատի դիկտատուրայի մեխանիզմի ձևավորման ակունքները, զարգացման միտումները։

Հասուն սոցիալիստական հասարակության կառուցմամբ պայմաններ ստեղծվեց, որպեսզի պրոլետարիատի դիկտատուրան վերաճի ամբողջ ժողովրդի իշխանության։ Նման վերաճումն օրինաչափ, աստիճանական պրոցես է, որի ընթացքում կատարելագործվում, ավելի բարձր աստիճանի են հասնում ոչ միայն ողջ հասարակական հարաբերությունները, այդ թվում և իշխանության հարաբերությունները, այլև այդ իշխանության մեխանիզմի բոլոր կարևորագույն տարրերը։ Եվ այժմ, ժողովրդաիշխանության ու դրա իրականացման մեխանիզմը համակողմանի ու հստակ կերպով վավերագրվել են ՍՍՀՄ նոր սահմանադրությունում՝ զարգացած սոցիալիզմի սահմանադրությունում։

## ՍՍՀՄ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆԸ

Սոցիալիստական քաղաքական, պետական իշխանությունն ստեղծվում է շահագործող դասակարգերին հեղափոխության միջոցով տապալելու և հասարակության բացարձակ մեծամասնության՝ բոլոր աշխատավորների կամքն արտահայտող պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու պրոցեսում։ Այդ իշխանությունը, որն իրականացնում է բանվոր դասակարգը, բոլոր աշխատավորների հետ դաշնակցած, գործադրվում է շահագործողական դասակարգերի մնացորդները վերացնելու և սոցիալիզմի շինարարության ողջ գործը ղեկավարելու նպատակով։ Զարգացած սոցիալիզմի կառուցումից հետո, երբ տիրապետող են սոցիալիստական հարաբերությունները, երբ վաղուց արդեն վերացվել են շահագործողական դասակարգերն ու մարդու շահագործումը մարդու կողմից, սոցիալիստական պետական իշխանությունը հանդես է գալիս որպես ողջ ժողովրդի քաղաքական իշխանություն։ Այն պահպանում է իր քաղաքական բնույթը, քանի որ արտահայտում է որոշակի դասակարգերի (բանվորների ու գյուղացի-կոլտնտեսականների) և սոցիալական խմբերի (մտավորականության) շահերն ու կամքը։ Միջազգային ասպարեզում դրան հակադրվում են թշնամական իմպերիալիստական ուժերը։ Իսկ երկրի ներսում այն հանդես է գալիս որպես հասարակության պետական կառավարում, որն իրականացնում են բանվոր դասակարգի ղեկավարած աշխատավորներն անմիջականորեն և հատկապես կազմակերպված պետական ապարատի միջոցով, հենվելով ինչպես համոզման, հասարակայնորեն ազդելու, նույնպես և պետական հարկադրանքի վրա։

Սոցիալիստական պետական իշխանությունն արտահայտում է միասնա-

կան նպատակով, արմատական շահերի ընդհանրությամբ միավորված և սկզբում հասարակության մեծամասնությունը, ապա ողջ ժողովուրդը ներկայացնող աշխատավորների կամքը։ Իշխանությունն իրականացնելիս, այսինքն՝ պետական գործերը կառավարելիս, հասարակական կյանքի տարբեր հարցեր լուծելիս այն ձգտում է ապահովել լայն զանգվածների ակտիվ մասնակցությունը։ Հասարակության կառավարման ոլորտում կարևոր է արհմիությունների դերը։ «Հանդես գալով որպես ազդեցիկ հասարակական ուժ,— նկատել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— արհմիությունները մեծ դեր են խաղում մեր ողջ քաղաքական սիստեմում, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման գործում։ Մեզ համար այստեղ առանցքային հարց է եղել և կլինի հենց այն, ինչ տառացիորեն նշանակում է դեմոկրատիա բառը, այն է՝ ժողովրդապետություն, այսինքն՝ մասսաների մասնակցություն պետական ու հասարակական գործերի տնօրինմանը, այն իսկական ժողովրդական ինքնավարությունը, որի մասին ասել է Վ. Ի. Լենինը» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 6, էջ 420)։

ՍՍՀՄ-ում ժողովրդաիշխանության դրսևորման երկու ձևերի առկայությունը հիմնավորված է սոցիալիստական սեփականության տարբեր ձևերի առկայությամբ՝ համաժողովրդական ունեցվածքի (պետական սեփականության) և խմբային սեփականության (կոլտնտեսային-կոոպերատիվ, ինչպես նաև հասարակական կազմակերպությունների գույքը)։ Պետական իշխանությունը հենվում է համաժողովրդական ունեցվածքի վրա, հասարակական ինքնակառավարումը զարգանում է կոլտնտեսությունների ու կոոպերատիվների, ինչպես և այլ հասարակական կազմակերպությունների ունեցվածքի հիման վրա։ Ինչպես պետական սեփականությունը սոցիալիստական սեփականության հիմնական ձևն է, այնպես էլ պետական իշխանությունը ժողովրդաիշխանության դրսևորման գլխավոր ձևն է ՍՍՀՄ-ում։ Այն միակ սուվերեն իշխանությունն է, և հասարակական ինքնակառավարումը ոչ թե հակադրվում, այլ զուգակցվում է դրան, գործելով պետական իշխանության սահմանած շրջանակներում։ Աստիճանաբար դեպի կոմունիզմ առաջընթացին համապատասխան խմբային սեփականությունը համաժողովրդականի աստիճանին բարձրացնելու միջոցով առավել են մերձենում սոցիալիստական սեփականության տարբեր ձևերը։ Միաժամանակ ավելի սերտորեն են միահյուսվում ժողովրդաիշխանության դրսևորման պետական ու հասարակական ձևերը։

Ներկայումս ժողովրդաիշխանության դրսևորման տարբեր ձևերի առկայությունն արտահայտվում է նրանում, որ ժողովրդաիշխանության իրականացման մեխանիզմը, ըստ սահմանադրության, ՍՄԿԿ ղեկավարության ներքո միավորում է ոչ միայն պետությունը՝ ժողովրդի քաղաքական-պետական իշխանության կազմակերպությունը, այլև հասարակական կազմակերպությունները (արհմիությունները, ՀամԼԿԵՄ-ը, կոոպերատիվ միավորումները և այլն), որոնք հասարակության պետական ղեկավարումը (պետական իշխանությունը) իրականացնելիս՝ սատարելով պետությանը, ինքնուրույնաբար լուծում են հասարակական կյանքի տարբեր հարցեր, դրանով իսկ ապահովելով հասարական ինքնակառավարում։

ՍՍՀՄ քաղաքական սիստեմում հատուկ տեղ է գրավում սովետական սոցիալիստական համաժողովրդական պետությունը։ Այն զարգացած սոցիալիստական հասարակության կառուցման արգասիք է։ Խոսքը ոչ թե պետության տարբեր տիպերի, այլ միևնույն սոցիալիստական պետության զարգացման տարբեր փուլերի մասին է։ Ինչպես ցույց է տալիս ՍՍՀՄ փորձը, սոցիալիստական պետությունն անցել է երեք փուլ՝ պրոլետարիատի դիկտատուրայի պետություն, որը համապատասխանում էր հասարակության զարգացման կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու շրջանին. պրոլետարիատի դիկտատուրայի իրականացումից դեպի ողջ ժողովրդի իշխանության հաստատման անցումային պետություն, որը համապատասխանում էր հասուն սոցիալիզմի կառուցման ավարտի շրջանին. համաժողովրդական պետություն, որը կազմավորվում է զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումից հետո։ Այս փուլերից յուրաքանչյուրում ստեղծվում էին համապատասխան սահմանադրական ակտեր (առաջին փուլում՝ Հոկտեմբերի դեկրետները, ՌՍՖՍՀ 1918 թ. սահմանադրությունն ու մյուս անկախ հանրապետությունների սահմանադրությունները, իսկ այնուհետև՝ ՍՍՀՄ 1924 թ. սահմանադրությունը, երկրորդ փուլում՝ ՍՍՀՄ 1936 թ. սահմանադրությունը, երրորդ, արդի փուլում՝ ՍՍՀՄ 1977 թ. սահմանադրությունը)։

Պրոլետարիատի դիկտատուրայի պետությունն ու համաժողովրդական պետությունը բնութագրվում են դրանք մեկ տիպի մեջ միավորող ընդհանուր հատկանիշներով։ Նպատակը մեկն է՝ կոմունիզմի կառուցումը։ Դրա առաջին փուլի՝ սոցիալիզմի կառուցումը պրոլետարիատի դիկտատուրայի պետության գլխավոր խնդիրն է. անցումը երկրորդ, բարձրագույն փուլին՝ բուն կոմունիզմին, համաժողովրդական պետության խնդիրն է։ Թե՛ մեկ, թե՛ մյուս փուլերում պետությունը կենսագործում է միասնական սոցիալիստական իշխանություն։ Բոլոր էտապներում հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը մարքսլենինյան կուսակցությունն է՝ ՍՄԿԿ-ն։ Այդ փուլերին հատկանշական է սոցիալիստական դեմոկրատիան, աշխատավորների դեմոկրատիան։

Համաժողովրդական իշխանությունը որակական նոր աստիճան է սոցիալիստական պետականության զարգացման ընթացքում։ Եթե պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը հանդես է գալիս որպես բանվոր դասակարգի քաղաքական իշխանության կազմակերպություն, որը նա իրականացնում է գյուղացիության և բոլոր աշխատավորների հետ դաշնակցած, ապա համաժողովրդական պետությունը կենսագործում է քաղաքական իշխանությունը ողջ ժողովրդի մասնակցությամբ, բանվոր դասակարգի ղեկավար դերի առկայությամբ։ Առաջին դեպքում քաղաքական իշխանությունն ուղղակի պատկանում է բանվոր դասակարգին, նա տիրապետող դասակարգ է։ Արդի փուլում բանվոր դասակարգը քաղաքական իշխանության իրականացմանը մասնակցում է ողջ սովետական ժողովրդի կազմում, որին ամբողջապես և պատկանում է լրիվ իշխանությունը։ Բայց նոր պայմաններում ևս բանվոր դասակարգը պահպանում է իր առաջատար դերը։ Դա արտահայտվում է սովետական ժողովրդի բոլոր խմբերի ու խավերի վրա նրա ունեցած գաղափարաքաղաքական, բարոյական ու կազմակերպական ազդեցությամբ։ Համապատասխանաբար սոցիալիստական դեմոկրատիան ևս, որը զարգացել է որպես պրոլետարական դեմոկրատիա, այժմ վերաճել է համաժողովրդական դեմոկրատիայի՝ ժողովրդապետության։

Դա բնավ չի նշանակում, թե սոցիալիստական համաժողովրդական պետությունը կորցնում է իր դասակարգային էությունը։ Սոցիալիստական պետությունը զարգացման բոլոր փուլերում աշխատավորական դասակարգերի ու սոցիալական խմբերի շահերի արտահայտիչն է, որոնք առաջին փուլում կազմում էին հասարակության մեծամասնությունը, իսկ սոցիալիզմի հաղթանակից հետո՝ ողջ ժողովուրդը։ Այսօր համաժողովրդական պետությունն արտահայտում է երկրի բոլոր ազգերի ու ազգությունների բանվորների, գյուղացիների ու մտավորականության, աշխատավորների կամքն ու շահերը (ՍՍՀՄ սահմանադրություն, հոդված 1)։

Զարգացման բոլոր փուլերում սովետական սոցիալիստական պետության քաղաքական հիմքը եղել և մնում են սովետները։ Բայց դրանք ևս որոշակի զարգացում են ապրել, դառնալով ժողովրդական դեպուտատների սովետներ։ Ժողովրդի այս ընտրովի մարմիններն են սովետական պետական մեխանիզմի հիմքը։ Այս արտացոլում է սոցիալիստական հասարակության իրոք դեմոկրատական էությունը։

ՍՍՀՄ-ում հասարակական կազմակերպությունները ժողովրդական ինքնակառավարման մեծ, կարևոր դպրոց են։ Հասուն սոցիալիզմի պայմաններում դրանց դերը հատկապես աճում է։ ՍՍՀՄ սահմանադրության 7-րդ հոդվածում կարդում ենք. «Արհեստակցական միությունները, Համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միությունը, կոոպերատիվ և հասարակական մյուս կազմակերպությունները, իրենց կանոնադրական խնդիրներին համապատասխան, մասնակցում են պետական և հասարակական գոր-

ծերի կառավարմանը, քաղաքական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական
Հարցերի լուծմանը»: ՍՍՀՄ-ում նման կազմակերպություններ շատ կան: Դրան-
ցից են՝ արհմիությունները (շուրջ 130 միլիոն մարդ), ՀամԼԿԵՄ-ը (ավելի քան
38 միլիոն մարդ), համեմատաբար ոչ մեծաթիվ ստեղծագործական միու-
թյունները (գրողների, կոմպոզիտորների, նկարիչների, ճարտարապետների,
ժուռնալիստների) և բնակչության տեղական հասարակական ինքնագործու-
նեության մարմինները (հասարակական կարգի պահպանման կամավոր ժողո-
վրդական դրուժինաները, տնային, փողոցային, ծնողական կոմիտեները,
ընկերական դատարանները և այլն): Դրանք հաջողությամբ են կատարում
իրենց առջև ծառացած խնդիրները, զգալիորեն նպաստում կոմունիստական շի-
նարարությանը:
ՍՍՀՄ-ում ժողովուրդն իր իշխանությունն իրականացնում է ո՛չ միայն
օգտագործելով ներկայացուցչության տարբեր ձևերը (ժողովրդական դեպու-
տատների սովետները, դրանց ենթակա պետական մարմինները, հասարակական
կազմակերպությունների ընտրովի մարմինները), այլև անմիջականորեն՝ կի-
րառելով դեմոկրատիայի զանազան ձևեր: Դրանք կարևորագույն պետական
հարցերի համաժողովրդական քննարկումներն են, ռեֆերենդումները, աշխա-
տանքային կոլեկտիվների մասնակցությունը պետական ու հասարակական
գործերի քննարկմանն ու վճիռների կայացմանը, արտադրության ու սոցիա-
լական զարգացման պլանավորմանը, մասնագետների պատրաստմանն ու տե-
ղաբաշխմանը, ձեռնարկությունների ու հիմնարկությունների կառավարման,
աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման, արտադրության զար-
գացման, ինչպես նաև սոցիալ-կուլտուրական միջոցառումների ու նյութական
խրախուսման համար նախատեսված միջոցների օգտագործման հարցերի քըն-
նարկմանը: Աշխատանքային կոլեկտիվները, այսպիսով, դարձել են սովետա-
կան հասարակության քաղաքական սիստեմի բաղադրիչ մասը, ինչպես այդ
ձևակերպված է ՍՍՀՄ սահմանադրության 8-րդ հոդվածում:
Միաժամանակ անմիջական դեմոկրատիայի ձևերից են ՍՍՀՄ սահմանա-
դրությամբ վավերացված սովետների և ժողովրդական դատարանների ընտրու-
թյունները, ժողովրդի ընտրովի ներկայացուցիչների հաշվետվություններն ու
հետ կանչումը, ընտրողների պատվիրանները դեպուտատներին, ինչպես նաև
աշխատավորների ժողովները, որտեղ լուծվում են հասարակական ու պետա-
կան կյանքի շատ հարցեր:
«Սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը, նրա
քաղաքական սիստեմի, պետական ու հասարակական կազմակերպությունների
միջուկը Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն է», ասված
է ՍՍՀՄ սահմանադրության 6-րդ հոդվածում: Մեր ժողովրդի նվիրվածությունն
իր կուսակցությանը պայմանավորված է նրանով, որ, ինչպես նշված է ՍՍՀՄ
սահմանադրության մեջ, ՍՄԿԿ-ն գոյություն ունի ժողովրդի համար և ծառա-
յում է ժողովրդին: ՍՄԿԿ-ն՝ ամենուր և հետևողականորեն ղեկավարվում է
միակ գիտական տեսությամբ՝ մարքս-լենինյան ուսմունքով:
Ստեղծվելով որպես բանվոր դասակարգի կուսակցություն, ՍՄԿԿ-ն զար-
գացած սոցիալիզմի պայմաններում դարձավ ողջ ժողովրդի կուսակցությունը,
նրա ավանգարդը: Նրա սոցիալական բազայի ընդլայնումը պայմանավորված
է այն բանով, որ մեր հասարակության բոլոր աշխատավորները, սոցիալական
բոլոր խմբերն ու խավերը բանվոր դասակարգի գաղափարախոսությունը, քա-
ղաքականությունն ու նպատակներն այժմ ընկալում են որպես իրենց սեփա-
կանը:
Սովետական հասարակության զարգացմանը զուգընթաց անշեղորեն մե-
ծանում է ՍՄԿԿ-ի դերը կոմունիստական շինարարության պրոցեսների ղեկա-
վարման գործում: Մեր հասարակության զարգացման դինամիզմը, կոմունիս-
տական շինարարության աճող մասշտաբները, միջազգային ասպարեզում
ՍՄԿԿ-ի և սովետական պետության ողջ գործունեությունը պահանջում են
բարձրացնել կուսակցական ղեկավարության մակարդակը տնտեսության ու
մշակույթի զարգացման, մարդկանց դաստիարակման, մասսաների շրջանում
կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի բարելավման գործում:



Կուսակցությունը չի թերագնահատում պետական ղեկավարության և հա-
սարակական կազմակերպությունների գործունեության նշանակությունը կո-
մունիստական շինարարության պրոցեսում, չի փոխարինում պետական ու
հասարակական կազմակերպություններին: ՍՄԿԿ-ն միշտ ղեկավարվել է կու-
սակցության VIII համագումարի որոշումով, որտեղ գրված է. «Իր որոշում-
ները կուսակցությունը պետք է անցկացնի սովետական մարմինների միջոցով,
սովետական սահմանադրության շրջանակներում: Կուսակցությունը ջանում է
ղեկավարել սովետների գործունեությունը, բայց չփոխարինել դրանց» (ՍՄԿԿ-ն
համագումարների... բանաձևերում ու որոշումներում, մաս 1, էջ 565):
Այժմ այդ կարևորագույն կուսակցական նորմը, որը միշտ արտացոլվել է
ՍՄԿԿ կանոնադրությունում, ամրագրված է նաև ՍՍՀՄ սահմանադրությունում.
«Բոլոր կուսակցական կազմակերպությունները գործում են ՍՍՀՄ սահմանա-
դրության շրջանակներում» (հոդված 6): Այնուհետև նույն հոդվածում կարդում
ենք. «Զինված մարքս-լենինյան ուսմունքով, կոմունիստական կուսակցությու-
նը սահմանում է հասարակության զարգացման գլխավոր հեռանկարը, ՍՍՀՄ
ներքին և արտաքին քաղաքականության գիծը, ղեկավարում է սովետական ժո-
ղովրդի մեծ ստեղծարար գործունեությունը, պլանաչափ, գիտականորեն հիմ-
նավորված բնույթ է տալիս կոմունիզմի հաղթանակի համար մղած նրա պայ-
քարին»:
Կուսակցության այս ողջ աշխատանքն իրականացվում է բազմամյա
պրակտիկայով մշակված երեք հիմնական ձևով. 1. Սովետական պետության
քաղաքականության և պետական մարմինների ու հասարակական կազմակեր-
պությունների գործունեության հիմնական ուղղությունների սահմանում:
2. Կադրերի ընտրություն, տեղաբաշխում ու դաստիարակություն: 3. Որոշում-
ների կատարման հսկողություն և ստուգում:
Մեր հասարակության զարգացման յուրաքանչյուր փուլում կուսակցության
աշխատանքը հարստանում է նոր բովանդակությամբ: Կոմունիստական շինա-
րարության պրոցեսում կյանքի առաջադրած առավել նոր ու բարդ խնդիրներից
է բխում կուսակցական աշխատանքի ձևերի ու մեթոդների մշտական կատա-
րելագործման պահանջը:
ՍՍՀՄ քաղաքական սիստեմը, ինչպես և հասուն սոցիալիստական հասա-
րակությունը, դինամիկ զարգացող ստրուկտուրա է՝ ունակ առավել արդյունա-
վետությամբ կառավարելու հասարակության գործերը, ավելի լրիվն օգտա-
գործելու սոցիալիզմի ընձեռած հնարավորությունները՝ հասարակական հարա-
բերությունների, յուրաքանչյուր անհատի համակողմանի զարգացման համար:
Սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալումն է սովետական հասա-
րակության զարգացման հիմնական ուղղությունը (հոդված 9): Այն ենթադրում
է քաղաքացիների առավել լայն մասնակցություն պետության և հասարակու-
թյան գործերի կառավարմանը, պետական ապարատի կատարելագործում,
հասարակական կազմակերպությունների գործունեության աճ. պետական և
հասարակական կյանքի իրավական հիմքի ամրապնդում. հրապարակայնու-
թյան ընդլայնում. հասարակական կարծիքի հաշվառում:

Մոսկվա

## Գրախոսություն և քննադատություն

# ԱԿԱՆԱՎՈՐ ԶՈՐԱՎԱՐԻ ՀՈՒՇԵՐԸ

*«ՀԱՅԱՍՏԱՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ ընթերցող լայն հասարակայնությանը հանձնեց երկար սպասված մի գիրք։ Սովետական Միության կրկնակի հերոս, մարշալ Հ. Ք. Բաղրամյանի հուշերն են դրանք, որով հեղինակն ընթերցողներին ծանոթացնում է Հայրենական մեծ պատերազմի կարևորագույն իրադարձություններին, ամենայն խորությամբ վերլուծում պատերազմական գործողությունների ընթացքը տարբեր ճակատամասերում, ուր նա մասնակցել է զորքերի ղեկավարմանը՝ գլխավորել շտաբներ, եղել բանակի, ապա ռազմաճակատի հրամանատար։*

*Հովհաննես Բաղրամյանի ողջ կյանքը հայրենիքին ու ժողովրդին, նրա պայծառ ապագայի համար մղվող պայքարին բոլորանվեր ծառայելու վառ օրինակ է։ Լինելով կադրային բանվորի որդի և շարունակ շփվելով բանվորական ընտանիքների, հիմնականում երկաթուղայինների հետ, Բաղրամյանը հնարավորություն է ունեցել մոտիկից ծանոթանալու նրանց ընչազուրկ վիճակի հետ կապված մշտական տագնապներին։ Նա սիրել, ջերմորեն կապվել է աշխատավոր մարդուն, և այդ սերը խորացել ու պահպանվել է նրա ողջ կյանքում։ Ջանադիր, աշխատասեր էր ուսումնատենչ պատանին, գերազանց վարքով, ընկերասեր, մարդամոտ ու եռանդուն։ Մարդկային այս վեհ հատկանիշներն էին, որ հետագայում ապագա զորավարին համակեցին հայրենիքի նկատմամբ անսահման նվիրվածությամբ ու սիրով, ոգեկոչեցին հերոսական սխրանքների։*

*1914 թվականի օգոստոսի 1-ին սկսվեց առաջին համաշխարհային պատերազմը։ Առաջինը հարձակման անցան թուրքական զորքերը։ Նրանք ներխուժեցին Բաթումի մարզի շրջանները և առաջացան դեպի Սարիղամիշ ու Կարս։ Թուրքիայի նպատակն էր զավթել Կովկասը, նույնիսկ իր տիրապետությունը հաստատել Պովոլժիեում ու Միջին Ասիայում։*

*«Օսմանյան Թուրքիայի դեմ Ռուսաստանի մղած պատերազմին ամենևին էլ անտարբեր չէին վերաբերվում հայ ժողովրդի լայն շրջանները,— գրում է հեղինակը։— Նրանք Ռուսաստանի հետ էին կապել արտակարգ կարևոր մի հարց՝ թուրքական լծից Արևմտյան Հայաստանի ազատագրումը...»։*

*Մարտական գործողություններին մասնակցելու համար ստեղծվեցին հայ կամավորական ջոկատներ, որոնք, ռուս զինվորների հետ ուս-ուսի, անձնուրաց մարտնչում էին թուրքական զորքերի դեմ, համոզված, որ Արևմտյան Հայաստանի ազատագրումը կապված է միայն Ռուսաստանի օգնության հետ։*

*1915 թվականի ապրիլի վերջին թուրքական իշխանությունների հրամանով սկսվեց Արևմտյան Հայաստանի բնակչության մասսայական կոտորածը՝ եղեռնը։ Բարբարոսության զոհ դարձավ Արևմտյան Հայաստանի ավելի քան մեկուկես միլիոն անպաշտպան բնակչություն։*

*Խաղաղ, անպաշտպան հայրենակիցների ֆիզիկական բնաջնջման լուրը ցնցել էր ողջ հայությանը, աշխարհի ազնիվ մարդկանց։ Գրքում պատկերված են Կովկասյան ռազմաճակատի իրավիճակը, արյունահեղ իրադարձությունները Թուրքիայում։ «Ես չէի կարող հեռու մնալ իմ հարազատ ժողովրդի ատելի թշնամու դեմ մղվող պայքարից,— գրում է նա։— Ընդ որում, հստակ հասկանում էի, որ ռուս զինվորի հետ ուս-ուսի ես կկարողանամ պայքարել թուրք դահիճների դեմ»։*

*1915 թվականի հոկտեմբերի 9-ին, առաջին աշխարհամարտի ահեղ օրերին, Բաղրամյանը կամավոր մտավ ռուսական բանակի շարքերը և մասնակցեց Համադանի և Քերմանշահի շրջանում մղվող մարտերին։ 1916 թվականի ամռանը Բաղրամյանը գալիս է Թիֆլիս՝ պահեստային գունդ։ Ապա, հաջողությամբ ավարտելով պրապորշչիկների դպրոցը, կրկին մեկնում է Իրան։*

*Կովկասյան ռազմաճակատում հայկական 3-րդ հրաձգային գնդում դասակի հրամանատար էր պրապորշչիկ Բաղրամյանը, երբ սկսվեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը։ Այդ ժամանակ գունդը կռվում էր թուրքերի դեմ, Ուրմիա լճի շրջանում։ Նա ընտրվել էր զինվորական դեպուտատների խորհրդի կազմում և ակտիվ մասնակցում էր իր գնդի հասարակական-քաղաքական կյանքին։ 1917 թվականի խոր աշնանը Կովկասյան ռազմաճակատում ընդհանուր ռազմական դրությունն սկսեց խիստ վատանալ. հոգնած զինվորները տենչում էին վերադառնալ հայրենիք, տուն...*

*Թուրքական հրամանատարությունը, օգտվելով երկամսյա դադարից, 1918 թվականի փետրվարի 12-ին հարձակում ծավալեց ամբողջ ճակատով մեկ։ Հովհաննես Քրիստափորովիչը ժողովրդական հերոս Անդրանիկի դիվիզիայի հեծելազորային դիվիզիոնի կազմում էր, որը մարտական գործողություններ էր մղում Էրզրում—Խորասանի ուղղությամբ, ապահովելով գաղթական կանանց, երեխաների ու ծերերի տարագնացությունը։*

*Այնուհետև հուշագրություններում մանրամասն նկարագրված են Սարդարապատի ճակատամարտի գործողությունները, ցույց է տրված հայ զինվորների և աշխարհազորայինների մասսայական հերոսությունը։ Կոմունիստների և առաջադիմորեն տրամադրված առանձին հասարակական գործիչների հայրենասիրական ելույթները, հայ ժողովրդին ուղղված կոչը ոտքի էին հանել Արարատյան դաշտավայրի գյուղացիներին. քաղաքներից դեպի ռազմաճակատի գիծն էին շարժվում զինված ջոկատներ, որոնք հայկական կանոնավոր զորամասերի հետ միասին մասնակցեցին թուրք զավթիչների ջախջախմանը։*

*Հեղինակն այնուհետև ցույց է տալիս, թե ինչպես Կովկասյան ռազմաճակատում հայ զինվորներն ու աշխարհազորայինները համառ գործողություններով իրենց կողմը գրավեցին թուրքական բանակի գլխավոր ուժերը և փաստորեն կասեցրին զավթիչների առաջխաղացումը դեպի Բաքու։ Այդ քաջ գիտակցում էին նաև Բաքվի կոմունայի ղեկավարները։ «Բակինսկի ռաբոչի» լրագրում մայիսի վերջին հրապարակվեցին կարևոր հաղորդագրություններ թուրքական զորքերի դեմ մղված ճակատամարտերի մասին։ Ռազմածովային ուժերի ժողկոմ Գրիգորի Կորգանովը Բաքվի կոմունայի զորքերին տված իր հրամանում նշել է. «Հայաստանի լեռնալանջերում ու հովիտներում մեր եղբայրները հերոսաբար կռվում են թուրք զավթիչների դեմ»։ Կորգանովը կոչ է անում վճռական մարտեր ծավալել թուրք իմպերիալիզմի հորդաների դեմ։ Հունիսի սկզբին Թիֆլիսից՝ հայ ազգային խորհրդից, ստացվեց հույժ անակնկալ մի հրաման. ամբողջ ռազմաճակատում դադարեցնել մարտական գործողությունները՝ Թուրքիայի և Հայաստանի միջև հաշտություն կնքելու առնչությամբ։ Անդրկովկասյան հանրապետությունների նացիոնալիստների ինքնակոչ կառավարության այդ որոշումը դավաճանական ակցիա էր, որը հնարավորություն չտվեց. լիակատար հաղթանակով ավարտելու Սարդարապատի ռազմաճակատի մարտերը։*

*1920 թվականին Բաղրամյանն ակտիվ մասնակցում է Ալեքսանդրապոլի Մայիսյան ապստամբությանը, իսկ հետագայում, իբրև հեծելազորային գնդի էսկադրոնի հրամանատար, մարտնչում մենշևիկյան լծից Վրաստանի ազատագրման համար։*

*Սովետական Ռուսաստանի կառավարությունը և անձամբ Վ. Ի. Լենինը լրջորեն մտահոգված էին Հայաստանի բախտով և պահանջում էին դադարեցնել թուրքական ագրեսիան։ Սակայն ո՛չ թուրք ագրեսորները, ո՛չ Հայաստանի դաշնակցական կառավարության պարագլուխները չէին ցանկանում նույնիսկ լսել Ռուսաստանի միջնորդության մասին։*

*Հաշվի առնելով հայ ժողովրդի համար ստեղծված տագնապալի դրությունը՝ ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն 1920 թվականի հոկտեմբերի 14-ին որոշեց կարմիր բանակի զորամասերի վճռական գործողություններով քաղաքական օգնություն ցույց տալ Հայաստանին և կասեցնել թուրքերի հետագա առաջխաղացումը։ Հայաստանի ազատագրումը վճռական դեր խաղաց հայ ժողովրդի ճակատագրի համար։*

*Քաղաքացիական պատերազմի ավարտից հետո հայկական առաջին հեծյալ գնդում էր Հ. Բաղրամյանը, ուր և սկսեց զբաղվել զինվորների մարտական ու քաղաքական ուսուցման գործով։ Նա ուսման լավ կազմակերպիչ էր ու դաստիարակ, պահանջկոտ էր և, միաժամանակ, զգայուն ու հոգատար։ Տաղանդավոր զինվորականն աչքի էր ընկնում նաև իր գաղափարաքաղաքական ու հանրակրթական մակարդակը բարձրացնելու մշտական ձգտումով։ Նա ջերմությամբ է հիշում ուսման տարիները (1924—1925 թվականներ) հրամկազմի կատարելագործման Լենինգրադի հեծելազորային դասընթացներում, որտեղ գնդի հրամանատարների խմբում նրա հետ մեկտեղ սովորում էին Սովետական Միության ապագա մարշալներ Գ. Կ. Ժուկովը, Կ. Կ. Ռոկոսովսկին, Ա. Ի. Երյոմենկոն։ 1931 թվականին, հաջողությամբ հանձնելով ընդունելության քննությունները, նա ընդունվում է Մ. Վ. Ֆրունզեի անվան ռազմական ակադեմիան։ Սովորում էր գերազանց։ Դրան նպաստում էին բնական խելքը, արտասովոր հիշողությունը, քաղաքացիական պատերազմում ձեռք բերած մարտական հարուստ փորձը։ Նա վայելում էր դասախոսական կազմի և ունկնդիրների հարգանքը։ Ակադեմիան ավարտելուց հետո, 1934 թվականին, Բաղրամյանը գործուղվում է Կիևի հատուկ զինվորական օկրուգ՝ որպես հեծելազորային դիվիզիայի շտաբի պետ։ Շուտով հայտնի է դառնում, որ պաշտպանության ժողկոմի հրամանով Հ. Ք. Բաղրամյանը գրանցված է որպես գլխավոր շտաբի ակադեմիայի ունկնդիր (1936—1938 թթ.)։*

*Ուսանելու տարիներին Հովհաննես Քրիստափորովիչը հիմնականում ուշադրություն էր նվի-*

* И. Х. Баграмян. Мои воспоминания, изд. «Айастан», 1979 г.

րում օպերատիվ արվեստի, բարձր միավորումների տակտիկայի, ռազմական էկոնոմիկայի և այլ գիտելիքների խորացմանը։ Գլխավոր շտաբի ակադեմիան ավարտելուց հետո նա սկսեց նույն տեղում ավանդել ընդհանուր տակտիկա, դասախոսություններով հանդես էր գալիս օպերատիվ արվեստի և բարձր միավորումների տակտիկայի հարցերի շուրջ։

Գլխավոր շտաբը ըստ արժանվույն գնահատեց Բաղրամյանի խոր գիտելիքներն ու ստեղծագործական աշխատանքը և շուտով, Գ. Կ. Ժուկովի միջնորդությամբ, նա նշանակվեց Կիևի հատուկ զինվորական օկրուգի շտաբի պետի տեղակալ։ Հովհաննես Քրիստափորովիչը ակտիվ մասնակցում էր հրամանատարական շտաբային զորավարժությունների օպերատիվ-տակտիկական պարապմունքների մշակմանը, նախապատրաստմանն ու անցկացմանը։ Արևմտյան շրջանի սահմանամերձ զինվորական օկրուգների շտաբների պետերի ու զորատեսակների հրամանատարների մասնակցությամբ Բաղրամյանը մշակեց պետական սահմանների պաշտպանության նոր պլան։ Սովետական Միության մարշալ Գ. Կ. Ժուկովն իր Հիշողություններ և խոհեր գրքում գրում է. «Իվան Քրիստափորովիչին ես ճանաչում եմ որպես շատ լրջախոհ, հանգիստ, աշխատասեր, օպերատիվ տեսակետից գրագետ աշխատող»։ Նա հիացմունքով է արտահայտվում հատկապես Բաղրամյանի աշխատասիրության և գործի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի մասին։

Երբ սկսվեց Հայրենական մեծ պատերազմը, գնդապետ Բաղրամյանը Կիևի հատուկ զինվորական օկրուգի շտաբի պետի տեղակալն էր, միաժամանակ շտաբի օպերատիվ վարչության պետը։ Այն հետագայում վերակազմվեց Հարավ-Արևմտյան ռազմաճակատի շտաբի։

Հարավ-Արևմտյան ռազմաճակատի զորքերը, պաշտպանական ծանր մարտեր մղելով հակառակորդի 6-րդ դաշտային բանակի և 1-ին տանկային խմբի գերազանցող ուժերի դեմ, հակահարվածներով ու հակագրոհներով կասեցնում էին հակառակորդի զորքերի առաջխաղացումը, մեծ վնաս հասցնելով նրա կենդանի ուժին ու տեխնիկային։ Թշնամու կորուստներն այնքան մեծ էին, որ Կիևի ուղղությամբ հարձակումը շարունակելու համար հիտլերյան հրամանատարությունն ստիպված էր ստրատեգիական ռեզերվներից զգալի քանակությամբ միավորումներ նետել մարտի մեջ։

Ֆաշիստական գեներալները հարկադրված էին խոստովանել, որ սովետական ռազմաճակատի ճեղքման հիտլերյան պլանը ձախողվել էր։ Հուլիսի երկրորդ կեսին կատաղի մարտեր ծավալվեցին Կիևի հեռավոր մատույցներում։

Օգոստոսի 8-ին Կիևում կայանալիք գերմանական զորքերի հանդիսավոր շքերթը, որ նախանշել էր Հիտլերը, ինչպես հայտնի է, տեղի չունեցավ։ Կիևի մոտ մղված կատաղի մարտերում թշնամին կորցրեց ավելի քան 100 հազար զինվոր ու սպա, մեծ քանակությամբ մարտական տեխնիկա։ Կիևի պաշտպանական օպերացիայի պլանավորման ու անցկացման գործում ունեցած անմիջական մասնակցության համար 1941 թվականի օգոստոսի 12-ին գնդապետ Բաղրամյանին շնորհվեց գեներալ-մայորի կոչում։ Նա պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով։

Ռազմաճակատային ծանր իրավիճակում դրությունը փոխվում էր ժամ առ ժամ, և բոլոր ճակատամասերում մարտերը բացառիկ կատաղի էին։ Կիևը շրջանցելով հյուսիսից ու հարավից՝ թշնամին փակեց մեր կիևյան խմբավորման շրջապատման օղակը, և ահա այդ տագնապալի իրադրության մեջ Բաղրամյանի գլխավորած ինքնուրույն մարտական ջոկատներից մեկը հանկարծական ու վճռական գրոհով ճեղքեց այդ օղակը և միացավ յուրայիններին։

Առաջադրանք էր տրված՝ գրոհով գրավել բարձունքների շղթան, գետի կամուրջը և շարժվել դեպի Սանչա, այնուհետև՝ դեպի Ջերվոննի Կուտ և Գադյաչ։ Այդ խնդիրը փայլուն կերպով կատարվեց։ 1941 թվականի հոկտեմբերին հարևան Հարավ-Արևմտյան ռազմաճակատի դրությունը վատացավ։ Խախտվեց կապը Բրյանսկի ռազմաճակատի հետ, թշնամին Օրյոլի մատույցներում էր։

Իսկ Քլեյստի տանկային մեքենայացված զորքերը մոտենում էին Տագանրոգին։ Թշնամին սպառնում էր ճեղքել-անցնել դեպի Դոնի Ռոստով։ Գեներալ-մայոր Բաղրամյանը, վերլուծելով իրադրությունը, իր եզրակացությունների մասին զեկուցում է ռազմաճակատի շտաբի պետին. «Պասիվ կերպով պաշտպանվել, երբ մեր զորքերի հյուսիսային թևում Բրյանսկի ռազմաճակատի ուժերի մի մասը գտնվում է թշնամու օղակման մեջ, իսկ հարավում Քլեյստի տանկային բանակը սպառնում է Դոնի Ռոստովին, նշանակում է նախապես ընդունել սեփական պարտությունը և հաղթանակի բանալին կամովին հանձնել ֆաշիստական հրամանատարության ձեռքը»։

Հ. Բաղրամյանի մտահղացումն արժանացավ ռազմաճակատի շտաբի պետ Բոդինի ջերմ հավանությանը։ Անհրաժեշտ էր ակտիվ գործողություններ սկսել։ Միաժամանակ երկու ուղղությամբ հարձակվել հնարավոր չէր։ Ուստի որոշվեց հարվածել հարավային ուղղությամբ, որտեղ սովետական զորամիավորումների համար ստեղծվել էր առավել նպաստավոր իրադրություն։ 1941 թվականի նոյեմբերի վերջին Հարավային ռազմաճակատի զորքերը հուժկու հարված հասցրին. այդ օպերացիայի շնորհիվ ջախջախվեց հակառակորդի 1-ին տանկային բանակը, և 1941 թվականի նոյեմբերի 29-ին ազատագրվեց Դոնի Ռոստովը։ Թշնամին նահանջեց Միուս գետից այն կողմ։ Ռոստովի օպերացիան ըստ էության ձախողեց գերմանացիների պլանները, որոնք ձգտում էին ճեղքել-դուրս գալ Հյուսիսային Կովկաս։

Կարևոր նշանակություն ունեցավ Ելեցի օպերացիան հյուսիսային թևում, որ կատարեցին Հարավ-Արևմտյան ռազմաճակատի զորքերը. ոչնչացվեց հինգ դիվիզիայից բաղկացած թշնամու խոշոր խմբավորումը։ Պաշտոնաթող գեներալ-գնդապետ Լ. Մ. Սանդալովը վերհիշում է. «Ես բախտ եմ ունեցել Իվան Քրիստափորովիչի հետ հանդիպելու 1941 թվականի նոյեմբերի վերջին Ելեցի շրջանում, երբ նոր էր նախատեսվում սկսել Հարավ-Արևմտյան ռազմաճակատի հարձակումը։ Ես հիացմունքով էի ուսումնասիրում հարձակողական օպերացիաների պլանավորման ու ղեկավարման Բաղրամյանի հմուտ ու փայլուն փորձը»։

Ռոստովի մոտ ու Ելեցի շրջանում մղված մարտերից հետո Հ. Բաղրամյանն սկսեց գլխավորել Հարավ-Արևմտյան ռազմաճակատի շտաբը. նրան շնորհվեց գեներալ-լեյտենանտի կոչում։ Շուտով Բաղրամյանը նշանակվեց 16-րդ բանակի զորքերի հրամանատար։ Այդ բանակի զորքերը ստրատեգիական կարևորագույն ուղղություններից մեկում պաշտպանում էին Մոսկվայի մատույցները։ 1942 թվականի օգոստոսի 11-ին թշնամու 15 դիվիզիայից բաղկացած խոշոր խմբավորումը կատաղի հարձակում գործեց։ Այդ ծանր իրադրության պայմաններում, արագ կողմնորոշվելով, վերախմբավորելով տանկային, հրաձգային և հեծելազորային կորպուսները, Բաղրամյանին հաջողվում է կազմակերպել համառ դիմադրություն, հակահարվածներով արյունաքամ անել թշնամու գլխավոր խմբավորումը և Ժիզդրա գետի սահմանագծում կասեցնել նրա առաջխաղացումը, գետի հարավային ափին իր ձեռքում պահելով կարևոր պլացդարմը։ 16-րդ բանակի զորքերը դիմագրավեցին հակառակորդին և ստիպեցին նրան դադարեցնել հարձակումը, անցնել պաշտպանության։

1943 թվականի ամռանը գերմանական հրամանատարությունը, օգտվելով Եվրոպայում երկրորդ ռազմաճակատի բացակայությունից, Կուրսկի ելուստում կենտրոնացրեց մոտ 50 ընտիր դիվիզիա, որոնց կազմում կային 900 հազար զինվոր ու սպա, մոտ 10 հազար թնդանոթ և ականանետ, շուրջ 2700 տանկ, ավելի քան 2000 մարտական ինքնաթիռ։ Հիտլերը հրամայել էր Բելգորոդից հյուսիս և Օրյոլից հարավ ընկած շրջաններից գրոհող բանակների ուժերով կենտրոնացված հարձակմամբ շեշտակի ու արագ շրջապատել ու ոչնչացնել սովետական զորքերը Կուրսկի շրջանում։

«Սովետական կողմը,— գրում է հեղինակը,— կռահեց թշնամու պլանները և դրանց հակադրեց իր բանակի հզոր ուժերը։ Մարտական տեխնիկայով մենք գրեթե երկու, իսկ անձնակազմով 1,2 անգամ գերազանցում էինք թշնամուն»։ Ստրատեգիական այդ օպերացիայի մշակման գործում ներգրավվել էին ռազմաճակատների և բանակների հրամանատարները։ Այնուհետև պլանները քննարկվեցին գլխավոր շտաբում և հաստատվեցին գերագույն գլխավոր հրամանատարի կողմից։ Օրյոլի ազատագրման այդ օպերացիայում զորքերի հմուտ ղեկավարման համար Բաղրամյանը պարգևատրվեց Սուվորովի առաջին աստիճանի շքանշանով։ Նրան շնորհվեց գեներալ-գնդապետի կոչում։

1943 թվականի նոյեմբերի 19-ին Հ. Բաղրամյանը նշանակվեց 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի հրամանատար, միաժամանակ նրան շնորհվեց բանակի գեներալի կոչում։ Մեկ ամիս անց՝ դեկտեմբերի 19-ին, Սովինֆորմբյուրոյի օպերատիվ հաղորդագրությունը հայտնեց. «Մոտ օրերս 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի զորքերը... Նևելից հարավ հարձակման անցան գերմանաֆաշիստական զորքերի դեմ և ճեղքեցին... ռազմաճակատի մոտ 80 կմ երկարությամբ և մոտ 30 կմ խորությամբ խիստ ամրացված պաշտպանական գոտին»։

1943 թվականի դեկտեմբերի 23-ին հարձակումը վերսկսվեց, և 24-ի երեկոյան քաղաքն ազատագրված էր։ Մոսկվան հրավառությամբ ողջունեց 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի զորքերի հաղթանակը։ Բաղրամյանը գրում է. «Դրան հաջորդեցին որակական փոփոխություններ այդ ճակատամասի օպերատիվ գործողություններում։ Եթե մինչ այդ օպերացիան մեր երեք բանակների զորքերը շրջապատվելու սպառնալիքի տակ էին, ապա դրանից հետո Գորոդոկի ելուստն անջատվեց, մեր բանակներն սպառնալի դիրք գրավեցին «Կենտրոն» բանակախմբի հյուսիսային թևի նկատմամբ. խախտվեց վերջինիս կապը հարևան «Հյուսիս» բանակախմբի օպերատիվ-ստրատեգիական միավորման հետ։

Գորոդոկի մոտ ձեռք բերված հաջողությունը նախադրյալներ ստեղծեց Վիտեբսկի շրջանում մեր նվաճումների, Պոլոցկի և Մերձբալթիկայի ուղղությամբ հետագա հարված հասցնելու համար»։

1944 թվականի մայիսին սովետական զինված ուժերի զորակայանը ծրագրեց հերթական ստրատեգիական «Բագրատիոն» հարձակողական օպերացիան Վիտեբսկի և Պոլոցկի շրջաններում՝ հակառակորդին ջախջախելու և Բելոռուսիան ազատագրելու նպատակով։ Գլխավոր հարվածի ուղղությամբ կենտրոնացվեցին հրաձգային դիվիզիաների երեք քառորդը, տանկային և ինքնա-

մեքենաներում, տեխնիկայում, տեխնոլոգիայում, մարմնավորվում գիտելիքներում, փորձում, մարդկանց որակավորման մեջ, նպաստում նոր մարդու զարգացմանն ու կերպավորմանը:

Հետազոտողի, կոնստրուկտորի, նախագծողի աշխատանքը, նոր, առավել արդյունավետ օրինաչափությունների ու լուծումների որոնում է, նոր, առավել արդյունավետ արտադրամիջոցների ու աշխատանքի կատարելագործում: Իր բնույթով գիտնականների, կոնստրուկտորների, նախագծողների աշխատանքը մրցություն է արդեն ստեղծվածի և նրանց հետ, ով մշակում է տվյալ պրոբլեմը:

Մրցության մասին գրականության մեջ հաճախ շեշտվում են համագործակցության ու փոխադարձ օգնության հարաբերությունները: Նման մոտեցումը ճիշտ է, քանի որ դրանք արտահայտում են շահագործումից ազատ հասարակության մարդկանց հարաբերությունները: Չմոռանանք, սակայն, որ մրցակցությունը նույնպես մրցության կարևոր հատկանիշն է:

Ակադեմիական ինստիտուտի համար գիտահետազոտական աշխատանքի որակը առաջին հերթին որոշվում է ուսումնասիրության հիմնավորվածությամբ, բնության ու հասարակության զարգացման օրինաչափությունների խոր բացահայտմամբ: Կարևոր է նաև այն չափանիշը, որը սահմանվում է հայրենական ու համաշխարհային գիտության տվյալ բնագավառում ձեռք բերված մակարդակով: ՍՄԿԿ XXV համագումարը առանձնապես կարևորեց, որ մեր երկրի ժողովրդական տնտեսության արդյունավետությունը բարձրացնելու համար անհրաժեշտ է ներդնել այնպիսի մշակումներ, որոնք իրենց տեխնիկատնտեսական պարամետրերով գերազանցեն հայրենական ու համաշխարհային լավագույն նվաճումները:

Գրքում լուսաբանված է նյութական ու բարոյական խթանների դերը աշխատանքի արդյունավետության բարձրացման, մրցության զարգացման գործում: Նյութական ու բարոյական խթանման ավանդական ձևերից բացի, գիտահետազոտական ու նախագծային-կոնստրուկտորական կազմակերպություններում կիրառվում են այնպիսի մեթոդներ, որտեղ լրիվ են հաշվի առնվում հետազոտողների, կոնստրուկտորների, նախագծողների աշխատանքի յուրակերպությունը: Մրցության առաջնահերթ խնդիրներից է գիտական աշխատողի անհատականության ձևավորումը, նրա գաղափարաքաղաքական, պրոֆեսիոնալ, բարոյական և այլ հոգևոր հատկանիշների զարգացումը: Մրցության բոլոր տարրերը սերտորեն փոխկապակցված են: Դրա համար մրցության կազմակերպման ու դրա ձևերի կատարելագործումը պահանջում են կոմպլեքսային մոտեցում:

Կուսակցության տերիտորիալ կոմիտեները իրենց ուշադրությունը կենտրոնացնում են գիտահետազոտական կադրերի գաղափարադաստիարակչական, գիտական պլանների կատարման, կադրերի ընտրության հարցերի վրա: Կուսակցական կոմիտեների տեսադաշտում մշտապես գտնվում են նաև գիտական կոլեկտիվներում մրցության կազմակերպման, կատարելագործման, ընդհանրացման, առաջավոր փորձի տարածման հարցերը:

Կոլեկտիվի հետազոտական աշխատանքի հանրագումարը կազմելիս հաշվի են առնվում գիտական հրապարակումները, հեղինակային վկայականները, պատենտները, լիցենզիաները, զեկուցումները գիտական կոնֆերանսներում, հրապարակված հոդվածները, մենագրությունները, դասագրքերը, ինչպես և հետազոտությունների ներդրման պլանի կատարումը, փորձնական-արդյունաբերական ստուգումը և այլն: Այս ցուցանիշները նախնական են մրցող կոլեկտիվների աշխատանքը վերլուծելու ժամանակ: Այնուհետև նշվում են կադրերի որակավորման աճը, աշխատանքի պայմանները, արտադրական կարգապահությունը, աշխատողների հասարակական ակտիվությունը, մասնակցությունը աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը, կոլեկտիվի հոգեբանական մթնոլորտը: Գնահատվում է նաև կուսակցական կազմակերպության աշխատանքի մակարդակը:

Գիտնականի ստեղծագործական ակտիվության տարրերն են նորարարության ու մշտական որոնումների ոգին, նպատակասլացություն և լիակատար ինքնահատուցում, նախաձեռնություն գիտական նոր հեռանկարային պրոբլեմների առաջադրման ու լուծման ասպարեզում, ստեղծագործական անբավարարվածություն, անհաշտվողականություն պահպանողականության, գիտական անբարեխղճության նկատմամբ, իսկական ակտիվ կենսական ու քաղաքացիական դիրքորոշում:

Գիտության առանձնահատկությունն այն է, որ այն բոլոր կողմերով ենթակա չէ կանխատեսման, չկա միանշանակ կապ հետազոտությունների վրա կատարված ծախսումների ու ստացված վերջնական արդյունքների միջև: Գիտական ստեղծագործությանը հատուկ է որոշակի ցիկլայնություն, մի շարք արդյունքների իսկական նշանակությունը երբեմն դժվարանում է գնահատել նույնիսկ հեղինակը:

Արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ նույն արժեքները ցիկլով են վերարտադրվում: Այդ պրոցեսում, որպես կանոն, մասնակցում են բազմաթիվ մարդիկ: Գիտական գործունեությունը կրում է ստեղծագործական ինքնատիպության և անկրկնելիության կնիքը: Գիտության մեջ գիտելիքի միատեսակ միավորի ստեղծումը անիմաստ է: Գիտական աշխատանքում արդյունավետության սահմանման վճռական գործակիցը գիտելիքի նորությունն է: Ինչպես վկայում է փորձը, մրցույթները խթանում են հետազոտողների ստեղծագործական միտքը, հնարավոր դարձնում ավելի լավ հաշվի առնել յուրաքանչյուր աշխատողի անհատական ներդրումը կոլեկտիվ գիտական ստեղծագործման ընդհանուր ավանդում:

Գրքում հանգամանորեն մեկնաբանված է Լ. Յա. Կարպովի անվան ֆիզիկաքիմիական ինստիտուտում գիտական աշխատողների վճարման նոր համակարգը: Վերջինիս կիրառման տասնամյա փորձը վկայում է, որ գիտաշխատողների աշխատանքի ճշգրիտ ու օբյեկտիվ գնահատականով միայն հնարավոր է գիտական կոլեկտիվում կազմակերպել իսկական մրցություն: Այս առնչությամբ քննադատվում է ինստիտուտների մեծամասնությունում գործող գիտաշխատողների վճարման հնացած, արդի պահանջներին չհամապատասխանող սիստեմը, ըստ որի գիտաշխատողի աշխատավարձի չափը ուղղակիորեն չի պայմանավորվում նրա աշխատանքի արդյունավետությամբ: Հետևաբար խախտվում է սոցիալիզմի հիմնական սկզբունքը՝ յուրաքանչյուրից՝ ըստ ունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի: Նման սիստեմը որոշակի պայմաններում ծնում է խնամառուական տրամադրություն, պորտաբուծության տարրեր:

Կարպովցիների փորձի (այն, ի դեպ, տարածում է գտել 70 տարբեր գիտահետազոտական ինստիտուտներում ու հիմնարկություններում) էությունն այն է, որ հնարավորություն է ընձեռում աշխատողին վարձատրել համապատասխան նրա աշխատանքի քանակի ու որակի: Գործավարձի ոչ մի ձև չի կարող չափանիշ լինել գիտական աշխատանքի գնահատման ու վճարման համար: Դատել գիտաշխատողի որակավորման մասին, նշանակում է ելնել մասնագիտության սահմաններում տարբեր բարդության խնդիրներ լուծելու նրա ունակությունից:

Կարպովցիների փորձը վկայում է աշխատանքի վարձատրման նոր սիստեմի բարեբար ազդեցությունը կոլեկտիվի գործունեության բոլոր կողմերի, առաջին հերթին՝ կատարվող հետազոտությունների արդյունավետության բարձրացման վրա: Իրականում անփոփոխ թվաքանակով այժմ ինստիտուտում կատարվում է այնքան աշխատանք, որը 40 տոկոսով գերազանցում է 1968 թվականի ծավալը: Շուրջ 2,5 անգամ աճել են ավարտվող կամ իրացվող աշխատանքները: 3—4 անգամ ավելացել է հայտնագործությունների թիվը: Անհամեմատ ավելացել են հրապարակումները: Հաշվի առնելով աշխատանքի արդյունավետությունը՝ ադմինիստրացիային իրավունք է վերապահվում բարձրացնելու կամ իջեցնելու աշխատողների աշխատավարձը: Այս հանգամանքը կոլեկտիվում ստեղծեց բոլորովին նոր հոգեբանական մթնոլորտ: Նոր սիստեմի համաձայն, ընդունակ աշխատողը, նվիրվելով գործին, կարող է ստանալ գիտության թեկնածուի աշխատավարձ:

Սոցիոլոգները գտնում են, որ գիտական կոլեկտիվներում աշխատանքի նկատմամբ բարոյական խթանները շատ պարագաներում ունեն ավելի մեծ նշանակություն, քան դրամական վարձատրությունը: Աշխատանքը գիտության ոլորտում իրենից ներկայացնում է հասարակական աշխատանքի սպեցիֆիկ ճյուղ: Լինելով օրգանապես փոխկապակցված արտադրապրոցեսին, այն պահպանում է հոգևոր գործունեության բոլոր առանձնահատկությունները: Գիտությունը դարձել է անմիջական արտադրողական, ստեղծարար-վերափոխիչ ուժ, արդյունավետ ներազդելով մեր հասարակության կենսագործունեության բոլոր կողմերի վրա: Ահա թե ինչու գիտական կոլեկտիվներում մրցության կազմակերպման կատարելագործումը ունի կարևոր սոցիալական նշանակություն և վճռական գործոն է աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման ասպարեզում:

Գրքում տեղին է շեշտվում, որ կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ նպատակամղել գիտատեխնիկական մտավորականության աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը տնտեսական ու կուլտուրական շինարարության կոնկրետ խնդիրների լուծմանը: Նրանք պետք է ըստ ամենայնի օգնեն մրցության մասնակիցներին՝ ներդնելու իրենց ավանդը նոր տեխնիկայի ստեղծման ու արմատավորման, պլանների ժամկետից շուտ կատարման գործում, բարձրացնելու մեքենաների ու սարքերի տեխնիկական մակարդակը, կրճատելու ձեռքի աշխատանքի կիրառումը, ռացիոնալ, խնայողաբար օգտագործելու նյութական ու վառելիքաէներգետիկ ռեսուրսները:

Գիտնականների, մասնագետների, գյուտարարների ու ռացիոնալիզատորների ջանքերը հարկ է մոբիլիզացնել լուծելու արտադրության տեխնիկական կատարելագործման ու ինտենսիֆիկացման արմատական պրոբլեմները, մշակելու ու ներդնելու մեքենայացման, ավտոմատացման, պրոգրեսիվ տեխնոլոգիական պրոցեսների, աշխատանքի գիտական կազմակերպման նորագույն միջոցները:

Ընթերցողներին ներկայացվող այս գիրքը, հիրավի, արժանացել է հասարակական լայն ճանաչման:

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

## ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԻՆԴՈՒՍՏՐԱՑՄԱՆ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

**ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ** հաստատումից հետո կուսակցության ու ժողովրդի ուժերը նպատակամղվեցին ծանր ինդուստրիայի զարգացմանը՝ որպես ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինման և սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հիմնական միջոցի: Լենինյան այդ նախագծումների կենսագործման հիմքերի հիմքը հանդիսացավ երկրի էլեկտրիֆիկացման պլանը՝ ԳՈԷԼՌՈ-ն: Իսկ Կովկասի կոմունիստներին ուղղած իր 1921 թվականի ապրիլի 14-ի պատմական նամակում Լենինը խնդիր դրեց սկսել էլեկտրիֆիկացիայի, ոռոգման ծավալուն աշխատանքներ:

Լենինյան ազգային քաղաքականության կենսագործմամբ կարճ ժամանակամիջոցում ծավալվեց էլեկտրիֆիկացումը, որի շնորհիվ առաջավոր արդյունաբերական տնտեսության հիմքը դրվեց: Բազմաճյուղ արդյունաբերության համակարգում ստեղծվեց ու զարգացավ մեքենաշինությունը և դրա կարևոր ճյուղը՝ էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը: Կյանքը հարուցեց նորանոր խնդիրներ— էլեկտրատեխնիկական արդյունաբերության մասնագիտացում ու կոոպերացում, խոշոր միավորումների կազմակերպում, գիտահետազոտական հիմնարկությունների ստեղծում ու գիտական պրոբլեմների մշակում, արտադրության ու գիտության կապի ամրապնդում...

Ժամանակն էր ստեղծելու նաև էլեկտրատեխնիկական արդյունաբերության պատմությունը: Հարկ էր գիտականորեն ամփոփել ու մասսայականացնել այն փորձը, որ կուսակցության ամենօրյա ղեկավարությամբ կուտակել էին էլեկտրատեխնիկական արդյունաբերության բանվորները, ինժեներատեխնիկական աշխատողները և գիտնականները:

Այս առումով նման լուրջ փորձերից կարելի է համարել պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Հ. Հ. Ազիզբեկյանի Սովետական Հայաստանի էլեկտրատեխնիկական արդյունաբերության պատմությունից (1945—1975) մենագրությունը*: Ինչպես նկատում է հեղինակը, դեռևս քիչ է ուսումնասիրված հանրապետության էլեկտրատեխնիկական արդյունաբերության ստեղծման ու զարգացման գործում բանվոր դասակարգի պայքարի պատմությունը: Առանձին աշխատություններում և մամուլում հրապարակված հոդվածներում քննարկվել են սոսկ էլեկտրատեխնիկական ձեռնարկությունների տեխնիկատնտեսական հարցերը:

Գրախոսվող աշխատությունը հիմնականում ընդգրկում է էլեկտրատեխնիկական արդյունաբերության ստեղծման ու զարգացման պատմությունը հետպատերազմյան երեք տասնամյակներում: Հեղինակը հատկապես անդրադարձել է հետևյալ հարցերին. էլեկտրատեխնիկական արդյունաբերության ստեղծումն ու զարգացումը, էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացումը հանրապետությունում, գիտատեխնիկական հեղափոխությունը և գիտության նվաճումների ներդրումը արտադրության մեջ, էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացման իններորդ հնգամյակի հիմնական արդյունքները և տասներորդ հնգամյակի խնդիրները: Շարադրվող պատմությունը սերտորեն միահյուսված է ժամանակակից էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացման դինամիկայի հետ, ցույց է տրված հարաճուն վերելքը արդյունաբերության այդ ճյուղի, որի տեսակարար կշիռը մեր հանրապետության արդյունաբերության համախառն արտադրության մեջ 1975 թվականին կազմել է 28 տոկոս: Մեքենաշինության մի շարք ճյուղեր՝ էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, սարքաշինությունը և հաստոցաշինությունը, առաջատար տեղ են գրավում Միության մեջ: Սովետական Հայաստանը էլեկտրատեխնիկական արդյունաբերությամբ ՍՍՀՄ-ում գրավում է երրորդ տեղը:

Արխիվային վավերագրերի և այլ աղբյուրների հիման վրա հեղինակը ցույց է տվել, թե ինչպես են հանրապետության էլեկտրատեխնիկական արդյունաբերության աշխատողները հասել այդպիսի բարձր ցուցանիշների, ինչպիսի փորձ են կուտակել: Գրքում մեկնաբանվում է առանձին արտադրական ձեռնարկությունների, միավորումների, գիտահետազոտական ինստիտուտների կոլեկտիվների գործունեությունը: Պատշաճ ուշադրություն է նվիրված Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանին: Եվ դա բնական է: Չէ՛ որ այդ գործարանը ո՛չ միայն էլեկտրատեխնիկական արդյունաբերության, այլև հանրապետության արդյունաբերության խոշոր ձեռնարկությունն է, որի բազմահազարանոց բանվորական կոլեկտիվը շատ փայլուն էջեր է գրել թե՛ պատերազմի ահեղ տարիներին և թե հետպատերազմյան հնգամյակներում: 1965 թվականին արդեն գործարանը թողարկում էր էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքի 45 տոկոսը: Նորարար բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների ու գիտնականների եռանդուն ջանքերով էլեկտրամեքենաշինական գործարանը երկրում առաջիններից մեկն էր, որ մշակեց ու թողարկեց կոմպլեքսային տրանսֆորմատորների նոր ենթակայաններ: Մեծ պահանջարկ ունեցող այդ ենթակայանների արտադրությունը 1957—1958 թվականներին ավելացավ 2—3 անգամ: Սոցիալիստական մրցության շնորհիվ յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար գործարանը 1966 թվականին պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով: Արտադրության շատ առաջավորներ արժանացան կառավարական բարձր պարգևների:

Բնորոշ փաստեր են բերված նաև հանրապետության էլեկտրատեխնիկական արդյունաբերության մյուս ձեռնարկությունների՝ կաբելի, էլեկտրաճշգրիտ սարքերի, փորձնական լուսատեխնիկական, հիդրոպոմպերի, էլեկտրաշարժիչների, ինչպես և ավելի ուշ կազմակերպված «Հայէլեկտրալույս», «Հայէլեկտրաշարժիչ», «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումների գործունեության պատմությունից:

Տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն օրգանապես միացնելու ասպարեզում վերջին տարիներս հսկայական աշխատանք է կատարվել մեր հանրապետությունում: Ներկայացնելով ձեռք բերված հաջողությունները՝ հեղինակն իրավամբ նկատել է, որ դրանք արդյունք են գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման, արտադրության կոմպլեքսային ավտոմատացման ու մեքենայացման, նոր տեխնոլոգիական պրոցեսների մշակման, գիտահետազոտական միավորումների ստեղծման: Գիտատեխնիկական հեղափոխության ծավալմանը նպաստում են ղեկավարման կատարելագործված ձևերի արմատավորումը, ձեռնարկություններում կոնստրուկտորական բյուրոների ու փորձնական հզոր բազաների ստեղծումը, արտադրության մեջ անմիջականորեն աշխատող գիտական կադրերի աճը: Այս ամենի շնորհիվ հնարավոր է դառնում գիտության նվաճումների ներդրումը արտադրության մեջ, գիտության ու արտադրության առավել սերտ կապը և աշխատանքի արտադրողականության բարձրացումը:

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ ամենուրեք հասարակական հիմունքներով գործող կոնստրուկտորական բյուրոների ստեղծումը աշխատանքի նկատմամբ սովետական մարդկանց կոմունիստական վերաբերմունքի արտահայտությունն է: Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի կոնստրուկտորական բաժինը և հասարակական հիմունքներով գործող կոնստրուկտորական չորս բյուրոները, էլեկտրատեխնիկական համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի մասնաճյուղի հետ համագործակցած, մշակեցին նոր կոնստրուկցիաներ, որոնք ստուգվել, փորձարկվել և կյանքի ուղեգիր են ստացել: Այդ գործարանի կոնստրուկտորական բյուրոյի բազայի վրա 1956 թվականին ստեղծվեց էլեկտրամեքենաշինության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական մասնաճյուղը: Գիտատեխնիկական մտքի այս նոր կենտրոնը կարճ ժամանակամիջոցում վերածվեց ստեղծագործական լաբորատորիայի, որի էլեկտրատեխնիկական, կաբելի, էլեկտրալամպերի, սարքաշինական, կոմպրեսորների բաժինները բեղմնավոր գործունեություն ծավալեցին գիտական նորագույն նվաճումները ու առաջավոր փորձը արտադրության մեջ արմատավորելու համար: Մեկ տասնամյակ անց էլեկտրամեխանիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական մասնաճյուղի բազայի վրա ստեղծվեց կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական կոնստրուկտորական-նախագծային ինստիտուտը:

Այդ ինստիտուտի համառոտ պատմությունը շարադրելուց հետո, հեղինակը հանգամանորեն անդրադառնում է մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի բեղմնավոր գործունեությանը: 1956 թվականը համարվում է Հայաստանում ժամանակակից հաշվողական տեխնիկայի ծննդյան տարի: Ստեղծված մեքենաները լայնորեն գործարկվում են գիտահետազոտական ինստիտուտներում, կոնստրուկտորական բյուրոներում և գործարանային լաբորատորիաներում: Դրանք համապատասխանում են էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի արդի համաշխարհային մակարդակին: Այդ մեքենաների սերիական արտադրությունը կազմակերպվել է Երևանի

* *Հ. Հ. Ազիզբեկյան*— Սովետական Հայաստանի էլեկտրատեխնիկական արդյունաբերության պատմությունից (1945—1975): *Ե., ԳԱ հրատ., 1978 թ.։*

«Էլեկտրոն» գործարանում և գործադրվում են մեր երկրում ու արտասահմանում:

Ընդհանրացնելով հանրապետության ավելի քան 110 գիտական հիմնարկություններում ընդգրկված 18 հազար գիտական աշխատողների գործունեությունը իններորդ հնգամյակում, հեղինակը նշում է նրանց արժեքավոր ավանդը գիտության ու տեխնիկայի զարգացման, արտադրության հետ գիտության կապի ամրապնդման, ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության մի շարք հրատապ պրոբլեմների լուծման ասպարեզում: Մշակվեցին և արտադրության մեջ ներդրվեցին ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունեցող 212 թեմաներ: Էական հաջողության հասան հատկապես կարծր մարմինների ֆիզիկայի, էլեկտրոնիկայի և գիտության մյուս բնագավառներում աշխատող կոլեկտիվները:

Աշխատության վերջում Հ. Ազիզբեկյանն անդրադառնում է էլեկտրատեխնիկական արդյունաբերության և գիտության զարգացման խնդիրներին: Մեր կուսակցության ամենօրյա հոգատարության շնորհիվ լայն հեռանկարներ են բացվել էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացման առաջ: Միայն վերջին տարիներին կառուցվեցին ու շահագործման հանձնվեցին նոր հզոր էլեկտրակայաններ, ավարտվեց Սևան—Հրազդան հիդրոկայանների կասկադի շինարարությունը, գործարկվեցին հզոր ջերմաէլեկտրակայաններ, Հայաստանի ատոմակայանի առաջին և երկրորդ բլոկները, նոր սարքավորումներով հարստացան էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկությունները, համալրվեցին դրանք բանվորական, ինժեներատեխնիկական, գիտական նոր ուժերով:

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացման պատմության ստեղծման առաջին քայլերը կատարված են: Էլեկտրատեխնիկական արդյունաբերության պատմությունը նոր բնագավառ է: Իսկ ամեն նոր գործի սկիզբ կապված է որոշ դժվարությունների հաղթահարման հետ: Ամենից առաջ անհրաժեշտ է խորհել այդ պատմությունն ընդգրկող հարցերի շրջանակների, արծարծվող պրոբլեմների մասին: Լավ կլիներ, որ հեղինակը խուսափեր ոչ էական փաստերի կուտակումից: Առանձին արտադրական ձեռնարկությունների պատմությանն անդրադառնալիս կարևոր է ո՛չ միայն նորարար բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների թվարկումը, այլև հարկ է վերլուծել, ներկայացնել նրանց հարուստ փորձը, գիտականորեն ընդհանրացնել այն: Ցանկալի կլիներ, որ ավելի հանգամանորեն գրվեր էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկությունների և գիտահետազոտական հիմնարկությունների մասին, վերհանվեր դրանց գործունեությունը վերահսկող կուսակցական կազմակերպությունների ղեկավար դերը: Հենց կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ է ձեռք բերվել այն ամենը, ինչ այսօր պատմություն է դարձել, բացելով գալիքի լայն հեռանկարներ:

Հ. Ազիզբեկյանի աշխատությունը լուրջ ավանդ է Հայաստանի էլեկտրատեխնիկական արդյունաբերության պատմության ստեղծման գործում:

**Վ. Մ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ**



Адрес редакции: 375033. Ереван-33 ул. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*Հանձնված է շարվածքի՝ 29.10.80—10.11.80: Ստորագրված է տպագրության 21.11.80: ՎՑ 04052 Ֆորմատ՝ 70×108¹/₁₆: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15.782: Պատվեր 2458:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Իսահակյանի փող. № 28:*

Типография издательства ЦК КП Армении. 375009, Ереван-9, ул. Исаакяна 28.



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Արհմիությունների խնդիրները: *«Հայաստան» հրատ., 1980:*

Գիտական կոմունիզմ: *(Դասագիրք բուհերի համար): «Հայաստան» հրատ., 1980:*

Ս. ՔԱՋԱՐՅԱՆ— Խաղաղության սովետական ծրագիր: *«Հայաստան» հրատ., 1980:*

Բ. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ— Դաշնակցությունն առանց դիմակի: *«Հայաստան» հրատ., 1980:*

Հ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ— Հայաստանի կոմկուսը և բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումը: *Ե., «Գիտելիք» հրատ., 1980:*

Ռ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Չերնիշևսկին հայ հասարակական և փիլիսոփայական մտքի պատմության մեջ: *Ե., ԳԱ հրատ., 1980:*

Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Հովհան Որոտնեցու փիլիսոփայական ուսմունքը: *Ե., ԳԱ հրատ., 1980:*

Թ. ՀԱԿՈԲՅԱՆ— Անիի պատմություն *(հնագույն ժամանակներից մինչև 1045 թ.): ԵՊՀ հրատ., 1980:*

Թ. ՄԱՐԳՈՒԼՈՎԱ— Ատոմային էներգետիկան և նրա ապագան: *«Հայաստան» հրատ., 1980:*

Բ. ՊՈՆՏԵԿՈՐՎՈ, Վ. ՊՈԿՐՈՎՍԿԻ— Էնրիկո Ֆերմին աշակերտների և ընկերների հուշերում: *«Հայաստան» հրատ., 1980:*

Բ. ԼԵԲԵԴԵՎ— Փոխհարաբերությունների էթիկան կոլեկտիվում: *Ե., «Գիտելիք» հրատ., 1980:*

Է. ՋՐԲԱՇՅԱՆ, Հ. ՄԱԽՉԱՆՅԱՆ— Գրականագիտական բառարան: *2-րդ լրաց. և վերամշակված հրատարակություն: Ե., «Լույս» հրատ., 1980:*

Գ. ԽՐԼՈՊՅԱՆ— Ռուսական դատախազության սոցիոլոգիայի հարցեր: *ԵՊՀ հրատ., 1980:*

Է. ՍԱՆՈՒԿՅԱՆ— Ժամանակի վկան: *Հոդվածներ կինոարվեստի մասին: Ե., «Սովետական գրող» հրատ., 1980:*

К. МАРКС — **Экономические рукописи 1857—1861 гг.** (Первоначальный вариант «Капитала»). (В 2-х частях). Часть 1. М., Политиздат, 1980.

М. СУСЛОВ— **Марксизм-ленинизм и современная эпоха.** Сборник выступлений. Изд. 2, доп. М., Политиздат, 1980.

А. КИРИЛЕНКО — **Политика созидания и мира.** Избранные речи и статьи. М., Политиздат, 1980.

К. ЧЕРНЕНКО—**Вопросы работы партийного и государственного аппарата.** М., Политиздат, 1980.

**Михаил Иванович Калинин.** Краткая биография. Изд. 2, доп. М., Политиздат, 1980.

С. ГАЛИН—**В. И. Ленин о культурной революции.** М., Политиздат, 1980.

В. МЕДВЕДЕВ — **Развитой социализм: вопросы формирования общественного сознания.** М., Политиздат, 1980.

**Социализм и научное творчество.** М., «Прогресс», 1980.

**Социалистический образ жизни.** М., Политиздат, 1980.

**Дружба навеки** (материалы празднования 150-летия вхождения Армении в состав России. Изд. «Айастан», 1980.

**Искусство Советской Армении за 60 лет.** Изд. АН Арм. ССР, 1980.

К. СВАСЬЯН—**Проблема символа в современной философии.** (Критика и анализ). Изд. «Айастан», 1980.

Х. БАДАЛЯН—**Турецко-германская экспансия в Закавказье** (1914—1918 гг.). Изд. «Айастан», 1980.

**Характерные черты социально-политического развития арабских стран в 1950—1970 годы.** Изд. АН Арм. ССР, 1980.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783

ISSN 0130—8114

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԳՈՐԾՈՒՄ Է ԷԼԵԿՏՐՈՆԻԿԱՆ

*Լենինգրադի «Գոսմետր» գործարանի կոլեկտիվը մասսայաբար թողարկում է էլեկտրոնային կշեռքներ ագրոքիմիական տարբեր ուսումնասիրությունների անցկացման համար։ Վայրկյանների ընթացքում սարքը ստույգ որոշում է տարբեր հողերի և բույսերի միացության բաղադրամասերի քաշը։ Կշռումը կատարվում է ավտոմատ. լուսատախտակի վրա նշվում են արդյունքները։ Սարքի կառավարումը շատ պարզ է։*

*Էլեկտրոնային կշեռքների ներդրումը ագրոքիմիական օպերացիաներում 8—10 անգամ բարձրացնում է արտադրողականությունը։ Դրանք լայնորեն կիրառվում են գյուղատնտեսության բնագավառում։*

## ՄԻԱՑՆՈՒՄ Է «ՏՐԵԼ—1»-Ը

*Պատահում է, որ օրական հավաքում ենք հեռախոսային մոտ քսան մշտական համար, հաճախ մի քանի անգամ, մինչև միանա։ Եվ ահա սովետական գիտնականներն ստեղծել են կառավարման մի փոքրաչափ սարք՝ «Տրել—1»-ը, որը կցվում է հեռախոսին։ Այն մեզ կօգնի միանալու այդ քսան մշտական աբոնենտներից ցանկացածի հետ։ Դրա համար հարկավոր է «Տրել—1»-ի «հիշողության» մեջ տեղադրել առավել հաճախակի օգտագործվող հեռախոսահամարները, ապա սեղմել կոճակը. և «Տրել—1»-ը միացնում է անհրաժեշտ համարը։*

*Այսպիսով, հարկ չի լինի հիշողության մեջ պահելու քսան մշտապես օգտագործվող համարները, կամ զբաղված լինելու դեպքում նյարդայնանալու չափ պտտել սկավառակը։*

## ՋԱՅՆԱԿԼԱՆԻՉ ԿՏԱՎ

*Դոնեցկի ջերմամեկուսիչ նյութերի գործարանը թողարկում է բազալտե գերնուրբ թելերից պատրաստված կտավ, որը հրակայուն է և ջրում չի սուզվում։ Ի տարբերություն ասբեստի, այն նաև կլանում է ձայնը և կրկնակի էժան է։ Ջերմադիմացկուն կտավը լայնորեն կօգտագործվի տնտեսության տարբեր ասպարեզներում, մասնավորապես, ջերմային ագրեգատների մեկուսացման համար։*

## ԼԱԶԵՐԱՅԻՆ ՆՈՐ ՍԱՐՔ

*Բելոռուսական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ֆիզիկայի ինստիտուտի մասնագետներն ստեղծել են լազերային «Կոլեր» սարքը աչքի ցանցաթաղանթի գերճշգրիտ վիրահատությունների համար։ Սարքը մշակելիս գիտնականներն ԷՀՄ-ի օգնությամբ հաշվել են վիրահատության բոլոր տարբերակները, կազմել ծրագիր, որն օգնում է վիրաբույժներին՝ որոշելու լազերային իմպուլսի անհրաժեշտ հզորությունը, տևողությունը և ձևը։ «Կոլեր»-ը փորձարկվել է կլինիկայում և [illegible] մասնագետների բարձր գնահատականին։*

## ԱԽՏԱՀԱՆԻՉ ՆՈՐ ՓՈՇԻ

*Ցոսպորը սպիտակագույն, ջրում լավ լուծվող ախտահանիչ փոշի է։ Գոմերի ու թռչնանոցների պատերը դրանով լվանալուց հետո ավելի արագ են ոչնչանում մանրէներն ու վարակ տարածողները։ Ցորմալինի համեմատությամբ ֆոսպորն ավելի ակտիվ է ազդում ախտածին միկրոօրգանիզմների վրա։ Այն չունի տհաճ հոտ և չի գրգռում կենդանիների ու թռչունների շնչառական օրգանները։*